## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2 ՓԵՏՐՎԱՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հունվարի 30—31-ը տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թվականի դեկտեմբերյան պլենումի արդյունքների և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին կուսակցության շրջկոմների առաջին քարտուղարները, քաղաքային ու շրջանային սովետների գործկոմների նախագահները, մինիստրներ, հանրապետական գերատեսչությունների ու կազմակերպությունների ղեկավարներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապարատի պատասխանատու աշխատողներ:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Զեկուցման քննարկմանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Պ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆԸ, «Հրազդանշին» տրեստի էլեկտրազոդող ընկ. Տ. Գ. ԳՅՈՒԼՄԻՍԱՐՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ սննդարդյունաբերության մինիստր ընկ. Ս. Վ. ԱՌԱՔԵԼՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆԸ, Հայաստանի գրողների միության կուսակցական բյուրոյի քարտուղար ընկ. Ս. Ն. ԽԱՆԶԱԴՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, հանրապետության դատախազ ընկ. Ս. Ա. ՕՍԻՊՅԱՆԸ, Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԸ, Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Ջ. Ե. ՋԱՔԱՐՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության պետական կոմիտեի նախագահ ընկ. Ս. Ա. ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ, Երևանի պետական համալսարանի կուսակցական կոմիտեի քարտուղար ընկ. Ռ. Գ. ԱՍԼԱՆՅԱՆԸ, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի ջուլհակուհի ընկ. Ջ. Ա. ՌՈՄՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Գ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԸ, ՀԱՄԽ-ի

քարտուղար ընկ. Է. Հ. ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր ընկ. Գ. Ա. ԲԱՂՐԱՄՅԱՆԸ:

Պլենումի վերջում ելույթ ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար և բյուրոյի անդամ ընտրեց ընկ. Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմից հանեց ընկ. ընկ. Յ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻՆ, Հ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻՆ, Կ. Հ. ՌՈՒԽԿՅԱՆԻՆ:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի ապարատի պատասխանատու աշխատողներ ընկ. ընկ. Վ. Ն. ԿՈՆՈՎԱԼՈՎԸ, Ա. Վ. ՏՐՈՇԿԻՆԸ:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1974 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ* ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ, 1975 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐԻ 30-ԻՆ

*Ընկերնե՛ր:*

*Սովետական ժողովրդի ամբողջ եռանդը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության միտքն ու կամքը նպատակամղված են լենինյան կուսակցության XXIV համագումարի կանխագծած՝ մեր երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման ծավալուն ծրագրի իրականացմանը:*

*Մեր հայրենիքի հզորության աճ, տնտեսական և քաղաքական զարգացման դինամիզմ, սովետական հասարակության բարոյա-քաղաքական կուռ միասնություն, երկրի հոգևոր պոտենցիալի և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացում, մեր սոցիալիստական պետության միջազգային դիրքերի ամրապնդում և սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքի համար արտաքին քաղաքական բարենպաստ պայմանների ստեղծում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդում և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հետագա համախմբում — ահա մեր կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումների իրականացման արդյունքները:*

*Մեր երկրի վիթխարի նվաճումները համագումարի նախատեսած խնդիրների կենսագործման ասպարեզում կուսակցության, նրա լենինյան Կենտկոմի նպատակասլաց գործունեության, սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի, կուսակցության և ժողովրդի ամրակուռ միասնության արգասիքն են: Համագումարի որոշումների հաջող իրագործումը ՍՄԿԿ-ի, նրա Կենտրոնական կոմիտեի գործունեության մեջ հիրավի աշխատանքի լենինյան ոճի հաստատման արդյունքն է:*

*Սովետական հասարակության կյանքի տնտեսական- սոցիալ-քաղաքական և հոգևոր պրոցեսների, սոցիալիստական պետության արտաքին քաղաքական գործունեության կուսակցական ղեկավարման լենինյան ոճը վառ ու լիակատար արտացոլում է գտել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, քաղբյուրոյի որոշումներում և մյուս կարևոր փաստաթղթերում: Դրանով է ոգորված մեր կուսակցության լենինյան Կենտկոմի, նրա քաղբյուրոյի և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի քաղաքական ու կազմակերպչական անխոնջ*

* Տպագրվում է կրճատումներով:

ու ակտիվ գործունեությունը՝ կուսակցության XXIV համագումարի որոշումների կատարումն ապահովելու ասպարեզում:

Աշխատանքի լենինյան ոճի գիտական մոտեցման, կոլեկտիվության և գործարարության ոգով էր տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թվականի դեկտեմբերյան պլենումի աշխատանքը, որ տեղի ունեցավ հնգամյակի եզրափակիչ տարվա նախաշեմին:

Պլենումում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ամփոփեց հնգամյակի անցած չորս տարում կուսակցության և ժողովրդի ստեղծագործական ջանքերի, նրանց լարված, անձնվեր աշխատանքի արդյունքները, արծարծեց 1975 թվականի և ամբողջ հնգամյակի հաջող ավարտման հիմնական խնդիրները: Այդ նպատակով պլենումը կուսակցական կազմակերպություններից, սովետական և տնտեսական մարմիններից, արհմիություններից և կոմերիտմիությունից պահանջեց առավելագույն չափով օգտագործել մեր տնտեսական և քաղաքական բոլոր հնարավորությունները:

Ընկերնե՛ր: Անցյալ տարի, սովետական ամբողջ ժողովրդի հետ մեկտեղ, մեր հանրապետության աշխատավորները նոր հաջողություններ ձեռք բերեցին տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում:

ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները, կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը առաջացրին մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության նոր վերելք: Հանրապետության արդյունաբերության աշխատողները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ապահովեցին ինչպես համախառն արտադրանքի ծավալի, այնպես էլ իրացման տարեկան պլանի կատարումը 103 տոկոսով: 1974 թվականին արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալն աճեց 10,4, իսկ աշխատանքի արտադրողականության տարեկան պլանը կատարվեց 102,1 տոկոսով:

Անհրաժեշտ ենք համարում շեշտել, որ արտադրության ծավալի աճի տեմպերը անցյալ տարի հասան հնգամյա պլանով նախատեսված բնագծերին: Դա, անկասկած, արդյունաբերության բոլոր աշխատողների մեծ հաջողությունն է, որոնց համար 1974 թվականը իրոք որոշիչ տարի էր:

Քիչ գործ չկատարեցին հանրապետության շինարարները: Անցած տարի սեփական ուժերով կապալային աշխատանքների պլանը կատարվեց 101 տոկոսով: Աճի տեմպերը կազմեցին 8,9 տոկոս:

Որոշակի հաջողությունների հասան նաև գյուղի աշխատավորները: Բուսաբուծության մթերքների մթերումների տարեկան պլանը (հաշվի առնելով արտապլանային գնումները) կատարվել է հետևյալ չափերով. հացահատիկինը՝ 114 տոկոսով, բանջարեղենինը՝ 115, կարտոֆիլինը՝ 137, բոստանային կուլտուրաներինը՝ 112, շաքարի ճակնդեղինը՝ 114 տոկոսով: Անասնապահական մթերքների մթերումների պլանը (հաշվի առնելով արտապլանային առաջադրանքը) կատարվել է հետևյալ չափերով. անասուններինը և թռչուններինը՝ 128,1, կաթինը՝ 107, ձվինը՝ 114,3 տոկոսով:

Կենտկոմի բյուրոն անհրաժեշտ է համարում ներկա պլենումում չսահմանափակվել անցյալ տարվա աշխատանքի արդյունքների վերլուծությամբ, այլ ավելի լայնորեն քննության առնել հանրապետությունում տիրող իրավիճակը: Դա մեզ թելադրում է ՀԿԿ Կենտկոմի 1974 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումը, որն արժանացավ հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների միահամուռ հավանությանը: Պլենումի որոշման մեջ նշված են մեր հանրապետության տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման գործում, ինչպես նաև կուսակցական աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունները:

Այդ թերությունները կարճ ժամկետում վերացնելու համար մենք պետք է հանրապետության կյանքի բոլոր ոլորտներում տիրող իրադրության ինքնաքննադատական վերլուծությամբ բացահայտենք դրանց արմատներն ու հարուցող պատճառները: Մենք պետք է ՍՄԿԿ XXIV համագումարի, կուսակցության



Կենտկոմի պլենումների որոշումների ոգով քննարկենք ու գնահատենք մեր կուսակցական կազմակերպության, սովետական և տնտեսական մարմինների, մեր ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի բոլոր օղակների գործունեությունը:

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒՄԸ՝ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Ամենից առաջ անդրադառնանք իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման ընթացքին:

(Զեկուցման մեջ բերվում են հնգամյա պլանի կատարման վիճակը բնութագրող մանրամասն տվյալներ):

Հնգամյա պլանի առաջադրանքների մակարդակից ետ են մնում արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ էներգետիկան, գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, շինանյութերի, փայտամշակման, թեթև, սննդի արդյունաբերությունները: Բացի դրանից, չեն կատարվում գյուղատնտեսական արտադրանքի նախատեսված առաջադրանքները: Աշխատանքի արտադրողականության աճը արդյունաբերության մեջ թերակատարվում է 12,3, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 11 տոկոսով:

Մեծ չափով չի կատարվում սպասարկման ոլորտի զարգացման առաջադրանքը:

Օրինական հարց է ծագում, թե ինչո՞ւմն է բանը: Արդյոք սխալվե՞լ ենք, վրիպե՞լ: Այո՛, ընկերներ, իրականում սխալներ ու վրիպումներ ունենք:

Վ. Ի. Լենինը սովորեցնում է. «Բացահայտորեն ընդունել սխալը, բացահայտել նրա պատճառները, վերլուծել այդ սխալը ծնող իրադրությունը, ուշադրությամբ քննարկել սխալն ուղղելու միջոցները—ահա սա է լուրջ կուսակցության հատկանիշը, ահա սա է նրա՝ բուն պարտականությունների կատարումը, ահա սա է ԴԱՍԱԿԱՐԳԻ, ապա նաև ՄԱՍՍԱՅԻ դաստիարակումն ու ուսուցումը» (Երկեր, հ. 31, էջ 52):

Ղեկավարվելով մեծ առաջնորդի ցուցումներով, այսօր մենք պետք է բացեիբաց խոստովանենք, որ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները և ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի դիրեկտիվներն իրականացնելիս հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, մենք բոլորս թույլ ենք տվել լուրջ սխալներ ու բացեր:

Իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման գործում ետ մնալու հիմնական պատճառը ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակի իջեցումն է, վիթխարի խնդիրների և մեր աշխատանքի ոճի ու մեթոդների միջև առաջացած խզումը: Նշենք նաև, որ հնգամյակի խիստ լարված տնտեսական շինարարության ծրագիրը չամրապնդվեց տնտեսական, կուսակցական-կազմակերպական և գաղափարա-դաստիարակչական լայն աշխատանքով:

Մենք չկարողացանք արագ հաղթահարել էքստենսիվ զարգացման հոգեբանական պատնեշը: Բանն այն է, որ կուսակցության Կենտկոմի, մեր կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքի մեթոդները գլխավորապես հիմնվում էին հին փորձի վրա, երբ կարելի էր շահել քանակով և ոչ թե հմտությամբ: Տնտեսավարման ինտենսիվ եղանակի համեմատ մեր աշխատանքի վերակառուցումը պահանջում էր մեծ ճկունություն և դինամիզմ, որոնք, դժբախտաբար, հնգամյակի առաջին տարիներին չցուցաբերվեցին:

Կուսակցական շատ կազմակերպություններում գաղափարա-դաստիարակչական աշխատանքը տարվում էր անսիստեմ, ոչ-կոմպլեքսային ձևով, կոնկրետ տնտեսական խնդիրներից կտրված, չէր ծառայում հանրապետության էկոնոմիկայի առջև կանգնած խոշոր և լուրջ խնդիրների լուծմանը:

Մեզանում շատ թերություններ և վրիպումներ են եղել կուսակցական-կազմակերպական աշխատանքի բնագավառում՝ սկզբնական կուսկազմակերպությունների ամրապնդման, նրանց դերի ուժեղացման առումով:

Վերջին տարիներս մեր գործունեության շատ ոլորտներում թուլացել են կուսակցական և պետական կարգապահությունը, թուլացել է և պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, որոնց մի մասը սկսել է անպատիժ կերպով չկատարել իր ուղղակի պարտականությունները, անպատասխանատվություն և անկարգապահություն ցուցաբերել դիրեկտիվ մարմինների որոշումների կատարման գործում: Առանձին տեղերում ստեղծվել էր անսկզբունքայնության, ամեն ինչ ներելու, պաշտոնական պարտքը ուղղակի չկատարողների նկատմամբ ներողամտության մթնոլորտ:

Եվ, վերջապես, պակաս կարևոր դեր չի խաղացել նաև այն հանգամանքը, որ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի 1971—1975 թթ. պլանային ցուցանիշները սահմանելիս հանրապետության ղեկավարությունը, պետպլանը կատարել են շեղումներ պլանավորման գիտական հիմունքներից, դրսևորել վոլյունտարիզմ և սուբյեկտիվիզմ:

Արդյունաբերության բնագավառում գլխավոր թերություններից մեկը մենք համարում ենք կուսակցական, պետական և պլանային ցածր կարգապահությունը: Մի՞թե ցածր կարգապահության հետևանք չէ այն փաստը, որ հնգամյակի անցած տարիներին արդյունաբերական ձեռնարկությունների մոտավորապես 10—12 տոկոսը ամեն տարի չէր կատարում արտադրական պլանները:

Մի՞թե կուսակցական և պետական պատշաճ կարգապահության բացակայության հետևանք չէ այն փաստը, որ առանձին մինիստրություններ, գերատեսչություններ և տնտեսական ղեկավարներ, փոխանակ կազմակերպչական անհրաժեշտ աշխատանքով ապահովելու պլանային առաջադրանքների կատարումը, բռնում են պլանները նվազեցնելու նպատակով դրանց մեջ անհիմն ճշգրտումներ մտցնելու արատավոր ուղին, որով ստեղծում են խաբուսիկ բարեհաջողության պատրանք: Դրա հետևանքով դանդաղում էին աճի տեմպերը, ռացիոնալ կերպով չէին օգտագործվում արտադրական կարողությունները, խախտվում էր աշխատանքի ռիթմը:

Պլանային կարգապահության կոպիտ խախտումները և պետական առաջադրանքների անհիմն փոփոխումները սկսվում էին տարեկան պլանը հաստատելուն պես և դարձել էին որոշ տնտեսավարների աշխատանքի մեթոդ՝ հանրապետության պետպլանի լուռ համաձայնության պայմաններում: Իհարկե, մենք հասկանում ենք, որ կյանքը, բնականաբար, մտցնում է իր ճշգրտումները, երբեմն պլանները նվազեցվում են միանգամայն հիմնավորված կերպով՝ նյութատեխնիկական թերապահովվածության, զանազան չնախատեսված հանգամանքների և այլ պատճառներով:

Բայց այսօր խոսքն այդ մասին չէ: Առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ, ձեռնարկություններ ու կազմակերպություններ նախ «ճշգրտում» են պլանը, իսկ հետո էլ գերակատարում այն, իրենց դասելով առաջավորների շարքը: Այսպիսին են, օրինակ, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Գ. Վարդանյան), «Հայէլեկտրամեքենա» միավորումը (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Ռ. Ամիրյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ա. Գաբրիելյան) և այլ կազմակերպություններ:

Կուսակցության Կենտկոմը դատապարտում է այդ արատավոր պրակտիկան: Առանց անհրաժեշտ, օբյեկտիվ հիմնավորման պլանների մեջ նվազեցման միտումով ճշգրտումներ մտցնելը Կենտկոմը համարում է կուսակցական և պետական կարգապահության ուղղակի խախտում, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի պահանջների անտեսում և պահանջում է վերջ տալ այդ խայտառակ երևույթին, ամրապնդել պլանային կարգապահությունը: Մենք պետք է ունենանք լարված, բայց ռեալ պլաններ և մեր բոլոր ջանքերը նվիրենք դրանց կատարմանն ու գերակատարմանը:

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանում, հատկապես արդյունաբերական արտադրության բնագավառում, տեխնիկական առաջընթացի հարցերը մշակված էին անբավարար և անսիս-



տեմ: Բանն այն է, որ նոր տեխնիկայի արմատավորման պլաններ կազմվում էին առանց փոխադարձ համաձայնեցման, չէին համապատասխանում աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման միասնական նպատակին:

Նոր տեխնիկայի իրացման պլանի թերակատարումը խրոնիկական բնույթ է ստացել: Այսպես, 1971—1974 թթ. այն կատարվել է 85 տոկոսով: Ձեռնարկությունների մեծ մասում չկան տեխնիկական վերազինման երկարաժամկետ պլաններ: Մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկավարները պատշաճ հոգատարություն չեն ցուցաբերում՝ բարձրացնելու արտադրության տեխնիկական մակարդակը, աշխատանքի և սարքավորումների արտադրողականությունը և այդ ցուցանիշներով հասնելու երկրի առաջավոր ձեռնարկություններին:

Հանրապետության կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկություններում ձեռքով է կատարվում աշխատանքների 47,1, սննդարդյունաբերության մեջ՝ 40, թեթև արդյունաբերության մեջ՝ 43,4 տոկոսը:

Այս ամենից հետո մի՞թե կարելի է զարմանալ, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքների կատարումը 1971 թվականին չեն ապահովել 139 ձեռնարկություններ, 1972 թվականին՝ 200, 1973 թվականին՝ 159 և 1974 թվականին՝ 164 ձեռնարկություններ: Մի՞թե զարմանալի է, որ հնգամյակի 4 տարում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրության ծավալի ապահովման ստանձնած սոցիալիստական պարտավորությունները չեն կատարվել:

Աշխատանքի արտադրողականության մակարդակի վրա բացասաբար են ազդում արտադրական, տեխնոլոգիական և աշխատանքային ցածր կարգապահությունը, աշխատաժամանակի կորուստները և կադրերի հոսունությունը:

Բանն ինչո՞ւմն է: Ինչո՞ւ մեզանում գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու և դրա շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործը ցանկալի արդյունք չի տալիս:

Հիմնական պատճառն այն է, որ մինիստրությունները և գերատեսչությունները, ձեռնարկությունների տնտեսական ու տեխնիկական ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները ոչ-կոմպլեքսային, անսիստեմ մոտեցում են ցուցաբերում այդ պրոբլեմների լուծմանը: Քաղկոմներն ու շրջկոմները այդ ոլորտում հստակորեն մշակված ծրագիր չունեն, ավելի շատ արձանագրում են փաստերը, քան ուղղություն տալիս տեխնիկական առաջընթացն արագացնելու պրոցեսին:

Արտադրության արդյունավետության բարձրացման մասին բոլոր խոսակցությունները դատարկ հնչյուն կմնան, եթե մենք հետևողականորեն, ինչպես հարկն է, չբարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը՝ արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, բարձր արտադրողական սարքավորումների արմատավորման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման հիման վրա: Անհրաժեշտ է կոնկրետ կերպով լուծել աշխատողների տեխնիկական պատրաստության ու որակավորման մակարդակի բարձրացման, աշխատանքի ճիշտ կազմակերպման ու նորմավորման, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրության համաչափության ապահովման հարցերը:

Անհրաժեշտ է, որպեսզի հանրապետության կառավարությունը, պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչությունները արագացնեն արդյունաբերական արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման հարցերի լուծումը, որը շատ բանով կնպաստի տեխնիկական առաջընթացի արագացմանը և աշխատանքի արտադրողականության աճին:

Հանրային արտադրության ինտենսիվացման պահանջը, առաջին հերթին, աշխատանքի արտադրողականության բարձրացման պահանջն է: Մենք պետք է նորովի գնահատենք այդ կարևոր ցուցանիշը: Չպետք է մոռանալ, որ ձեռնարկության աշխատանքի մնացած բոլոր քանակական ցուցանիշները աշխա-

տանքի բարձր արտադրողականության արգասիքն են, և ոչ թե հակառակը, ինչպես կարծում են ոմանք։

Այսպիսի հարցադրումից հետո եկեք հարցնենք հանրապետության թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Գևորգյանին՝ արդյոք նա գո՞հ է այդ ոլորտում իր մինիստրության աշխատանքից, արդյոք մինիստրության աշխատանքը բավարարո՞ւմ է ժամանակակից պահանջները։

Ճյուղի աշխատանքի քանակական ցուցանիշների ապահովման ասպարեզում ձեռք են բերվել շոշափելի հաջողություններ։ Սակայն որակական ցուցանիշների առումով, հատկապես աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում, ուղղակի ասենք, արդյունքներն առայժմ մեզ բոլորովին չեն գոհացնում։ Ինքներդ դատեցեք։

Տեքստիլ ձեռնարկություններում սարքավորումների արտադրողականությունը միութենական միջին մակարդակից ետ է մնում 15—18 տոկոսով։

Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում հաստոցների սպասարկման գոտին ետ է մնում միջին միութենական ցուցանիշներից, ցածր է օժանդակ աշխատանքների մեքենայացման, միջօպերացիոն տեղափոխման աստիճանը և այլն։ Այս ամենի հետևանքով մեծանում է արտադրության մեջ զբաղված աշխատողների թիվը, ավելանում են աշխատանքային ծախսումները։ Եվ զարմանալի չէ, որ ճյուղում, ամբողջությամբ վերցրած, աշխատանքի արտադրողականության աճը հնգամյակի չորս տարիների ընթացքում նախատեսված 28,2 տոկոսի փոխարեն կազմել է 9,9 տոկոս, իսկ միջին աշխատավարձի աճը 1974 թվականին 2,5 անգամ գերազանցել է աշխատանքի արտադրողականության աճին։

Գիտա-տեխնիկական առաջընթացի արագացման գործում բացառիկ մեծ է գիտության դերը։ Մեզ մոտ ստեղծված է գիտահետազոտական լավ բազա, որը կոչված է սպասարկելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին։

Սակայն մի շարք կազմակերպությունների ամենամյա թեմատիկ պլանները և գիտական մշակումները չեն բխում համապատասխան ճյուղերի զարգացման խնդիրներից։ Ինստիտուտները թույլ են կապված հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների հետ, էական ազդեցություն չեն գործում արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման վրա։

Այսօր գիտության համար չափազանց հրատապ հարց է կատարվող գիտական հետազոտությունների և աշխատանքների որակի ու մակարդակի բարձրացումը։ Մենք չենք կարող ոչ մի կոմպրոմիս թույլ տալ այդ հարցում։ Եվ քանի որ հետազոտությունները պետք է կատարվեն ամենաբարձր մակարդակով, մենք պետք է ուժերը կենտրոնացնենք գիտության վճռորոշ, այժմեական բնագավառների վրա, որոնք նպաստում են հանրապետության էկոնոմիկայի առաջընթացին։

Ցավոք, հարկ է նշել, որ տեխնիկական առաջադիմությունն արագացնելու և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու խնդիրներից հեռու են կանգնած նաև հանրապետության գիտությունների ակադեմիայի կիրառական պրոֆիլի որոշ ինստիտուտներ, իսկ ակադեմիայի նախագահությունը և նրա բաժանմունքները միջոցներ չեն ձեռնարկում՝ այդ ինստիտուտների թեմատիկան համապատասխանեցնելու հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության հրատապ խնդիրներին։

Մեր գիտության կենտրոնը պետք է օրինակ ծառայի ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացն ըստ ամենայնի արագացնելու վերաբերյալ կուսակցության պահանջների կատարման գործում։

Մեզ պետք է անհանգստացնի գործի նաև մյուս կողմը։ Քիչ չեն դեպքերը, երբ ավարտված լավ աշխատանքները երկար ժամանակ արտադրության մեջ չեն արմատավորվում։ (Զեկուցման մեջ օրինակներ են բերվում, որ արտադրության առանձին ղեկավարներ դերադասում են թողարկել հնացած արտադրատեսակներ)։ Նման ընկերներին խանգարում է մտածողության հենց այն վնասակար «իներցիան», որի մասին բազմիցս նշել է կուսակցությունը։ Հին փոր-



ձի, աշխատանքի քարացած մեթոդների, «հանգիստ կյանքի» իներցիան։

Առանց նորի զգացման և գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման գործում անհրաժեշտ պրագմատիզմի, մեր ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններն ու ղեկավարները չեն կարող հասնել այն բարդ խնդիրների լուծմանը, որոնք կանգնած են հանրապետության արդյունաբերության առջև։

Տեխնիկական առաջընթացի արագացումը և դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացման խնդիրը, ընկերներ, լուրջ և կարևոր կուսակցական և պետական գործ է, առաջին պատվիրան, որը պետք է դառնա մեր կուսակցական կոմիտեների, սովետական և տնտեսական մարմինների, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, բոլոր աշխատանքային կոլեկտիվների պրակտիկ գործունեության հիմքը։

Կուսակցության XXIV համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումները առանձին սրությամբ դրեցին թողարկվող արտադրանքի որակի բարձրացման հարցը։ «Ներկա պայմաններում, եթե նկատի ունենանք ամբողջ ժողովրդական տնտեսության համար ստացվող արտադրանքը, ավելի լավը՝ համարյա միշտ նշանակում է նաև ավելի շատ» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 349)։

Արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, տնտեսական և տեխնիկական ղեկավարները, մինիստրություններն ու գերատեսչությունները որոշակի միջոցներ են ձեռնարկել արտադրանքի որակը բարելավելու և դրա տեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով։

Թողարկվող արտադրանքի որակի անցկացված ատեստավորումը ցույց է տալիս, որ այդ կարևոր գործում որոշակի դրական տեղաշարժեր կան։ Ներկայումս 357 արտադրատեսակ թողարկվում է պետական որականիշով։ Նկատվում է թողարկվող լայն սպառման առարկաների որակի որոշ բարելավում։ Առանձին կոլեկտիվներ այդ բնագավառում ավելի շոշափելի արդյունքների են հասել։ Մշտապես լավ որակի արտադրանք են թողարկում Երևանի ալյումինի, էլեկտրաապարատների, էլեկտրալամպերի, կոնյակի գործարանները, կարի գլխավորող ֆաբրիկան, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանը և շատ ուրիշ ձեռնարկություններ։ Երկրի առաջավոր ձեռնարկությունների փորձով Լենինականի Վ. Չկալովի անվան կարի ֆաբրիկայում արմատավորվել է որակի կոմպլեքսային կառավարման սիստեմ, որը արմատապես փոխել է ֆաբրիկայի դեմքը բարձրորակ արտադրանք թողարկելու գործում։

Շատ ձեռնարկություններում, սակայն, տեխնոլոգիական պրոցեսների անկատարելիության, արտադրական, տեխնոլոգիական և աշխատանքային թույլ կարգապահության, բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ցածր որակավորման, աշխատանքի անհամաչափության, ստանդարտների և տեխնիկական պայմանների խախտումների, տեխնիկական վերահսկողության գործի վատ կազմակերպման և այլ պատճառներով շարունակվում է ցածրորակ արտադրանքի թողարկումը։

Ցածրորակ արտադրանքի թողարկման համար անձնական պատասխանատվություն են կրում մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները։ Այդ առումով, մենք մեծ պահանջներ ունենք թեթև, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունների ղեկավարներից։

Թող կոմունիստները՝ մինիստր ընկ. Ս. Առաքելյանը, նրա տեղակալ ընկ. Լ. Ջանփոլադյանը այսօր Կենտկոմի պլենումին պատասխան տան՝ որքա՞ն ժամանակ նրանք պետք է վատորակ արտադրանք թողարկեն։ Արդյոք նրանք պե՞տք է վերջապես կոնկրետ միջոցներ ձեռնարկեն դրությունը շտկելու համար։ Ցածրորակ արտադրանք են թողարկում Սպիտակի շաքարի գործարանը, Երևանի ձեթ-օճառի և հրուշակեղենի-մակարոնի կոմբինատները։

Ճյուղի թողարկած պահածոները չեն համապատասխանում ստանդարտներին, ցածրորակ են, տարեցտարի կրճատվում է դրանց տեսականին։ Գինեգործության ճյուղում, հանքային ջրերի ձեռնարկություններում քիչ չեն ստան-

դարտին և տեխնիկական պայմաններին չհամապատասխանող արտադրանքի թողարկման դեպքերը:

Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրության որոշ ձեռնարկություններում ոչ ստանդարտային արտադրանքի բաժինը անթույլատրելիորեն մեծ է: Սահմանափակ է թողարկվող արտադրանքի տեսականին: Այս փաստի վրա բազմիցս հրավիրվել է մինիստրության և անձամբ մինիստր ընկ. Ս. Վարդանյանի ուշադրությունը, սակայն արդյունքները դեռ անբավարար են:

Թողարկվող արտադրանքի որակը դանդաղ է բարելավվում անտառային և փայտամշակման արդյունաբերության, տեղական արդյունաբերության մինիստրությունների և միութենական մի շարք ձեռնարկություններում:

Մեզ առանձնապես անհանգստացնում է թողարկվող արտադրանքի տեխնիկական ցածր մակարդակը և դրա դանդաղ նորացումը: Այսպես, առ 1-ը դեկտեմբերի 1974 թվականի, արդյունաբերության թողարկած 138 արտադրատեսակներ ատեստավորվել են որակի երկրորդ կատեգորիայով և ենթակա են արտադրությունից հանվելու: Իրենց շահագործական բնութագրերով և հուսալիությամբ մեքենաների և ապարատների շատ մոդելներ հնացել են և չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին: (Զեկուցման մեջ բերվում են ժամանակակից տեխնիկական մակարդակին չհամապատասխանող արտադրանքի թողարկման օրինակներ):

Այդ մասին է վկայում նաև այն փաստը, որ արդյունաբերության կողմից թողարկվող արտադրատեսակների ընդամենը 4,5 տոկոսն ունի պետական որականիշ:

Կենտկոմը մինիստրություններից և գերատեսչություններից պահանջում է՝ ըստ յուրաքանչյուր ձեռնարկության ունենալ թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու, որակի կառավարման սիստեմ արմատավորելու կազմակերպական-տեխնիկական և սոցիալ-տնտեսական միջոցառումների կոնկրետ պլաններ: Այդ պլանների կատարմանը պետք է մշտապես վերահսկեն կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները: Կուսկազմակերպությունների խնդիրն է յուրաքանչյուր աշխատողի դաստիարակել արտադրաորակի նկատմամբ նոր վերաբերմունքի ոգով:

Անհրաժեշտ է արդեն 1975 թվականին բեկում մտցնել այդ գործում: Մենք պետք է արմատապես բարելավենք նաև այն հիմնարկների գործունեությունը, որոնք կոչված են վերահսկելու արտադրանքի որակին: Նրանք երբեմն հաշտվողական, լիբերալ մոտեցում են ցուցաբերում պետական մեծ նշանակություն ունեցող այդ հարցում և անբավարար սանկցիաներ են կիրառում խոտան արտադրանք թողարկողների դեմ: Նրանց աշխատանքում բացակայում են հետևողականությունը, կանխիչ-պրոֆիլակտիկ մոտեցումը:

Նկատվում են նաև այլ ծայրահեղություններ—ձևամոլություն, բյուրոկրատիզմ, արհամարհական-աղայական վերաբերմունք արդյունաբերության աշխատողների հանդեպ, սկզբունքային հարցադրման փոխարեն մանր բծախնդրություններ: Պետստանդարտի Հայաստանի հանրապետական վարչության (պետ՝ Թ. Թումանյան) առանձին աշխատողներ թույլ են տվել ուղղակի կաշառակերության և դրամաշորթության փաստեր: Այս տեսակետից գործերի վիճակը լավ չէ արտադրանքի որակին հսկող նաև մյուս հիմնարկներում: Հարկավոր է խիստ պատասխանատվության ենթարկել նման անփույթ ղեկավարներին:

Արտադրանքի որակի բարձրացման համար բոլորը պետք է պատասխանատու լինեն: Արտադրանքի որակի բարձրացումը չպետք է միանվագ միջոցառում լինի, այլ՝ հետևողական, խորապես մտածված, պլանաչափ պրոցես, որը պետք է ընդգրկի կազմակերպական, գիտա-տեխնիկական, տնտեսական և սոցիալական բնույթի փոխադարձաբար շաղկապված միջոցառումներ: Դա համաժողովրդական գործ է, համակուսակցական խնդիր: Կուսակցությունը տասներորդ հնգամյակը հայտարարում է որակի հնգամյակ:



Պայքար՝ թողարկվող արտադրանքի բարձր որակի համար. մեր մյուս կարևոր պատվիրանն է այս, որը պետք է կյանքի կոչվի բոլոր ղեկավար օրգանների, կուսակցական և հասարակական կազմակերպությունների ու աշխատանքային կոլեկտիվների ամենօրյա պրակտիկ գործունեությամբ:

***

Ընկերնե՛ր: Հանրապետության կուսակցական կազմակերպության, սովետական, տնտեսական մարմինների, արտադրական ոլորտի բոլոր աշխատողների առջև ծառացած կարևորագույն խնդիրներից են՝ գործող արտադրական ֆոնդերի օգտագործման ըստ ամենայնի բարելավումը, ֆոնդահատույցի մեծացումը, կարողությունները շուտափույթ կերպով նախագծային մակարդակի հասցնելը և այդ մակարդակի գերազանցումը, հումքի, նյութերի, էներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործումը, արտադրության բոլոր հնարավորությունների և ռեզերվների հայտաբերումն ու գործադրումը:

Այս տեսակետից մեր արդյունաբերության մեջ գործերի վիճակն անբավարար է:

Հիմնական ֆոնդերի 1 ռուբլուն ընկնող արդյունաբերական արտադրանքի թողարկումը տարեցտարի նվազում է: Արտադրական կարողությունները հատկապես անբավարար են օգտագործվում մեքենաշինության առանձին ճյուղերի, քիմիական, թեթև, սննդի արդյունաբերության մեջ և այլ ճյուղերում:

Դրա պատճառներն են՝ առանձին ձեռնարկություններում ու ճյուղերում արտադրության կազմակերպման ցածր մակարդակը, արտադրական, տեխնոլոգիական և աշխատանքային թույլ կարգապահությունը: Կիրովի անվան քիմկոմբինատում և «Պոլիվինիլացետատ» գործարանում արտադրության նորոգման և վերականգնման աշխատանքների վատ կազմակերպման ու հաճախակի վթարների պատճառով սինթետիկ կաուչուկի և ցելյուլոզի ացետատների արտադրության կարողությունները լրիվ չեն օգտագործվում: Հիշյալ ձեռնարկությունների դիրեկտորներ ընկ. ընկ. Կ. Խուդոյանը և Վ. Ազարյանը, դրությունը շտկելու կոնկրետ աշխատանքի փոխարեն, օձիքներն ազատում են անվերջ խոստումներով: Իսկ, օրինակ, ընկ. Վ. Ազարյանը հասկանո՞ւմ է, որ իր վատ աշխատանքի պատճառով պարապուրդներով են գործում քիմիական ու թեթև արդյունաբերության որոշ ձեռնարկություններ:

Հանրապետության արդյունաբերության արտադրական կարողությունների մի մասը չի օգտագործվում դրանց պլանային ոչ լրիվ բեռնվածության պատճառով: Կարողությունները կան, բայց այդ կարողությունների համար նախատեսված արտադրանքի թողարկման պլանները ցածր են:

Բանն այն է, որ հանրապետությունում արտադրությունը տեղաբաշխելիս, մի շարք պրոբլեմների ոչ կոմպլեքսային լուծման պատճառով, առաջացել են որոշակի անհամամասնություններ: Ձեռնարկությունները կառուցվել են, կարողությունները՝ գործարկվել, բայց բանվորական ուժ չկա, որովհետև արտադրական ու բնակարանային շինարարության հարցերը լուծվել են տարանջատ:

Մյուս կողմից, շատ ձեռնարկությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ չեն ուսումնասիրում արտադրության համասեռ ճյուղերի զարգացման հեռանկարները, ի հայտ չեն բերում նրանց թողարկած արտադրանքի պահանջարկում առաջացած փոփոխությունները: Արտադրանքի որակը, տեխնիկական մակարդակն ու տեսականին չեն համապատասխանում այդ պահանջարկին, որի հետևանքով հանրապետության արդյունաբերության կողմից արտադրվող մի շարք առարկաներ հնացել են, իսկ արտադրական բազան ժամանակին նախապատրաստված չէ անցնելու ավելի արդիական և ժողովրդական տնտեսության համար հարկավոր արտադրանքի թողարկման:

Թողարկվող արտադրանքի պահանջարկի նվազումով է բացատրվում այն, որ Հայաստանի էլեկտրամեքենաշինական գործարանում ավելի քան 100 կիլովատ կարողությամբ էլեկտրաշարժիչների և խոշոր էլեկտրական մեքենանե-

րի արտադրության, Լենինականի հղկող հաստոցների, «Ստրոմմաշինա» գործարաններում արտադրական կարողությունները լրիվ չեն օգտագործվում։

Ցածր ֆոնդահատույցի, կարողությունների վատ օգտագործման մյուս պատճառը արդյունաբերական ձեռնարկությունների, հատկապես մեքենաշինական ձեռնարկությունների աշխատանքի հերթափոխայնության ցածր գործակիցն է։ Ամբողջ հնգամյակի ընթացքում այս հարցը դրվում է մեքենաշինարարների առջև և չի լուծվում։

Արդյունաբերության մեջ դեռևս մեծ են անարտադրողական ծախսերը։ Քիչ չեն անտնտեսավարության փաստերը նյութական և էներգետիկ ռեսուրսների ծախսման գործում։

Եվ, վերջապես, եղած կարողությունների օգտագործումը և նոր գործարկվող կարողությունների յուրացումը արագացնելու ու դրանք նախագծային մակարդակի հասցնելու գործում վճռական նշանակություն ունի կուսակցության XXIV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1974 թ.) պահանջներից բխող՝ ձեռնարկությունների և կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների, շրջկոմների և քաղկոմների նոր վերաբերմունքը արտադրության բոլոր ռեզերվների օգտագործման նկատմամբ։

Հաճախակի են դեպքերը, երբ գերատեսչությունների ղեկավար աշխատողները, փոխանակ բարձրացնելու ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը նոր գործարկվող կարողությունները յուրացնելու, եղած արտադրական ֆոնդերի և արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու գործում, փորձում են ինչ գնով էլ լինի նվազեցնել պլանը։

Ինչպես տեսնում եք, ընկերներ, տեխնիկական առաջընթացն ըստ ամենայնի արագացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, թողարկվող արտադրանքի որակը բարելավելու, արտադրական հզորությունների, աշխատանքային և նյութական ռեսուրսների առավելագույն օգտագործման, խնայողության խստագույն ռեժիմի կիրառման և այդ հիման վրա արտադրության արդյունավետությունը է՛լ ավելի բարձրացնելու վերաբերյալ կուսակցության համագումարի հիմնական պահանջները, որոնք սեղմ կերպով ձևակերպված են սոցիալիստական մրցության՝ «Ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք՝ ավելի պակաս ծախսումներով» նշանաբանի մեջ, մենք դեռևս անբավարար ենք կատարում։

***

Կոմունիստական կուսակցության XXIV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման գործում առանձնահատուկ է կապիտալ շինարարության դերը։

Հնգամյակի անցած չորս տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման համար կապիտալ ներդրումները, ֆինանսավորման բոլոր աղբյուրների գծով, կազմել են 3,51 միլիարդ ռուբլի՝ ամբողջ ութերորդ հնգամյակի 3,41 միլիարդ ռուբլու փոխարեն։

Հանրապետության հիմնական արտադրական ֆոնդերը 1974 թվականի վերջին, 1970 թվականի համեմատությամբ, ավելացան 43 տոկոսով։ Պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվել ու շահագործման են հանձնվել 3,2 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, շատ դպրոցներ, մանկապարտեզներ ու մանկամսուրներ, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։

Սակայն մեր հանրապետությունում կապիտալ շինարարության պրոբլեմը այսօր ժողովրդական տնտեսության ամենասուր պրոբլեմն է։ Բանն այն է, որ իններորդ հնգամյակի ոչ մի տարում գրեթե ոչ մի հիմնական ցուցանիշով պլանային առաջադրանքները չեն կատարվել։

Դրա հետևանքով հնգամյակի անցած տարիներին՝ արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ չեն գործարկվել արտադրական կարողություններ, չեն իրացվել առևտրի նյութատեխնիկական բազայի զարգացման համար հատ-



կացված կապիտալ ներդրումներ, չի ապահովվել բնակելի, դպրոցական շենքերի, մանկապարտեզների ու մանկամսուրների, հիվանդանոցների գործարկման պլանների կատարումը։

1974 թվականին, բացի կապալային աշխատանքների պլանից, հանրապետությունում, ամբողջությամբ վերցրած, կապիտալ շինարարության մեջ ոչ մի ցուցանիշ չի կատարվել։

Կապիտալ շինարարության պլանավորման, կառավարման և կազմակերպման գործում խոշոր թերություններ և չլուծված հարցեր կան։ Ցավոք, մենք բոլորս, սկսած Կենտկոմից, հանրապետության Մինիստրների սովետից, վերջացրած շրջկոմներով և քաղկոմներով, ինչպես կապալառու, այնպես էլ պատվիրատու մինիստրություններով և գերատեսչություններով, լրջորեն չենք զբաղվում դրանց վերացմամբ և լուծմամբ։

Կապիտալ շինարարությունը պլանավորելիս, կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների ծավալները սահմանելիս, տիտղոսացանկերը կազմելիս չեն կատարվում կուսակցության համագումարի սկզբունքային, հիմնական պահանջները՝ կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու, նյութական, աշխատանքային և ֆինանսական միջոցները ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող կարևորագույն օբյեկտների վրա կենտրոնացնելու մասին, այն հաշվով, որ արագացվեն դրանց կառուցման և գործարկման տեմպերը։ Առկա է կապիտալ ներդրումների մեծ փոշիացում։ Մեծ է անավարտ շինարարության ծավալը, անթույլատրելիորեն ձգձգվում են օբյեկտների կառուցման ժամկետները։ Խայտառակ փաստ է Երևանի նոր հանրախանութի շինարարությունը, որի կառուցումն սկսվել է 1966 թվականից։ Հաստատված նախահաշվային արժեքն արդեն կրկնապատկվել է, իսկ շինարարության ավարտը նույնիսկ այս տարի կասկածելի է, քանի որ չկան առանձին հանգույցների նախագծային-տեխնիկական փաստաթղթերը։

Տարեցտարի աճում է միաժամանակ կառուցվող օբյեկտների քանակը, որի հետևանքով մեկ կառույցին և օբյեկտին ընկնող տարեկան միջին կապիտալ ներդրումները, համապատասխանաբար, նվազում են։

Մենք պետք է արմատախիլ անենք շինարարության գործում ոչ պետական մոտեցման դրսևորումները։ Յուրաքանչյուր մինիստր, գերատեսչության և ձեռնարկության ղեկավար, շրջկոմի քարտուղար և շրջգործկոմի նախագահ առանց տեխնիկա-տնտեսական բավարար հիմնավորման պահանջում և խնդրում է տիտղոսացանկում մտցնել զանազան օբյեկտների շինարարություն։ Իսկ պետպլանի և Կենտկոմի ու Մինիստրների սովետի առանձին, այսպես կոչված, «բարի» ղեկավարների թողտվությամբ տիտղոսացանկերի մեջ մտցվում են օբյեկտներ, որոնք կարելի է չկառուցել տվյալ ժամանակ, և օբյեկտներ, որոնք ապահովված չեն նախագծային-տեխնիկական փաստաթղթերով, իրացված հողամասով, ֆինանսավորմամբ և սարքավորումներով։

1974 թվականի պլանում պատվիրատու մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ չէին նախատեսել կապիտալ ներդրումների բավարար համակենտրոնացում գործարկվելիք կառույցներում և օբյեկտներում։ Այսպես, օրինակ, մթերումների մինիստրության № 1 իրացման բազայի էլևատորի շինարարության համար, որի գործարկումը նախատեսված էր 1974 թվականին, հատկացվել էր 910 հազար ռուբլի, մինչդեռ աշխատանքների կոմպլեքս կատարման համար պահանջվում էր 1.640 հազար ռուբլի։

Իսկ պատվիրատուն՝ մինիստր ընկ. Օ. Հովակիմյանը, արդյոք այդ մասին չգիտե՞ր օբյեկտը տիտղոսացանկի մեջ մտցնելիս։ Իհարկե, գիտեր, բայց գիտեր նաև այն, որ ոչ ոք իրեն պատասխանատվության չի կանչի։

Հատկացված միջոցների ոչ ռացիոնալ օգտագործման օրինակ է կուլտուրայի և սպորտային օբյեկտների, անհատական նախագծերով և սահմանված նորմաների խախտումներով բազմաթիվ պանսիոնատների, ամառանոցների և բնակելի տների ոչ-հաշվենկատ ու կամայական շինարարությունը, որի վրա, իրավամբ, մեր ուշադրությունը հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմը։

Կուլտուրայի և սպորտային օբյեկտներ, ինչպես նաև պանսիոնատներ աշխատավորների համար պետք է կառուցել, և մենք այդպիսիք կառուցելու ենք։ Բայց կուսակցության Կենտկոմի պահանջն այն է, որ այդ ամենը կառուցվի ռացիոնալ կերպով, ըստ անհրաժեշտության, իր ժամանակին, ժողովրդի շահը նկատի ունենալով։ Մենք պետք է այդ գործում պետական հստակ կարգ ու կանոն հաստատենք։

Մինիստրների սովետը և պետպլանը պետք է մանրակրկիտ կերպով խորամուխ լինեն յուրաքանչյուր օբյեկտի գործերում և հարցերը լուծեն, ելնելով պետական շահերից։

Հանրապետության տերիտորիայում գործում են մեծ քանակությամբ սակավազոր շինմոնտաժային կազմակերպություններ։ Գործող բոլոր այդ ինքնուրույն շինարարական կազմակերպությունների մոտավորապես 20 տոկոսի տարեկան բեռնվածությունը կազմում է մինչև 1 միլիոն ռուբլի, իսկ 60 տոկոսինը՝ մինչև 2 միլիոն ռուբլի։ Մանր շինարարական կազմակերպությունների առկայությունը դժվարացնում է շինարարության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի հարցերի լուծումը։ Նույնպիսի անմխիթարական վիճակ է տիրում պատվիրատու կազմակերպություններում։ Հանրապետության տերիտորիայում ներկայումս կան մոտավորապես 1.000 կառուցող-պատվիրատուներ։ Դրանց առատությունը խիստ դժվարացնում է քաղաքաշինական և կապիտալ շինարարության մյուս պրոբլեմային հարցերի կոմպլեքսային լուծումը։

Անհրաժեշտ է ամենամոտ ժամանակներս հանգամանորեն խորամուխ լինել և վճռել շինարարական արտադրության կենտրոնացման, մասնագիտացման, բնակելի տների և կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման միասնական պատվիրատուներ կազմակերպելու հարցերը։

Նախագծային կազմակերպությունները չեն լուծել շինարարական տեխնիկայի ու ճարտարապետության բոլոր պահանջներին համապատասխանող խնայողական տիպային նախագծեր ստեղծելու, շինարարական կազմակերպությունները ժամանակին որակյալ նախագծային-նախահաշվային փաստաթղթերով ապահովելու և, վերջապես, նախագծման ասպարեզում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներն արմատավորելու և այլ հարցեր։

Հարկ է ուշադրություն սևեռել հանրապետությունում մանր նախագծային կազմակերպությունների գոյության վրա։ Բացի սակավազոր լինելուց և ցածրորակ նախագծեր թողարկելուց, այդ կազմակերպությունները դարձել են վերնահարկերի, պանսիոնատների, ամառանոցների և այլ շինությունների ապօրինի նախագծերի գլխավոր մատակարարները։ Մեր հիշողության մեջ դեռևս թարմ են Երքաղսովետի հատուկ նախագծային և կոնստրուկտորական բյուրոյի «աճպարարների» գործունեության տխուր արդյունքները։

Այն պասսիվությունը, որ նախագծային գործի բարելավման ասպարեզում ցուցաբերում է հանրապետության պետշինը՝ ընկ. Գ. Աղաբաբյանի գլխավորությամբ, անհանդուրժելի է դառնում։ Պետշինը, պետպլանը պետք է շատ կարճ ժամանակում Մինիստրների սովետին կոնկրետ առաջարկություններ ներկայացնեն հանրապետության նախագծային գործի բարելավման վերաբերյալ՝ նկատի ունենալով նախագծային կազմակերպությունների խոշորացումը, նրանց նյութատեխնիկական բազայի բարելավումը, զինումը ժամանակակից կազմտեխնիկայով։

Կապիտալ շինարարության գլխավոր որոշիչ օղակը բուն շինարարական արտադրությունն է։ Նույնիսկ ամենալավ նախագծերի և ամենալավ պլանավորման պայմաններում վերջին խոսքը պատկանում է շինարարներին և մոնտաժողներին, բոլոր նրանց, ովքեր կազմակերպում և իրագործում են շինարարական արտադրությունը։ Ահա այստեղ է, որ մենք, ինչպես ասում են, կաղում ենք երկու ոտքով։

Ցածր է աշխատանքների կազմակերպման մակարդակը շինարարական հրապարակներում, վատ են օգտագործվում եղած մեխանիզմներն ու տրանսպորտը, դանդաղ են արմատավորվում աշխատանքի կազմակերպման առաջադիմական մեթոդները. դեռևս մեծ են բանվորական կադրերի պարապուրդներն



ու հոսունությունը, շատ կառույցներում տիրում է լիակատար անտնտեսվարություն, կան արժեքավոր շինանյութերի և կոնստրուկցիաների մեծ կորուստներ և փչացումներ։

Շինարարական և մոնտաժային կազմակերպությունների միջև եղած անհամաձայնությունը հանգեցնում է այն բանին, որ օբյեկտների առյուծի բաժինը շահագործման է հանձնվում տարեվերջին։ Դա ստեղծում է գրոհայնություն, հանգեցնում շինմոնտաժային աշխատանքների որակի խիստ իջեցման, դրանց թանկացման։

Շինարարական մինիստրություններն ու գերատեսչությունները չեն կարողացել հասնել այն բանին, որպեսզի շինարարական կազմակերպությունների ղեկավարները բարձր պատասխանատվության զգացումով մոտենան պլանային առաջադրանքների կատարման գործին, աշխատանքը օբյեկտներում կազմակերպեն համաչափ, անհանդուրժողության մթնոլորտ ստեղծեն խոտանարարների, շինարարության ժամկետները վիժեցնողների, հավելագրումներով և աչքակապությամբ զբաղվողների նկատմամբ։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպություններն իրենց հերթին թույլ են զբաղվում շինարարության կազմակերպման և այդ բնագավառի բոլոր օղակներում կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու հարցերով։

Մենք հատկապես ուզում ենք պլենումի ուշադրությունը սրել բնակարանների, դպրոցների և նախադպրոցական հիմնարկների շինարարության պրոբլեմի վրա։

Շինարարական կազմակերպությունների կողմից բնակելի տների, դպրոցների ու նախադպրոցական հիմնարկների գործարկման պլանները խրոնիկաբար չկատարելը և դրանց անբավարար որակը հնարավոր չէ հանդուրժել։

Ի՞նչ կարող են պատասխանել, օրինակ, մինիստրներ ընկ. ընկ. Կ. Հակոբյանը, Գ. Թադևոսյանը, վարչության պետ Գ. Ղամբարյանը արդյունաբերական ձեռնարկությունների հազարավոր բանվորներին, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողներին, որոնք սպասում են, թե շինարարները ե՞րբ են ամբողջովին և ժամանակին իրացնելու պետության հատկացրած միջոցները ու շահագործման հանձնելու այն օբյեկտները, որոնք պետք է բավարարեն բնակարանի, դպրոցներում հերթափոխային պարապմունքները վերացնելու, երեխաներին մանկապարտեզներով ապահովելու նրանց պահանջմունքները։

Մի՞թե կարելի է այսուհետ ևս հանդուրժել այն վիճակը, երբ ձրի պետական բնակարան ստացած մարդու մեջ երախտիքի զգացումն իր տեղը զիջում է շինարարության վատ որակից բխող անբավականության տհաճ զգացմանը. նորաբնակները հաճախ հարկադրված են լինում ոչ քիչ միջոցներ ու ժամանակ վատնել բնակարանների թերությունները և պակաս կողմերը վերացնելու համար։ Տեղնուտեղն ասենք, որ շատ նորաբնակներ էլ իրենք են խախտում կարգը, կատարելով զանազան վերակառուցումներ։

Ո՞րն է բնակարանային շինարարության մեջ տիրող այդ դրության պատճառը։ Նման անցանկալի հետևանքների մեզ հասցրել է այն պրակտիկան, երբ բնակելի տները շահագործման են հանձնվում անավարտ վիճակում, առանց բարեկարգման՝ միայն պլանները կատարելու, իսկ իրականում՝ շինարարության բնագավառում բարեհաջողության պատրանք ստեղծելու նպատակով։

Դրա պատճառը կուսակցական և պետական կարգապահության թուլացումն է, հանրապետության կուսակցական ու սովետական ղեկավար առանձին մարմինների ցածր պահանջկոտությունը, որոնք մեղավորներին խիստ պատասխանատվության կանչելու և պատժելու փոխարեն, իրենց անսկզբունքային վերաբերմունքով փաստորեն խրախուսում էին հավելագրումներն ու աչքակապությունը։

Կենտկոմը շինարարական-մոնտաժային կազմակերպությունների բոլոր ղեկավարներից, մինիստրություններից և գերատեսչություններից, կուսակցական կոմիտեներից և սովետական մարմիններից պահանջում է մեկընդմիշտ վերջ տալ նման խայտառակություններին։

1975 թվականը պատասխանատու քննություն կլինի այդ գործում։ Օբյեկտ-





ները շահագործման հանձնել ժամանակին և գերազանց որակով՝ ահա կառույցների կուսակցական կազմակերպությունների, կոլեկտիվների ու ղեկավարների խնդիրը: Վաղուց ի վեր հայ ժողովուրդը հռչակված է եղել դարերի համար կառուցելու իր հմտությամբ: Մեր ժողովրդի շինարարական լավ ավանդույթները հարկավոր է ամրապնդել և ավելի զարգացնել: Դա մեր շինարարների պարտքն է և պատվի գործը:

Եվս մի հարցի մասին: Խոսքը վերաբերում է բնակարանային ֆոնդի նկատմամբ հոգատար վերաբերմունքին, դրա ճիշտ, ռացիոնալ օգտագործմանն ու բաշխմանը:

Երևան քաղաքում շինարարության կամ բարեկարգման նպատակով տերիտորիաների իրացման համար բնակարանային ֆոնդի ոչ խելացի ծախսումը հանգեցրել է այն բանին, որ, մի կողմից, մեծ քանակությամբ բնակարաններ օգտագործվում են փոքր արդյունավետությամբ, մյուս կողմից, դա քաղաքում ստեղծում է իրացվողների պրոբլեմ: Ամենամոտ ժամանակներս հարկավոր է լուծել այդ պրոբլեմը և, որ ամենագլխավորն է, չստեղծել նոր պրոբլեմներ:

Իրացման պատրվակով աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների առանձին գործկոմներ, ինչպես նաև որոշ կազմակերպություններ ու հիմնարկներ մասսայական կարգով պայմանագրեր են կնքում մասնավոր անձանց հետ, թե իբր նրանց բնակարանները հանձնվում են իրացման նպատակով: Այդ գործարքները, որպես կանոն, հասցնում են կոպիտ խեղաթյուրումների և չարաշահումների, որոնց նպատակն է բնակարաններ ստանալ ավելի մեծ տարածությամբ և քաղաքի կենտրոնում: Հարկավոր է մեկընդմիշտ վերջ տալ նման պրակտիկային:

Աշխատավորների մեծ և արդարացի վրդովմունքն են առաջացնում բնակարանների բաշխման կարգի խախտումները, որոնք վերջին տարիներս լայն տարածում են գտել:

Դրությունն առանձնապես վատ է Երևան քաղաքում: Մայրաքաղաքի շատ կազմակերպություններում և հիմնարկներում բնակարանների բաշխումը կատարվում է առանց կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների ակտիվ մասնակցության: Բանն այնտեղ է հասնում, որ տեղական սովետական մարմիններում բույն դրած առանձին անազնիվ տարրեր զբաղվում են պետական բնակարանների սպեկուլյացիայով, լկտիաբար կաշառքներ են վերցնում:

Կան պետական բնակարանների շռայլման առանձին փաստեր: Սովետականի շրջկոմը և շրջսովետը, օրինակ, միայն վերջին ժամանակներս հայտնաբերել են ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից բնակարանների անօրինական բնակեցման 86 դեպք: Այդ բնակարաններն ազատվել և հանձնվել են կարիքավորներին: Այդ բնագավառում աշխատանքը պետք է շարունակել:

Քիչ չեն փաստերը, երբ ձեռնարկությունների և կազմակերպությունների միջոցների հաշվին կառուցվող բնակարանները տրվում են այդ կոլեկտիվների հետ առնչություն չունեցող անձանց:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի գունավոր մետալուրգիայի վարչության երկրաբանական-հետախուզական արտադրական տրեստը վերջին տարիների ընթացքում Երևան քաղաքում շահագործման է հանձնել 77 բնակարան, որոնցից տրեստի սիստեմի աշխատողներին տրվել է միայն 21-ը:

Բնակարանների բաշխման համանման փաստեր են հայտնաբերվել նաև մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչությունում և այլուր:

Զայրացուցիչն այն է, որ օրինականությունը կիրառելու կոչված մարմիններն ու պաշտոնատար անձինք առանձին դեպքերում ենթարկվել են չարամիտ խախտումների ուղին բռնած ղեկավարների կամքին. Նրանք ոչ միայն պայքար չեն մղել բնակարանային օրենսդրության խեղաթյուրումների դեմ, այլև հաճախ իրենք են հովանավորել խախտումներ թույլ տվողներին:

Իսկ որքա՜ն գանգատներ և արդարացի կշտամբանքներ են ստացվում բնակարանային-կոոպերատիվ շինարարության վարչության աշխատանքի վերա-



բերյալ: Ստուգումները ցույց են տվել, որ այն աշխատողները, որոնց վստահվել էր այդ կարևոր գործը, կոոպերատիվը դարձրել էին անձնական շահույթի աղբյուր, դրանով իսկ լուրջ վնաս հասցնելով քաղաքացիների շահերին և սովետական մարմինների հեղինակությանը: Խախտումներն այստեղ այնպիսի չափեր են ընդունել, որ նույնիսկ սովորական նկարագրության դեպքում զայրույթ ու վրդովմունք են առաջացնում:

Հարց է ծագում. արդյոք Երքաղսովետի, շրջանային սովետների գործկոմների ղեկավարները չգիտե՞ն այդ այլանդակությունների մասին: Եվ վերջ ի վերջո ընկ. Գ. Հասրաթյանը ե՞րբ պետք է պետական պատշաճ կարգ ու կանոն հաստատի բնակարանների ճիշտ բաշխման գործում: Կուսակցության Երևանի քաղկոմը ցավալի անհետևողականություն է ցուցաբերում այդ հարցի կարգավորման մասին իր իսկ ընդունած որոշումների կատարման գործում:

Կենտկոմը Երքաղկոմից պահանջում է խստագույն կարգ ու կանոն հաստատել աշխատավորների կարիքների հետ ուղղակի առնչություն ունեցող այդ կարևոր գործում, կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկել բոլոր այն ղեկավարներին, ովքեր թույլ են տալիս թեկուզ նվազագույն շեղում սահմանված կարգից: Այդ գործում մեծ խնդիրներ են կանգնած նաև արհմիութենական մարմինների առջև: ՀԱՄԽ-ը, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները պետք է կազմակերպեն մասսայական բանվորական վերահսկողություն բնակարանների բաշխման և օգտագործման նկատմամբ: Նման խիստ հաշվառում ու վերահսկողություն պետք է սահմանեն տեղերում նաև ձեռնարկությունների և հիմնարկների սկզբնական կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները:

Քաղաքների, մանավանդ մայրաքաղաքի բնակիչների մասսայական բողոքներն է հարուցում բնակարանային ֆոնդի վատ վիճակը: Շրջանային սովետները միանգամայն անբավարար են զբաղվում այդ հարցով, որը փաստորեն ինքնահոսի է մատնված: Այդ նպատակներին հատկացվող միջոցները տարիներով չեն իրացվում կամ ծախսվում են բնակարանային ֆոնդի նորոգման հետ ընդհանուր ոչինչ չունեցող աշխատանքների կատարման վրա: Առանձնապես վատ է քաղաքների և բնակավայրերի բարեկարգման գործը:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի նորմալ գործունեությունը մեծապես պայմանավորված է տրանսպորտի, կապի և արտադրությանն սպասարկող մյուս օղակների հստակ աշխատանքով:

Չնայած ավտոմոբիլային տրանսպորտի և կապի մինիստրությունները, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը, քաղաքացիական ավիացիայի հայկական վարչությունը կատարել են պլանային առաջադրանքները, այնուամենայնիվ, այսօր մենք պետք է ասենք, որ ժողովրդական տնտեսության հիշյալ ճյուղերի աշխատանքը չի համապատասխանում տնտեսական զարգացման արդի փուլի պահանջներին և լիովին չի բավարարում արտադրության հարաճուն պահանջմունքները:

Այդ ճյուղերի առանձին ձեռնարկություններում ու կազմակերպություններում նկատվում են կարգապահության խախտման, անպատասխանատվության, հավելագրումների, չարաշահումների և դրամաշորթության փաստեր:

Տրանսպորտի և կապի ձեռնարկությունների հիմնական խնդիրներից մեկը բնակչության սպասարկումն է: Եվ այն բանից, թե դա որակական ու կուլտուրական ինչպիսի մակարդակով է արվում, նշանակալիորեն կախված է աշխատավորների տրամադրությունը: Այդ ճյուղերի ղեկավարները չեն համակվել տվյալ աշխատանքի կարևորության գիտակցությամբ: Բնակչությանը տրանսպորտով, կապի բոլոր տեսակներով սպասարկելու մակարդակը մեզ այսօր բավարարել չի կարող: Ավտոբուսներով և էլեկտրական տրանսպորտով փոխադրումների կազմակերպման մակարդակը ետ է մնում քաղաքների և հատկապես Երևանի զարգացման տեմպերից:

Տրանսպորտում պատշաճ կարգ չի հաստատվել ուղևորների երթևեկության վարձի գանձումը կազմակերպելու գործում: Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը (ընկ. Վ. Հովհաննիսյան), տրամվայ-տրոլեյբուսի վարչությունը, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը (ընկ. Ա. Ղանդիլյան),

մինչև ե՞րբ պետք է հաշտվեն ուղևորների անտամս փոխադրումների, հակասանիտարական վիճակի, սպասարկման ցածր կուլտուրայի հետ։ Այս հարցում անհրաժեշտ է շատ կարճ ժամանակում պետական կարգ ու կանոն հաստատել։

Աշխատավորների լուրջ դժգոհությունն է հարուցում կապի ձեռնարկությունների և, առաջին հերթին, հեռախոսային ցանցի աշխատանքը։ Կենտկոմը ընկ. Թ. Մինասյանցից պահանջում է վերջ տալ այդ գործում իր անտարբերությանը և բնակչության սպասարկումը կազմակերպել պահանջվող մակարդակով, պատշաճ կարգ ու կանոն հաստատել ենթակա հիմնարկների աշխատանքում։

Տրանսպորտի հաջող աշխատանքին խանգարում է հանրապետության որոշ ճանապարհների անբավարար վիճակը։ Ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման մինիստր ընկ. Հ. Հայրապետյանը պետք է գիտենա, որ բացի գլխավոր մայրուղիներից, գոյություն ունեն նաև ուրիշ, ոչ պակաս նշանակություն ունեցող ճանապարհներ, որոնք գտնվում են միանգամայն բարձիթողի վիճակում, կոնկրետ միջոցներ ձեռնարկի դրանք կարգի բերելու համար։ Տեղական սովետներն իրենց հերթին պետք է մտածեն հանրապետության քաղաքների և գյուղերի փողոցների ու ճանապարհների վիճակի մասին։

Ընկերնե՛ր։ Բնակչության սպասարկման ոլորտը աշխատանքի այն վճռական ասպարեզներից մեկն է, որն անմիջականորեն առնչվում է բնակչության կենսամակարդակի բարձրացման խնդրի իրագործման հետ։ Բնականաբար, աշխատանքի այդ ասպարեզները հատկապես պետք է գտնվեն հանրապետության կուսակցական, սովետական և մյուս համապատասխան ղեկավար մարմինների մշտական և անդուլ ուշադրության ներքո։

Վերջին ժամանակներս առևտրական ցանցում նկատելիորեն բարելավվել է բնակչությանը պարենային և ոչ-պարենային ամեն տեսակի ապրանքներ, մասնավորապես թարմ բանջարեղեն և պտուղ մատակարարելու գործը։ Որոշակի տեղաշարժեր կան բնակչության կենցաղային սպասարկումը կազմակերպելու բնագավառում։

Բայց մենք պետք է ուշադրությունը սևեռենք նախ և առաջ չլուծված խնդիրների ու հարցերի վրա, թերությունների վրա, իսկ դրանք, ցավոք, դեռ շատ-շատ են։ Առևտրի ասպարեզում, սկսած 1972 թվականից, չեն կատարվում մանրածախ ապրանքաշրջանառության պլանները։ Հնգամյակի չորս տարում նրա ծավալի աճը նախատեսվածից ետ է մնում 20,5 տոկոսով։ Անցած 4 տարում, հնգամյակի մակարդակի համեմատությամբ, կենցաղային սպասարկման պլանների թերակատարումը կազմել է 28,6 միլիոն ռուբլի։ Բնակչության սպասարկման պլաններն անբավարար են կատարում կենցաղային ծառայության ձևերի իրացման պլաններ ունեցող բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները։

Անբարենպաստ է առևտրի և կենցաղային սպասարկման նյութատեխնիկական բազայի զարգացման, առևտրական ցանցի ճիշտ տեղաբաշխման գործը։ Առևտրի մինիստրության և Հայկոոպի վարչության ղեկավարները միանգամայն անբավարար են զբաղվում առևտրա-տեխնոլոգիական նորագույն սարքավորումների ներդրման հարցերով, ապրանքների չափկշռման և փաթեթավորման, ժամանակակից կշռող-չափող սարքերի տեղադրման կազմակերպմամբ, որոնք կոչված են նպաստելու առևտրի աշխատողների աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, գնորդների ժամանակի խնայողությանը և ապրանքների պահպանմանը։

Անմխիթար վիճակում է գտնվում հանրապետության հասարակական սննդի կազմակերպումը։ Բազմաթիվ քաղաքների, ավանների և գյուղերի բնակիչները փաստորեն չեն կարողանում օգտվել հասարակական սննդի ծառայություններից՝ սպասարկման ցածր կուլտուրայի, ճաշերի ցածր որակի և նեղ տեսականու պատճառով։

Այժմ, ապրանքների բավարար ռեսուրսների առկայության պայմաններում, անհրաժեշտ է ամենայն խստությամբ պատասխան պահանջել առևտրի ղեկավարներից՝ առևտրի կազմակերպման և նրա կուլտուրայի բարձրացման



համար։ Ինչո՞ւ չի կազմակերպվում առևտրի ասպարեզում ապրանքային ռեսուրսներով մանևրելու ճկուն սիստեմ, մասսայական պահանջարկ վայելող ապրանքների բավարար և անխափան մատակարարումը բնակչությանը։ Ինչո՞ւ, օրինակ, հանրապետության մայրաքաղաքի շատ խանութներում կեսօրից հետո չեն լինում միս, կաթ և կաթնամթերքներ՝ պահանջված տեսականիով։

Առևտրի մինիստրությունը և Հայկոոպի վարչությունը լուրջ թերություններ և վրիպումներ ունեն ենթակա ձեռնարկություններում՝ աշխատանքները հստակ կազմակերպելու և հիշյալ հարցերի լուծման համար նրանց ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու գործում։ Դրա համար նրանց պետք է խիստ քննադատել։

Սակայն դա կլիներ իրականության ոչ լրիվ և ոչ ճշգրիտ արտացոլումը, իսկ ճշմարտությունն այն է, որ վերոհիշյալ հարցերի ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների ոչ քիչ թվով անմիջական կատարողներ ուղղակիորեն շահագրգռված չեն դրանց իրականացմամբ։ Վաղուց ժամանակն է, որ մենք իրերը կոչենք իրենց անուններով։ Այնպիսի արտահայտություններ, ինչպիսիք են սովետական առևտրի կանոնների խախտում, պլանների թերակատարում, աշխատանքի թերություններ, վրիպումներ և այլն, և այլն, որոնք կրկնվում են տարեցտարի, անցնում փաստաթղթից-փաստաթուղթ, արդեն ուղղակի ձանձրացրել են։ Դրանք սոսկ դժգույն արտացոլումն են առևտրական մի շարք տեղամասերում կուտակված այն ամբողջ չարիքի, որին ծնունդ տվողները հանգիստ կերպով ընդունում են այդ արտահայտությունները, քանի որ ամուր իմունիտետ են ձեռք բերել դրանց հանդեպ։ Այդ չարիքի առանձին ստեղծողներ ու կրողներ առևտրում իրենց աշխատանքն ու իրենց կոչումը գլխավորապես տեսնում են անսահման շահառության մեջ, հանուն որի նրանք ետին պլան են մղում բնակչության նորմալ սպասարկման նպատակով իրենց առաջադրված պետական խնդիրների կատարումը։ Բավական է ամեն տեսակ ակնարկներով և երկիմաստ արտահայտություններով նրանց հետ պահմտոցի խաղալ։ Ով իսկապես ուզում է պայքարել այդ չարիքի դեմ, պարտավոր է այդ մասին ասել աներկիմաստ և ամբողջ ձայնով, նրանց ջրի երես հանել և նրանցից մաքրել պետության ու ժողովրդի համար այնպիսի կարևոր մի բնագավառ, որպիսին է առևտուրը։

Այդ է պահանջում այսօր Կենտկոմը առևտրի մինիստր ընկ. Հ. Հովհաննիսյանից, Հայկոոպի վարչության նախագահ ընկ. Է. Սարգսյանից և վարչական ու վերահսկիչ մարմինների ղեկավար աշխատողներից։

Իսկապես, եթե առևտրի առանձին աշխատողներ մեծ եկամուտ են ստանում և՛ բարձր պահանջարկ ունեցող ապրանքների սպեկուլյացիայից, որոնք վերավաճառողների միջոցով բացեիբաց իրացվում են, և՛ ապրանքների, հասարակական սննդի գործող պետական մանրածախ գների ուղղակի և անուղղակի բարձրացումներից, թերաչափման, թերակշռման, թերահաշվման միջոցով գնորդներին խաբելուց և այլ բաներից,— մի՞թե նրանք շահագրգռված կլինեն պլանների կատարմամբ, նյութական ռեսուրսների մանյովրով, աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորմամբ և առևտրի կազմակերպումը բարելավելու խոշոր միջոցառումների իրականացմամբ։

Եվ այս ամենը, որպես կանոն, անվանվում են աշխատանքի թերություններ, վրիպումներ ու բացեր։ Չէ՞ որ պարզապես միամիտ պետք է լինել թերություններ անվանելու համար այնպիսի կասկածելի և տարակուսելի փաստեր, երբ մեծածախ բազաներն ապրանքների հիմնական զանգվածը բաց են թողնում միայն ամսվա վերջին տասնօրյակներին։ Անցյալ տարվա մարտին Հայտեքստիլառը, Հայհագուստառը, Հայգալանտերեան, Հայտնտառը ամսվա ընթացքում բաց թողնելու ենթակա բոլոր ապրանքների մոտավորապես կեսը առևտրական ցանցին տվեցին միայն ամսվա վերջին տասնօրյակում։ Այս ամենը արվում է այն ժամանակ, երբ կան կուսակցական ու սովետական վերադաս մարմինների բազմաթիվ որոշումներ՝ ապրանքներն ամսվա ընթացքում հավասարաչափ բաց թողնելու մասին։ Հարց է ծագում. հանուն ինչի՞ և ի՞նչ նպատակներով են խախտվում այդ որոշումները։ Համենայնդեպս՝ ոչ առևտրի բարելավման համար։

Հիշյալ բացասական երևույթներն առկա են նաև բնակչության կենցաղա-

յին սպասարկման և ավտոտեխսպասարկման սիստեմներում։ Հսկողության բացակայության, իսկ հաճախ էլ թողտվության հետևանքով պետական առանձին ձեռնարկություններ են թափանցել կասկածելի մարդիկ, որոնք անպատիժ կերպով պետական ձեռնարկություններն օգտագործում են սեփական շահույթի նպատակով, որի հետևանքով առանձին արտադրություններ փաստորեն չեն զբաղվում աշխատավորների կենցաղի անմիջական սպասարկմամբ և դարձել են ժողովրդական սպառման ապրանքների անօրինական թողարկման օբյեկտներ։

Կենցաղի ծառայության ձեռնարկություններում թույլ են տրվում սպասարկումների մի շարք տեսակների գների ու տարիֆների կամայական նշանակումներ, բնակչությունից սպասարկման համար վարձ են գանձում այնպիսի չափերով, որոնք գերազանցում են գնացուցակների տարիֆներն ու գները, մասսայական արտադրության առարկաները վաճառում են անհատական պատվերների բարձրացված գներով, սալոններում և կենցաղի ձեռնարկությունների մյուս կետերում կատարվում է այդպիսի առարկաների ապօրինի իրացում։

Իսկ չէ՞ որ սպասարկման ոլորտում կան սկզբնական կուսակցական կազմակերպություններ, բազմաթիվ կոմունիստ ղեկավար աշխատողներ։ Ինչպե՞ս է ստացվում, որ նրանց աչքի առաջ ապօրինություն և չարաշահումներ են կատարվում։ Ակներևաբար, այն պատճառով, որ նրանցից պատասխան չի պահանջվում կուսակցական կանոնադրության ամբողջ խստությամբ, որի համաձայն կոմունիստը պարտավոր է պայքարել բացասական, խորթ բարքերի դեմ։ Այդ պատճառով է, որ սպասարկման ոլորտի սկզբնական կուսակցական շատ կազմակերպություններ, կոմունիստներ չեն գտնվել իրենց կոչման բարձրության վրա, իսկ նրանցից ոմանք անվայել արարքների մասնակից են դարձել։ Հարկավոր է վճռականապես վերջ տալ այդ պրակտիկային։

Չի կարելի թույլ տալ, որ մի բուռ դրամաշորթներ, սպեկուլյանտներ և խաբեբաներ խայտառակեն առևտրի աշխատողների բարի անունը։ Առևտրի աշխատողների, կենցաղի ծառայության բազմահազարանոց բանակը հիմնականում ազնիվ է և բարեխղճորեն է կատարում իր պարտականությունները, նրանք մեր դաշնակիցներն են այդ առանձին աֆերիստների դեմ մղվող պայքարում։ Կուսակցական կազմակերպությունների, շրջկոմների, քաղկոմների և մյուս բոլոր մարմինների խնդիրն է՝ օգտագործելով սպասարկման ոլորտի այդ աշխատողների ուժերը, կազմակերպել բանվորական, համաժողովրդական վերահսկողություն և մեր ժողովրդական տնտեսության այդ ոլորտը մաքրել ամեն տեսակ աղտեղությունից, այնտեղ հաստատել օրինակելի կարգ ու կանոն։

Առևտրի մինիստրության, Հայկոոպի, բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության, ավտոտեխսպասարկման գլխավոր վարչության ղեկավարները պետք է միջոցներ ձեռնարկեն պետական կարգ ու կանոն հաստատելու բոլոր ձեռնարկություններում, թույլ տրվող թերություններն ու վրիպումները ուշադիր կերպով և հստակորեն զանազանեն պետության և բնակչության հաշվին հարստանալու սիրահարների դիտավորյալ, չարամիտ գործողություններից և դրան համապատասխան վճռականապես գործեն։ Պետք է մեկընդմիշտ վերջ տալ այն վնասակար պրակտիկային, երբ հանցանքներ գործած, չարաշահումների մեջ մերկացված մարդիկ աշխատանքի են թողնվում սպասարկման ոլորտում։

Բնակչության սպասարկման ոլորտի գործունեության հետ սերտորեն առնչված է կոլտնտեսային շուկաներում տիրող վիճակի հարցը։ Դա դարձել է բնակչությանն անմիջականորեն հուզող մեր սուր հարցերից մեկը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ առանձին կոլտնտեսային շուկաներում ազատորեն տնօրինություն են անում առող-ծախողները և սպեկուլյանտները։ Այնտեղ իրենց մթերքները վաճառող կոլտնտեսականներ քիչ կան, բայց դրա փոխարեն վաճառվում են կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աճեցված, ինչպես նաև առևտրական կազմակերպությունների կողմից մթերված շատ ընտիր մթերքներ, մասնավորապես կարտոֆիլ, պոմիդոր և այլ բանջարեղեն, միրգ, որոնք նախատեսված են բնակչությանը վաճառել պետական առևտրական ցանցի միջոցով՝ պետական մանրածախ գներով։



Ստացվում է այնպես, որ հաճախ ընտիր միրգն ու բանջարեղենը իրացվում են շուկաներում, իսկ պետական առևտրի ցանցում վաճառվում է ցածրորակ ապրանքը։ Եթե դրան ավելացնենք նաև այն հանգամանքը, որ պետական ցանցում պտուղ-բանջարեղենի առևտուրը կազմակերպված է անբավարար, և ցածր է առևտրի կուլտուրան, ապա հասկանալի կլինի, թե ինչու բնակչության մի մասը նախընտրում է մթերքներ գնել շուկայից, նույնիսկ եռակի թանկ գնով։

Սպեկուլյանտ-վերավաճառողների դեմ պատշաճ պայքար կազմակերպելու փոխարեն առևտրի, վարչական մարմինների և նույնիսկ բարձր ինստանցիաների առանձին անփույթ ղեկավարներ անհիմն պատճառաբանություններով փորձում են արդարացնել նման վիճակը։

Վարչական օրգանների, առևտրի և շուկաների ղեկավարները չգիտե՞ն, արդյոք, որ Հայաստանում կոլտնտեսականներն իրենց տնամերձ հողամասերում մարոկոյական նարինջ չեն աճեցնում։ Այնինչ շուկաներում այդպիսիք հաճախ կարելի է գտնել։ Արդյոք ժամանակը չէ՞ դատարկախոսությունից անցնել անողոք պայքարի։

Պետք է ակտիվ և ներգործուն պայքար կազմակերպել ամենալայն ճակատով, հանրապետության բոլոր համապատասխան մարմինների և բնակչության մասնակցությամբ, այդ պայքարում ցուցաբերելով հաստատակամություն ու վճռականություն՝ գործը մինչև վերջ հասցնելու համար։ Այս ուղղությամբ գլխավորը կլոր տարին թարմ պտուղ-բանջարեղենի պետական վաճառքի գործի բարելավումն է։ Ընդսմին, ապահովելով դրանց բարձր որակը և բավարար քանակը։

Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեները մոտիկից զբաղվեն սպասարկման ոլորտի աշխատանքը կազմակերպելու հարցերով։ Հարկավոր է հաղթահարել կուսակցական որոշ ղեկավար աշխատողների մեջ արմատացած այն վնասակար մտայնությունը, երբ առևտրի և կենցաղային սպասարկման հարցերը երկրորդական են համարում, չզբաղվելով առևտրի ու կենցաղի սպասարկման կադրերի ընտրությամբ, դաստիարակությամբ, այն փոխարինելով միայն խախտողներին պատժելով։ Սպասարկման ոլորտը պահանջում է կուսակցական մշտական հոգատարություն ու հսկողություն։

***

Հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները որոշակի աշխատանք են կատարում ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից նախատեսած գյուղատնտեսական արտադրության զարգացման ծրագրի կատարման ուղղությամբ։ 1971—1974 թվականներին հանրապետության գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 573 միլիոն ռուբլի, ոռոգելի հողերի տարածությունն ավելացավ 41 հազար հեկտարով, ջրարբիացվեց 100 հազար հեկտար արոտավայր ու մարգագետին, յուրացվեցին 14,3 հազար հեկտար խոպան, քարքարոտ և ոչ պիտանի հողեր։ Որոշ չափով բարձրացան գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը։ 1971—1974 թթ. գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացավ 22,9 տոկոսով։

Այս ամենը, անկասկած, դրական է։ Սակայն, եթե խորամուխ լինենք գյուղատնտեսության վիճակին, ապա պետք է նշենք, որ մի շարք մթերքների արտադրության ծավալով և աշխատանքի արտադրողականությամբ մենք զգալիորեն ետ ենք մնում ժողովրդատնտեսական պլանով և կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված մակարդակից։

Այսօր մենք պարտավոր ենք ուղղակի ասել, որ հողագործության և անասնապահության վարման կուլտուրայի մակարդակը շարունակում է մնալ ցածր։

Քննության առնենք խաղողագործության և պտղաբուծության վիճակը հանրապետությունում։ Հնգամյակի անցած չորս տարում պետությանը պակաս է տրվել 155 հազար տոննա խաղող և 39 հազար տոննա պտուղ, իսկ դա կազմում է այդ մթերքների մթերման հանրապետության գրեթե մեկ տարվա պլանային առաջադրանքը։

Նկատվում է խաղողի այգիների տարածությունների կրճատման վնասակար տենդենց։ Սկսած 1964 թվականից խաղողի այգիների տարածությունները սիստեմատիկաբար կրճատվում են, նույնիսկ նրա աճեցման համար ամենաբարենպաստ շրջաններում։ Շատ տնտեսություններ այդ տարածությունները կրճատել են այգիների վերակառուցման անվան տակ, բայց իրականում հողատարածություններն զբաղեցրել են ուրիշ կուլտուրաներով։ Դրությունն ավելի է վատթարանում նրանով, որ խաղողի այգիների բերքատվությունը իջել է. 1965 թվականի հեկտարից 51,0 ցենտներից այն 1973 թվականին հասավ 43,7 ցենտների։ Եվ միայն 1974 թվականին փոքր-ինչ գերազանցվեց այդ մակարդակը։

Արդեն մի քանի տարի շարունակ խաղողի արտադրության և մթերումների պլանը չեն կատարում Հոկտեմբերյանի, Արտաշատի, Աշտարակի, Էջմիածնի, Նաիրիի, Եղեգնաձորի և այլ շրջաններ։

Պտղատու այգիների բերքատվությունը հանրապետությունում բնորոշվում է խիստ արտահայտված տատանումներով և առանձին տարիներ չի անցնում հեկտարից 18—30 ցենտներից։

Միանգամայն անհանդուրժելի է, որ հանրապետությունում խաղողի այգիների նոսրությունը կազմում է 20 տոկոս, պտղատու այգիներինը՝ ավելի քան 16 տոկոս։ Ամենահամեստ հաշվարկումներով, այժմ ավելի քան 10 հազար հեկտար ոռոգելի հողեր համարվում են զբաղեցված, բայց ժողովրդական տնտեսությանը օգուտ չեն բերում։ Անհրաժեշտ աշխատանք չի կատարվում խաղողագործության և պտղաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ, որի հետևանքով ավելանում են աշխատանքային ծախսումները և աճում է արտադրանքի ինքնարժեքը։

Իսկ ինչպիսի՞ն է գործերի վիճակն անասնապահության բնագավառում։ Ցավոք, այն ողջ հանրապետությունում վնասաբեր վիճակում է։ Այն անշահութաբեր է նույնիսկ Արարատյան դաշտավայրի տնտեսություններում, որոնք զգալի տեսակարար կշիռ ունեն անասնապահական մթերքների արտադրության ընդհանուր հանրապետական ծավալի մեջ։ Իսկ առանձին լեռնային և նախալեռնային շրջաններում գործերն ավելի վատ վիճակում են։

Հանրապետության տնտեսություններում ցածր է անասունների մթերատվությունը։ Անցյալ տարի մեկ կովի միջին կաթնատվությունը կազմեց 1.659 կիլոգրամ, սպանդային անասունների միջին քաշը՝ 237 կիլոգրամ՝ այն դեպքում, երբ միջին միութենականը կազմում է, համապատասխանաբար, 2.404 կիլոգրամ և 334 կիլոգրամ։ Մայրական գլխաքանակի տեսակարար կշիռը ցածր է և չի ապահովում հոտի ընդլայնված վերարտադրության անհրաժեշտ տեմպեր։ Նախրում կովերի գլխաքանակը կազմում է ընդամենը 33 տոկոս։

Շատ տնտեսություններում վատ հիմքերի վրա է դրված անասնաբուժական ծառայությունը։ Մի՞թե նորմալ է, որ վերջին տարիներս 100 կովից ու երինջից միջին հաշվով ստացվում է 70—73 հորթից ոչ ավելի, իսկ 100 մայր ոչխարից՝ 75—80 գառ։

1974 թվականին հանրապետության սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների մեկ ցենտներ միս ստանալու համար ծախսվել է 1.470 կերամիավոր։ Մեկ ցենտներ կաթ ստանալու համար ծախսվել է 170 կերամիավոր, որը միջին միութենական ցուցանիշից զգալիորեն բարձր է։

Անասնապահության այդպիսի վիճակը հիմնականում բացատրվում է կերի կայուն բազայի բացակայությամբ, սելեկցիոն-տոհմային աշխատանքի բարձիթողի վիճակով, նրանով, որ կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգանները թույլ ուշադրություն են դարձնում գյուղատնտեսության այդ, կենսականորեն կարևոր, ճյուղի զարգացմանը։ Միայն դրանով կարելի է բացատրել, որ հանրապետությունը երկրի մյուս տնտեսական շրջաններից զգալիորեն ավելի ուշ կանգնեց անասնապահության ինտենսիվացման, միջտնտեսական խոշոր կոմպլեքսների ստեղծման ուղու վրա։ Բավական է ասել, որ անասնապահական ֆերմաների կոմպլեքսային մեքենայացումը կազմում է ընդամենը 6 տոկոս, իսկ կովերի մեքենայացված կիթը՝ 23,6 տոկոս։

Գյուղատնտեսության բնագավառի ամենալուրջ թերություններից մեկն



այն է, որ մենք լիովին չենք կենսագործել գյուղատնտեսության ինտենսիվացման վերաբերյալ համագումարի պահանջները։ Ի՞նչ ինտենսիվացման մասին է խոսքը, երբ գյուղատնտեսության մեջ նյութական ծախսումների տեսակարար կշիռը սիստեմատիկ կերպով աճում է։ 1973 թվականին համախառն արտադրանքի մեկ ռուբլու նյութական ծախսումները 1970 թվականի համեմատությամբ ավելացել են 5 տոկոսով, իսկ ֆոնդահատուցումն իջել է։

Բավարար նպատակասլացությամբ չեն կատարվում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման աշխատանքները։ Այդ հարցի առթիվ չի մշակված հեռանկարային ծրագիր։ Մանր տնտեսությունների առկայությունը, դրանց ցրվածությունն ու կտրվածությունը դժվարացնում են առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, աշխատանքային պրոցեսների մեքենայացումը, ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործումը։ Այդ ամենը բացասաբար է անդրադառնում կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական վիճակի վրա։ Շատ տնտեսություններ, հատկապես սովխոզներ, աշխատում են անշահութաբեր, մեծ վնասներով։

Հանրապետության սովխոզներում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը 1974 թվականին միջին հաշվով 15—20 տոկոսով, իսկ առանձին գյուղատնտեսական կուլտուրաների գծով՝ 30—40 տոկոսով ավելի ցածր են, քան կոլտնտեսություններում։ Չունենալով սեփական շրջանառու միջոցներ, տնտեսական գործունեությունը սովխոզներն իրականացնում են պետական երկարատև ու կարճատև վարկավորման հաշվին, ընդ որում այդ վարկերի չափերը տարեցտարի աճում են։ Մեծ վնասներով են աշխատում Սարտունու, Ապարանի, Թալինի, Կրասնոսելսկի, Ազիզբեկովի, Արագածի, Անիի և այլ շրջանների տնտեսությունները։

Կուսակցության շրջկոմների և գյուղատնտեսական օրգանների թողտվության հետևանքով մի շարք կոլտնտեսություններում խախտվում են տնտեսավարման հիմնական սկզբունքները։ Հակառակ օրինակելի կանոնադրության, նրանք տարիներ շարունակ անբաժանելի ֆոնդի համար մասհանում են եկամտի սոսկ մի աննշան մասը, իսկ աշխատանքի վարձատրության վրա ծախսվում է դրա 80—90 տոկոսը։ 1973 թվականին 135 կոլտնտեսություններ անբաժանելի ֆոնդերին ոչ մի ռուբլի չտվեցին, ամբողջ եկամուտն օգտագործեցին սպառման ֆոնդի համար։ Այդ պրակտիկան նկատվում է նույնիսկ Արարատյան դաշտավայրի որոշ կոլտնտեսություններում և հանրապետության մյուս գոտիների՝ տնտեսապես ամուր այլ տնտեսություններում։

Այդպիսի տնտեսավարման արատավորությունն այն է, որ դանդաղում է արտադրության տեխնիկական հագեցման և գյուղատնտեսական աշխատանքի էներգազինվածության բարձրացման պրոցեսը։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման շահերը հրամայաբար պահանջում են ըստ ամենայնի ընդլայնել ոռոգելի հողատարածությունները, բարելավել ջրատնտեսական աշխատանքները։ Հողերի հիմնական հատակագծման, կուլտուր-տեխնիկական աշխատանքների, ոռոգման ենթակա տերիտորիաների խիզացիոն նախապատրաստման հարցերի ոչ-կոմպլեքսային լուծման, ոռոգման մեքենայացման և ավտոմատացման բացակայության պատճառով զգալիորեն իջնում է կապիտալ ներդրումների արդյունավետությունը։ Ավելին, այդ աշխատանքները չկատարելու, միջտնտեսային և ներտնտեսային ոռոգիչ ցանցերի ու կառուցվածքների անսարքինության, ջրի անտնտեսվար օգտագործման պատճառով լինում են ջրային և հողային ռեսուրսների մեծ կորուստներ։

Այսպես, օրինակ, Նոյեմբերյանի և Եղեգնաձորի շրջաններում պոմպակայանների շահագործումից հետո, ոռոգման արդիական տեխնիկայի բացակայության և ոռոգելի հողերը ժամանակին չնախապատրաստելու հետևանքով, զգալի տարածություններ ենթարկվեցին էռոզիայի և մեծ քանակությամբ ջրի կորուստ թույլ տրվեց։ Գորիսի շրջանում, որտեղ չորս հազար հեկտար հող ապահովված է ոռոգման ջրով, ոռոգման տեխնիկայով ապահովված է միայն 1.600 հեկտարը, իսկ մնացած տարածությունը՝ թողնված է բախտի քմահա-

ճույքին և հայտնի չէ, թե ինչպես է ոռոգվելու և ինչպիսի տեխնիկա է անհրաժեշտ դրա համար:

Բայց չէ՞ որ գյուղատնտեսության աշխատողները և մանավանդ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստր ընկ. Գ. Բաղրամյանը հետևություններ պետք է անեին Արզնի—Շամիրամի ոռոգիչ սիստեմի առաջին հերթը շահագործման հանձնելու տխուր պատմությունից, երբ նշված վրիպումների հետևանքով անպիտանի դարձավ ավելի քան 8 հազար հեկտար հողերի ոռոգիչ ցանցը, երբ այդ սիստեմի երկրորդ հերթի տերիտորիայում ջրի աղբյուրների սխալ պլանավորման հետևանքով ավելի քան 12,5 հազար հեկտար յուրացված հողեր չեն ջրվում և բերք չեն տալիս: Վերջապես պե՞տք է արդյոք հանրապետության պետպլանը, գյուղատնտեսությամբ զբաղվող մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները հասկանան, որ անհրաժեշտ է իրականացնել միջոցների համամասնական հատկացումներ և զուգակցել ոռոգիչ սիստեմների կառուցման աշխատանքները ժամանակակից ոռոգման տեխնիկայով հագեցած տերիտորիաների գյուղատնտեսական յուրացման հետ: Հակառակ պարագայում, ո՛չ հողը, ո՛չ էլ ջուրը ռացիոնալ չեն օգտագործվի: Ընկերները չպե՞տք է արդյոք պատասխանատվություն կրեն, որ ոռոգիչ ցանցերի անտերության և վատ վիճակի պատճառով հանրապետությունում ամեն տարի չեն ոռոգվում 30—40 հազար հեկտար ցանքսեր և բազմամյա բույսեր:

Չնայած այն բանին, որ ինչպես անցյալ, այնպես էլ ընթացիկ հնգամյակում նշանակալի միջոցներ են ծախսված նոր հողերի յուրացման վրա, այնուամենայնիվ, 1966—1973 թվականներին գյուղատնտեսական ընդհանուր հողատարածությունները նվազել են 17 հազար հեկտարով, այդ թվում վարելահողերինը՝ 6,6 հազար հեկտարով: Հողը ռացիոնալ կերպով չի օգտագործվում: Ցավոք, տակավին կան փաստեր, երբ զանազան կազմակերպությունների համար բերրի հողեր են հատկացվում ոչ գյուղատնտեսական նպատակներով: Այդ նպատակների համար հատկացված 12 հազար հեկտար հողերի ավելի քան 53 տոկոսը եղել են բերքատու հողեր, իսկ մի մասն էլ ոռոգելի: Վատ է արդյունաբերական ձեռնարկությունների կողմից հողերի ռեկուլտիվացումը: Դեռևս լուծված չէ 30 հազար հեկտար աղուտների և մոտավորապես նույնքան ճահճակալած ու գերխոնավ հողերի յուրացման կարևոր խնդիրը, չնայած, որ այդ նպատակով աշխատանքներ են տարվում երկու տասնյակ տարի:

Մի քանի դիտողություններ հանրապետության գյուղատնտեսական գիտահետազոտական հաստատությունների աշխատանքի վերաբերյալ: Գործը մեղանում առայժմ այնպես է կազմակերպված, որ գյուղատնտեսական արտադրության պրակտիկան և գիտահետազոտական աշխատանքները կարծես առաջ են գնում միմյանցից անկախ, չզուգակցվելով իրար:

Գիտական հետազոտությունները չեն հասցվել պետական բարձր մակարդակի: Դա վերաբերում է ինչպես ֆունդամենտալ, այնպես էլ կիրառական գիտությունների բնագավառին: Գյուղատնտեսական արտադրության հրատապ պահանջմունքները, հատկապես նրա մերձավոր հեռանկարի իմաստով, գիտության կողմից վատ են բավարարվում:

Իսկ այժմ մի քանի հետևություններ անենք:

Հանրապետության գյուղատնտեսության մասին ընդհանուր առումով ասվածից երևում է, որ մենք պետք է առաջիկայում ժողովրդատնտեսական այդ կարևորագույն ճյուղին նվիրենք ամենասևեռուն ուշադրությունը: Շրջանային կուսակցական, սովետական մարմինները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պարտավոր են ժամանակին միջոցներ ձեռնարկել արտադրության ներքին ռեզերվները և հնարավորությունները ռացիոնալ օգտագործելու, կուսակցական ու պետական կարգապահությունն ամրապնդելու, ղեկավար կադրերի, մասնագետների պատասխանատվությունը և նրանց նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու նպատակով:

Կոլտնտեսային-սովխոզային արտադրության զարգացման գործում կարևոր անելիքներ ունեն կուսակցության գյուղական շրջկոմները՝ որպես գյուղում կուսակցության քաղաքականությունն իրականացնողներ: Գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի ապահովման, աշխատավորների դաստիարակության նպատակով ծավալվող նրանց կազմակերպական ու քաղաքական գործունեությունը դժվար է գերագնահատել:



Սակայն կուսակցության որոշ շրջկոմներ և, առաջին հերթին՝ առաջին քարտուղարներ վատ են կատարում իրենց պարտականությունները, նախաձեռնություն ու հաստատակամություն չեն ցուցաբերում:

Կրասնոսելսկի շրջկոմի նախկին առաջին քարտուղարին բազմիցս քննադատել էին թույլ աշխատանքի համար, մատնանշել նրա թերությունները: Բայց ընկ. Փաշինյանը եզրակացություններ չարեց: Շրջանում նվազում էր անասնաբուծական մթերքների արտադրությունը, ձախողվեցին ձմռանը նախապատրաստվելու աշխատանքները: Կենտկոմի բյուրոն հարկադրված եղավ ընկ. Փաշինյանին ազատել զբաղեցրած պոստից և ամրապնդել շրջկոմի ղեկավարությունը:

Երկար ժամանակ հանրապետությունում գյուղատնտեսության զարգացման կարևոր հարցերը քննարկվել և լուծվել են անջատ-անջատ, ոչ-կոմպլեքսային կարգով:

Հանդես գալով խոպանի յուրացման 20-ամյակի առթիվ Ալմա-Աթայում կայացած հանդիսավոր նիստում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ գյուղատնտեսությունը ոտք է դնում ինդուստրիալ հիմքի վրա: Արտադրողական ուժերի մեջ այդ որակական տեղաշարժը, իր հերթին, պահանջում է կատարելագործել արտադրական հարաբերությունները, ուժեղացնել հանրայնացման, աշխատանքի բաժանման պրոցեսները: Ի՞նչ է նշանակում դա: Արտադրության բազմաճյուղ, մանրատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգվել են անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերազինման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը: Ուստի արտադրության հետագա մասնագիտացումն ու համակենտրոնացումը, միջտնտեսական կոոպերացիայի խորացումն այժմ դառնում են երկրի գյուղատնտեսության զարգացման հրատապ արմատական հարցերը»:

Կենտկոմը, Մինիստրների սովետը, պետպլանը, կուսակցության շրջկոմները, գյուղատնտեսության մինիստրությունը, գյուղատնտեսության հետ առնչվող մյուս օրգանները պետք է մշակեն աշխատանքների հեռանկարային կոնկրետ ծրագիր, որի իրականացումը հնարավորություն կտա մեր գյուղատնտեսությունը հետևողականորեն, քայլ առ քայլ բարձրացնել որակական նոր մակարդակի:

Էկոնոմիկայի զարգացման գործում եղած լուրջ թերությունների վերացման խնդիրը, մեր ամբողջ տնտեսական մեխանիզմի անխափան աշխատանքը հրամայաբար պահանջում են արմատապես բարելավել ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարությունը, կատարելագործել նրա կառավարման սիստեմը և խիստ բարձրացնել կատարողական կարգապահությունը մեր գործունեության բոլոր օղակներում:

Կուսակցական օրգանները՝ սկսած Կենտկոմից մինչև կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարելավեն իրենց գործունեության ոճն ու մեթոդները, առավել բարձրացնեն կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակը, այն ի սպաս դնելով հանրապետության առջև կանգնած տնտեսական խնդիրների լուծման համար աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը: Կուսակցական կոմիտեները պետք է ավելի մոտիկ կանգնեն արտադրությանը, գործիմացությամբ խորամուխ լինեն յուրաքանչյուր ձեռնարկության, կազմակերպության ու տնտեսության գործերի վիճակին, բարձրացնեն բոլոր կոմունիստների, հատկապես ղեկավարների պատասխանատվությունը տնտեսություններում տիրող կացության համար:

Հարկ է նշել, որ կուսակցության մի շարք շրջանային ու քաղաքային կոմիտեներ դեռևս արմատապես չեն վերակառուցել իրենց աշխատանքը ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջների ոգով, աշխատանքային կոլեկտիվների ջանքերը բավականաչափ արդյունավետ կերպով չեն մոբիլիզացնում տնտեսու-

թյունն ինտենսիվ եղանակով վարելու համար, չեն ապահովում պատշաճ ներգործություն արտադրական պրոցեսի վրա։ Այս առումով բնորոշ է կուսակցության Թումանյանի շրջկոմի աշխատանքի ոճը։ Այստեղ կանոնավոր կերպով անցկացվում են պլենումներ, ակտիվի ժողովներ, ամեն տեսակ խորհրդակցություններ և նիստեր, ընդունվում են ծավալուն որոշումներ։ Սակայն բուն էության, կուսակցության շրջկոմը չի ապահովում շրջանի աշխատավորների քաղաքական ղեկավարի իր դերը, գաղափարապես ու կազմակերպորեն չի սատարում կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թվականի ապրիլյան պլենումում շրջկոմը քննադատվեց տնտեսությունն անբավարար ղեկավարելու, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի աշխատանքում եղած լուրջ թերությունների համար։ Ի՞նչ հետևություններ արվեցին, ինչպե՞ս վերակառուցեց իր աշխատանքը կուսակցության շրջկոմը։ Տեսեք, թե ինչպես։ Վերջին երկու տարում ձեռնարկությունը ոչ մի անգամ լիովին չի կատարել սահմանված առաջադրանքները, վերակառուցման համար բաց թողնված միջոցներն իրացվել են 50 տոկոսից փոքր-ինչ ավելի։ Պակաս անմխիթարական չէ պատկերը գյուղատնտեսության մեջ։ Գյուղատնտեսական հիմնական մթերքների մթերման պլանը կատարվել է կիսով չափ։ Վերջին երեք տարում կրկնապատկվել է վնասով աշխատող սովխոզների թիվը։

Շրջկոմի քարտուղար ընկ. Բ. Գյոզալյանը փոխանակ ինքնաքննադատաբար վերլուծելու աշխատանքում գոյություն ունեցող թերություններն ու վրիպումները, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկելու դրությունը շտկելու համար, փորձում է ամեն ինչ բացատրել «օբյեկտիվ» պատճառներով, շարունակում է աշխատել հին մեթոդներով։ Զախողումների և սխալների պատճառների «օբյեկտիվացման» նույն վնասակար մտայնությամբ են վարակված նաև կուսակցության շրջանային ու քաղաքային մի քանի ուրիշ կոմիտեների ղեկավարներ։

Տնտեսական շինարարության մեջ եղած լուրջ թերություններն արագորեն վերացնելու համար հրամայական անհրաժեշտություն է խիստ բարձրացնել կատարողական կարգապահությունը ղեկավարման բոլոր օղակներում։

Ընդունված որոշումների ժամանակին և լրիվ կատարումը, այդ գործում յուրաքանչյուր կատարողի դերի և նրա կոնկրետ անձնական պատասխանատվության աստիճանի ճիշտ սահմանումը պետք է լինի մեր աշխատանքի էական գրավականը։ Հենց դրա բացակայությունն է հանգեցնում այն բանին, որ դիրեկտիվ մարմինների շատ որոշումներ, ինչպես նաև իրենց իսկ որոշումները, կուսակցական կոմիտեների, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարների կողմից լրիվ չեն կատարվում։

Օրերս հանրապետությունը մեծ դժվարություններ կրեց գազամատակարարման գործում։ Եվ դա այն պատճառով, որ գազիֆիկացման գլխավոր վարչության և «Հայտրանսգազ» վարչության ղեկավարները ժամանակին չեն կատարել տեղական գազապահեստարաններ կառուցելու և գործարկելու վերաբերյալ հանրապետության կառավարության որոշումը։

Մի շարք կուսակցական կոմիտեներ և տնտեսական օրգաններ հնարավոր են համարում ժամանակին և լրիվ չկատարել ՀԿԿ Կենտկոմի որոշումները, դրանց իրականացման ուղղությամբ կազմակերպչական աշխատանքը փոխարինում են ձևական քննարկմամբ և խուսագրությամբ։

Հարկավոր է դրան վերջ տալ։ Կուսակցության Կենտկոմը, Մինիստրների սովետը պետք է իրենց ամենակարևոր գործը համարեն որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումը և խստագույնս պատժեն նրանց, ովքեր չեն ապահովում ընդունված որոշումների լրիվ կատարումը։ Հարկավոր է, սակայն, որ այդ որոշումները լինեն համակողմանի մշակված և գիտականորեն հիմնավորված։

Ժողովրդական տնտեսության ղեկավարման կենտրոնական օղակը պլանավորումն է։ Սակայն պետպլանը չի կարողացել հասնել այն բանին, որ հանրապետության էկոնոմիկան զարգանա ավելի կոմպլեքսային և ավելի համա-



մասնորեն։ Բավականաչափ ուշադրություն չի նվիրվում պլանավորման գիտական մակարդակի բարձրացմանը, պլանների համակշռվածության և կոմպլեքսայնության ապահովմանը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների, ժողովրդական տնտեսության բոլոր հնարավորությունների և ռեզերվների առավել լայն ու արդյունավետ օգտագործմանը։

Հիշյալ թերությունների մի մասը առկա է ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի պլանների նախագծում։

Պետպլանը պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկի՝ ապահովելու տասներորդ հնգամյակի պլանի ժամանակին ու բարձրորակ կազմումը, վերացնելով այն բոլոր թերությունները, որոնց մասին ասվեց վերևում։ Հանրապետության տերիտորիայում նոր արտադրություններ տեղաբաշխելիս անհրաժեշտ է հաշվի առնել տնտեսական, սոցիալական, դեմոգրաֆիական և էկոլոգիական բնույթի բոլոր գործոնները և դրանց հեռանկարային հետևանքները։ Այդ գործում անհրաժեշտ է բացառել վոլյունտարիստական և սուբյեկտիվիստական մոտեցումը։ Նման կարգի սխալներ ուղղելը այլևս ուշ է լինում, և նրանք հղի են լուրջ հետևանքներով։

Հանգամանալի և ինքնաքննադատական վերլուծությունը ցույց է տալիս, որ էկոնոմիկայի զարգացման գործում եղած վրիպումները պայմանավորված են բոլոր մակարդակներում կառավարման ոչ բավականաչափ կատարյալ մեթոդներով ու ոճով։

Մենք չենք ապահովել մինիստրությունների և գերատեսչությունների դերի պատշաճ բարձրացումը և նրանց ինքնուրույնության ընդլայնումը։ Նրանք պետք է վերակառուցեն իրենց աշխատանքը նոր խնդիրների լույսի տակ, օպերատիվություն ու ճկունություն ցուցաբերեն ճյուղերի էկոնոմիկայի ղեկավարման գործում, աշխատեն ձեռներեցությամբ և եռանդով, արդյունավետ օգնություն ցույց տան ենթակա ձեռնարկություններին։

Ընկերնե՛ր։ Մենք թևակոխել ենք հնգամյակի եզրափակիչ տարին։ Ընթացիկ տարվա ժողովրդատնտեսական պլանը վերջնականապես ձևավորում է իններորդ հնգամյակի արդյունքները։ Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման աշխատանքի պլանային առաջադրանքներն ու ցուցանիշները ձեզ բոլորիդ հայտնի են։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումը խնդիր դրեց՝ առաջնորդվելով կուսակցության տնտեսական քաղաքականության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով և ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում այդ հարցի վերաբերյալ առաջադրված սկզբունքային դրույթներով, մշակել և իրագործել ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի կատարման կոնկրետ միջոցառումներ։ Ինչպես նշում է կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը, 1975 թվականի պլանային առաջադրանքները, չնայած դրանց լարված լինելուն, պետք է դիտել որպես նվազագույն։ Կարելի է և հարկավոր է ակտիվ պայքարել դրանց գերակատարման համար։ Դրա համար մեզ մոտ առկա են անհրաժեշտ բոլոր նախադրյալները։

Մենք պարտավոր ենք ի հայտ բերել և օգտագործել բոլոր ռեզերվները, հասնել այն բանին, որ չլինեն պլանը չկատարող ձեռնարկություններ, բարձրացնել պլանային կարգապահությունը, տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը՝ աշխատանքի բոլոր ասպարեզներում։ Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, բոլոր աշխատանքային կոլեկտիվները պետք է առանձնահատուկ լարումով ծավալեն սոցիալիստական մրցությունը։ Այդ գործում մեծ նշանակություն պետք է տալ մրցության այնպիսի արդյունավետ ձևի, ինչպիսին է հանդիպական լարված պլանների մշակումն ու ընդունումը։ Մինիստրություններն ու գերատեսչությունները, բոլոր տնտեսական ղեկավարները պետք է բարձր արտադրողական աշխատանքի պայմաններ ապահովեն աշխատանքային կոլեկտիվների համար, յուրաքանչյուր բանվորի համար։

Հայաստանի կոմկուսի շրջանային և քաղաքային կոմիտեները, բոլոր ձեռնարկությունների և հիմնարկների կուսակցական կազմակերպությունները

պետք է բառացիորեն ամենօրյա վերահսկողության տակ առնեն պլանների և պարտավորությունների կատարման ընթացքը, փութաջանորեն աշխատեն դրանց կատարման կազմակերպական և գաղափարական ապահովման ուղղությամբ: Հարկավոր է մասսայական-քաղաքական ամբողջ աշխատանքն ի սպաս դնել կոլեկտիվների արտադրական ակտիվության վերելքի ամրապնդմանն ու զարգացմանը, սոցիալիստական մրցությունն ուղղել սոցիալ-տնտեսական գլխավոր նպատակների իրագործմանը: Ոչ թե պարզապես ավելի շատ անել, այլ ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումը, անել ավելի լավ և ավելի խնայողաբար՝ ահա թե ինչը պետք է դառնա մեր ամենօրյա գործունեության նպատակը:

Դեկտեմբերյան պլենումը նշեց, որ կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական օրգանների, արհմիությունների և կոմերիտմիության պարտքն է իրացնել մեր տնտեսական ու քաղաքական հնարավորությունները, ապահովել հնգամյակի հաջող ավարտումը: Այսպիսին է եզրափակիչ տարվա քաղաքական և տնտեսական կարևորագույն խնդիրը: Մենք պետք է այնպես անենք, որ հնգամյա պլանի կատարման ու գերակատարման պայքարը դառնա յուրաքանչյուր կոմունիստի, աշխատավորի ներքին, անձնական խոր պահանջմունքը: (Ծափահարություններ):

## ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼ ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԿՈԴԵՔՍԸ

Ընկերնե՛ր: Հայաստանի կոմկուսը, նրա կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարում կոմունիստական դաստիարակության, աշխատավորների մեջ մարքս-լենինյան աշխարհայացքի, ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության խոր զգացման, գաղափարաքաղաքական վսեմ համոզմունքների ձևավորման ուղղությամբ: Հանրապետության բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, աշխատավոր մտավորականությունը կուռ համախմբված են հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները կենսագործելու, մեր հայրենիքի ժողովուրդների բարեկամությունն էլ ավելի ամրապնդելու, մեր պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հզորությունն առավել մեծացնելու իրենց ձգտումով:

Գաղափարական և դաստիարակչական աշխատանքի արդյունավետության չափանիշը մենք, իրավամբ, համարում ենք աշխատավորների աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվությունը: Ուստի և մեր գործունեության մեջ շեշտը դնում ենք գաղափարա-դաստիարակչական ամբողջ աշխատանքի, մասսայական-քաղաքական ներգործության բոլոր միջոցների մոբիլիզացնող ֆունկցիայի վրա:

Մեր լենինյան կուսակցությունը կյանքի առաջադրած խնդիրներին համապատասխան մշտապես ուղղություն է տալիս գաղափարական և դաստիարակչական պրոցեսին: Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության ու դաստիարակության աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ընդգծված է, որ անհրաժեշտ է դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցներով աշխատավորներին ներգրավել արտադրության արդյունավետության բարձրացման և հասարակական գործերի կառավարման գիտակցական գործունեության ոլորտը:

Տնտեսական հաջողություններին ինչպես հարկն է նպաստելու համար գաղափարական և դաստիարակչական աշխատանքը պետք է օգնի յուրաքանչյուրին խորապես ըմբռնելու կուսակցության տնտեսական քաղաքականության նպատակներն ու խնդիրները, նրա կենսագործման ուղիներն ու մեթոդները, արթնացնի մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, լայնորեն պրոպագանդի և տարածի նրանց փորձը, ովքեր առջևից են ընթանում և ցույց տալիս աշխատանքի լավագույն օրինակներ:

Կյանքը հրամայաբար թելադրում է՝ մեր ամբողջ գաղափարական և դաստիարակչական աշխատանքը կառուցել հարցի լուծմանը կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու գիտական հիմքի վրա: Հենց այդ կոմպլեքսային մոտեցումը, որի վրա ուշադրությունը կենտրոնացնում է ՍՄԿԿ Կենտկոմը Բելոռուսիայի կուսկազմակերպության մասին իր որոշման մեջ, բացակայում է մեր պրակտիկայում:

Կուսակցական և կոմերիտական լուսավորության ցանցը, բանավոր և տպագիր պրոպագանդան, աշխատավորական կոլեկտիվներում, երիտասարդության շրջանում կատարվող դաստիարակչական աշխատանքը, մի խոսքով, կուսակցական կազմակերպությունների գաղափարական և դաստիարակչական ամբողջ գործունեությունը կառուցվում է որպես ցաք ու ցրիվ, երբեմն իրար հետ չշաղկապված տեղական միջոցառումների միագումար: Մինչդեռ անհրաժեշտ է, որ, ելնելով կյանքի կոնկրետ պահանջներից, ամբողջ աշխատանքը ուղղված լինի մի նպատակի:

Մեր ամբողջ քաղաքական, դաստիարակչական աշխատանքի արմատական բարելավման գործում մեծ է մասսայական ինֆորմացիայի միջոցների՝ թերթերի, հանդեսների, ռադիոյի, հեռուստատեսության դերը: Պետք է ասել, որ կուսակցական կազմակերպության մեջ տիրող ընդհանուր իրադրությունը բացասաբար էր անդրադառնում այդ օրգանների աշխատանքների վրա: Մեր հանրապետական «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերի շատ հրապարակումներ չեն բավարարում այսօրվա պահանջներին: Պատշաճ հետաքրքրությամբ չի պրոպագանդվում՝ կյանքի բոլոր բնագավառներում կատարվող աշխատանքի դրական փորձը, մեր թերթերի էջերից անհետացել են ֆելիետոնի ժանրը, օրվա հրատապ թեմաներով հրապարակախոսական սուր ելույթները: Մենք դեռևս թույլ ենք օգտագործում հեռուստատեսության հսկայական ուժը: Հեռուստատեսային էկրանը երբեմն գրավում են անբովանդակ ծրագրերն ու հաղորդումները:

Շատ թերություններ կան մեր հրատարակչությունների գործունեության մեջ, որոնց ղեկավարները պետք է առաջին հերթին ուշադրություն դարձնեն թողարկվող արտադրանքի գաղափարական բովանդակությունն ու որակը խիստ բարելավելու անհրաժեշտության վրա:

Կուսակցության մի շարք քաղկոմների և շրջկոմների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ գաղափարական աշխատանքի հարցերը մղված են ետին պլան, քննարկվող հարցերը վատ են մշակվում, չեն բացահայտվում երևույթների պատճառները, անտեսվում են հանգուցային խնդիրները: Այդ վիճակն օբյեկտիվորեն առաջ է բերում գաղափարական և դաստիարակչական գործունեության խորքային հարցերի թերագնահատում: Հենց դրանով պետք է բացատրել ձևամոլությունը միջոցառումներ անցկացնելիս կամ հարցի լուծումը՝ արդեն ձանձրացրած «կատարված է» նշման համար:

Վերջին տարիների ընթացքում գրականության և արվեստի բնագավառում թույլ տրված առանձին սխալներ միշտ չէ, որ ստացել են սկզբունքային, կուսակցական հստակ գնահատական: Կուսակցությունը միշտ հանդես է եկել մանրախնդիր խնամակալության և վարչարարության դեմ՝ ստեղծագործության բնագավառում: Գաղափարի գեղարվեստական մարմնավորման ձևերը, ստեղծագործական ոճերը կարող են և պետք է բազմազան լինեն: Հենց այդ բազմազանության մեջ էլ բացահայտվում է յուրաքանչյուր արվեստագետի անհատական տաղանդը: Բայց ելակետը և սկզբունքային դիրքորոշումը պետք է մեկը լինի: Այդ դիրքորոշումը մարմնավորվում է սոցիալիստական ռեալիզմի մեթոդի մեջ, խարսխվում մեր գրականության և արվեստի կուսակցականության, դասակարգայնության և ժողովրդայնության անսասան սկզբունքների վրա:

Հասարակական գիտությունների բնագավառի գիտահետազոտական ինստիտուտները և հանրապետության բուհերի հասարակագիտական առարկաների ամբիոնները դեռևս անբավարար են մշակում մեր երկրում սոցիալիստական հարաբերությունների զարգացման և հանրապետության սոցիալական զարգացման հրատապ պրոբլեմները, զարգացած սոցիալիզմի հասարակարգի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման արդի փուլի տեսական հարցերը, սոցիալիստական ազգերի զարգացման պրոբլեմները, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության, կազմավորման

հարցերը, սովետական սոցիալիստական ապրելակերպի տեսական պրոբլեմները: Առանձին գիտնականների աշխատություններում միշտ չէ, որ ապահովվում է սկզբունքային մոտեցումը պատմական անցյալի այս կամ այն երևույթի գնահատմանը գիտական, կուսակցական-դասակարգային դիրքերից, որոշ դեպքերում կատարվում են մեթոդաբանական սխալներ, տուրք է տրվում կեղծգիտական օբյեկտիվիզմին:

Անհրաժեշտ է, որ կուսակցական և կոմերիտական կոմիտեները, մամուլի օրգանները և մասսայական ինֆորմացիայի օրգանները, հասարակական գիտությունների աշխատողները և ստեղծագործական միությունների անդամները, հանրապետության բոլոր գաղափարական աշխատողներն առավել մեծ սկզբունքայնություն ու հաստատակամություն ցուցաբերեն գաղափարական անտարբերության և քաղաքական կարճատեսության դրսևորումների, քաղաքական զգոնության բթացման փաստերի դեմ մղվող պայքարում, հարձակողականություն, հետևողականություն, խորություն ապահովեն բուրժուական գաղափարախոսության մերկացման ասպարեզում:

Մենք պետք է միշտ հիշենք, որ հասարակական կյանքի երևույթների նկատմամբ ապադասակարգային մոտեցումը սողանցք է թողնում գաղափարական խորթ հայացքների ներթափանցման համար, մանավանդ ներկայումս, երբ ավելի չարամիտ են դառնում հանրապետությանը հասցեագրված արտասահմանյան քայքայիչ ռադիոհաղորդումները, երբ ներթափանցման համար ճեղք է որոնում դաշնակցական հակասովետական պրոպագանդան: Դրանց նպատակը մեկն է՝ բորբոքել նացիոնալիստական կրքեր, դրանք ուղղելով ընդդեմ սովետական պետության, ընդդեմ ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության:

Ընթացիկ տարում սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը արժանավայել կերպով կնշի ֆաշիզմի դեմ տարած մեծ հաղթանակի երեսնամյակը: Սովետական մարդկանց այդ մեծ տոնի նախապատրաստությունն անհրաժեշտ է ծավալել լայնորեն, ձգտելով միջոցառումների մեջ ներգրավել ամբողջ բնակչությանը: Այդ աշխատանքում մենք պետք է հետապնդենք մի հիմնական նպատակ՝ ուժեղացնել հանրապետության աշխատավորների և աճող սերնդի ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակությունը, աշխատավորների ուժերը մոբիլիզացնել հնգամյակի եզրափակիչ տարվա պլանները կատարելու և գերակատարելու համար:

ՍՄԿԿ XXIV համագումարը շեշտեց ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացման՝ որպես կուսակցության կենտրոնական խնդիրներից մեկի, կարևորությունը:

Այդ խնդիրը կուսակցությանն առաջադրում է ինքը՝ սովետական սոցիալիստական իրականությունը՝ որպես կենսական ծրագիր: Այն ընդգրկում է կյանքի բոլոր կողմերը, ուստի և բոլոր կուսակցական կոմիտեները պետք է մշակեն աշխատանքի կոմպլեքսային սիստեմ, որի մեջ ընդգրկվեն բոլոր ոլորտները՝ էկոնոմիկայից մինչև գաղափարախոսությունն ու կենցաղը:

Մենք պետք է ակտիվ, հարձակողական պայքար մղենք սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հակոտնյաների այնպիսի դրսևորումների դեմ, որպիսիք են ազգային սահմանափակությունը, ազգային բացառիկությունը և պարծենկոտությունը:

Իր ամբողջ բազմադարյան պատմության հարուստ փորձով, իր անցյալով և իր սոցիալիստական ներկայով իմաստնացած մեր ժողովրդի համար օրգանապես նողկալի և խորթ են այդ բացասական գծերը: Նա դրանք մերժում է իր ամբողջ էությամբ:

Անցյալում և ներկայումս մեր գրականության ու մշակույթի լավագույն ներկայացուցիչները՝ Հովհ. Թումանյանը, Ավ. Իսահակյանը, Վ. Տերյանը և ուրիշներ, կրքոտ կերպով մերկացրել են սնապարծության, ազգային բացառիկության և սահմանափակության մտայնություն ունեցող մարդկանց: Նման կեղծ հայրենասերներին խորին զայրույթով և կրքով էր մերկացնում Պարույր Սևակը: Նա խիստ դատապարտում էր բոլոր նրանց, ովքեր այսօր էլ դատում են մոտավորապես նույն ձևով. «Մենք որ կայինք, այսինչ ժողովուրդը դեռ միս աղել չգիտեր...», «Մենք որ Պլատոն էինք թարգմանում՝ նրանք ապ-



րում էին ծառերի վրա...», «Իսկ հապա մեր Այսինչը, մեր Այնինչը, մեր Էսը, մեր Էնը...»:

«Ահռելին այն է, որ այսպես դատողների մեծամասնությունը,— շարունակում էր Պ. Սևակը,— բնավ էլ չգիտի ոչ մեր Այսինչը, ոչ Այնինչը, ոչ Էսը, ոչ Էնը. նա պարզապես կրկնում է անուններ: Իսկ ամոթալին էլ այն է, որ նա ոչ միայն չգիտի, այլ նաև եթե նրան ասես, թե մեր մոտավոր ու հեռավոր հարևաններն էլ ունեցել են այդ ամենը, կամ այդ ամենից շատ ավելի, չի հավատա...: Հայրենասիրության այս տեսակը մի փափուկ բարձ է, որ լցված է ոչ թե աղվամազով, այլ քնաբեր հաշիշով...»:

Մենք պետք է բոլոր միջոցներով մեր հասարակական կյանքից ու կենցաղից արմատախիլ անենք քաղաքական ու գաղափարական հետամնացության այդ բեռը, սահմանափակ մտայնության այդ հաշիշը:

Հայ ժողովուրդը բոլոր ժողովուրդների նկատմամբ խոր հարգանքի վեհ ու գեղեցիկ զգացմունքներ է տածում: Նա բարեկամության անխզելի թելերով կապված է մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ: Նա սիրո և հարգանքի հատուկ զգացումներ է տածում ռուս մեծ ժողովրդի հանդեպ, որը բացառիկ դեր է խաղացել նրա ճակատագրում՝ պատմության վճռական քառուղիներում: **(Ծափահարություններ)**:

Հայաստանի սոցիալ-տնտեսական և կուլտուրական կյանքի աննախընթաց ծաղկումը ՍՄԿԿ-ի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության արդյունքն է, ՍՍՀՄ ժողովուրդների և առաջին հերթին ռուս ժողովրդի ինտերնացիոնալ ու եղբայրական անշահախնդիր օգնության պտուղը: **(Ծափահարություններ)**:

Դեռևս սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինն ասում էր, որ անհրաժեշտ է հասնել մեր երկրում ազգերի ոչ միայն քաղաքական, այլև փաստական հավասարության: Դա նշանակում էր նախկին ծայրամասերի էկոնոմիկան հասցնել կենտրոնի մակարդակին: Այս, հիրավի, ինտերնացիոնալ մեծ խնդիրը նա պատգամեց ռուս ժողովրդին: Եվ ռուս ժողովուրդը պատվով կատարեց առաջնորդի պատվիրանը: Այսպես, 1926 թվականին ծայրամասերի նկատմամբ կենտրոնի էկոնոմիկայի փաստական հարաբերակցությունը կազմում էր 36:1: Ներկայումս տնտեսական այդ անհավասարությունը փաստորեն վերացվել է: Այսպիսին է իրերի իսկական դրությունը: Հենց դրա համար էլ Հայաստանի աշխատավորներն իրենց ակնառու նվաճումները համարում են իրենց և Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր, համատեղ աշխատանքի արդյունքը: Հենց դրա մեջ էլ արտացոլվում է սովետական մարդու համազգային հպարտությունը:

Այսօր Կենտկոմի մեր պլենումում մեկ անգամ ևս պետք է ընդգծել, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը, ամբողջ հայ ժողովուրդը, Հայաստանի բոլոր աշխատավորները շնորհակալությամբ և հսկայական պատասխանատվության զգացումով ընդունեցին այն բարձր գնահատականը, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը տվեց մեր ժողովրդի սոցիալիստական ինտերնացիոնալիզմին և սովետական հայրենասիրությանը: Մենք աչքի լույսի պես կպահպանենք և էլ ավելի կզարգացնենք սովետական սոցիալիստական հասարակարգի և կոմունիստական կուսակցության գործունեության այդ մեծ նվաճումը: **(Ծափահարություններ)**:

* * *

Անկարելի է մեր բոլոր գործերի մեջ արմատական բեկման հասնել, եթե մենք չուժեղացնենք պայքարը կոմունիստական դաստիարակության համար, նոր հասարակարգ կառուցողի կերպարի և նրա բնորոշ գծերի համար, որոնք բխում են կոմունիստական հասարակարգի մարդու բարոյական կոդեքսից:

Կուսակցությունը միշտ էլ ուղղություն է տվել սոցիալիստական ապրելակերպի ձևավորման պրոցեսին, նա դաստիարակել ու կազմակերպել է մասսաներին՝ նոր ձևով ապրելու և աշխատելու ձգտումը: Սոցիալիստական ապրելակերպը ամուր հաստատվել է մեր երկրում:

Անհատապաշտությունը, եսասիրությունը, օտարացումը, վաղվա օրվա

նկատմամբ անվստահությանը սովետական ապրելակերպը հակադրում է եղբայրական համագործակցության և ընկերասիրության ոգին, մարդկանց հարկավոր լինելու, հասարակության զարգացման համար անձնական պատասխանատվություն կրելու զգացումը, այն բանի զգացումը, որ քո աշխատանքը միաձուլվում է հանրապետության, մեր ամբողջ երկրի ընդհանուր աշխատանքին: Այստեղից էլ՝ սովետական մարդկանց գաղափարական ու բարոյական վեհ մղումները, սեփական բարձր արժանապատվության և քաղաքացիական պարտականությունների գիտակցումը:

Սակայն մենք ոչ մի կերպ չպետք է մոռանանք, որ երբ անբավարար է գաղափարական ու դաստիարակչական աշխատանքը, բացակայում է անհրաժեշտ պահանջկոտությունը սոցիալիստական համակեցության նորմերի պահպանման նկատմամբ, ապա երբեմն կարող են աշխուժանալ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են գռփողական հակումները, անձնական, քաղքենիական շահերի նեղ ոլորտի մեջ պարփակվելու ձգտումը:

Դժբախտաբար, մեր հանրապետությունում դեռևս կան առանձին մարդիկ, ովքեր ձգտում են հասարակությունից պոկել ավելի շատ և նրան տալ ավելի քիչ, իրենց գոյության իմաստը տեսնում են այն բանում, որ ապրեն ուրիշների հաշվին, սպեկուլյացիայով զբաղվեն, խաբեբայություն անեն, հարստանան, ցոփ կյանք վարեն, արհամարհում են մեր հասարակության սոցիալական, քաղաքական, հոգևոր շահերը: Վերջին տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում, ձեռնարկություններում ու կազմակերպություններում տարածում են գտել սոցիալականորեն վտանգավոր այնպիսի երևույթներ, ինչպիսիք են սոցիալիստական սեփականության հափշտակումները, պաշտոնական դիրքի չարաշահումը, կաշառակերությունը, պրոտեկցիոնիզմը, սպեկուլյացիան, գռփողականությունը, խուլիգանությունը և բացասական այլ երևույթներ:

Որո՞նք են մեր հասարակության մեջ սոցիալական հիմք չունեցող այդ երևույթների պատճառները:

Գլխավոր պատճառներից մեկն այն է, որ դեռևս անբավարար է կուսակցական կազմակերպության գաղափարական ու քաղաքական աշխատանքը բարոյական դաստիարակության ասպարեզում, որի մասին ասվեց վերևում: Այդ արատների գոյության մյուս ոչ պակաս կարևոր պատճառներն են կուսակցական և պետական կարգապահության թուլացումը, կադրերի նկատմամբ պահանջկոտության նվազեցումը, հանրապետության էկոնոմիկայում անտնտեսվարության դեմ մղվող թույլ պայքարը, իրենց պաշտոնական դիրքը չարաշահող աշխատողների նկատմամբ անսկզբունքայնություն ու ներողամտություն ցուցաբերելը, ժողովրդական բարիքը հափշտակողների, սոցիալիստական իրավակարգը և սոցիալիստական համակեցության նորմերը խախտողների դեմ հետևողական, անզիջում պայքարի բացակայությունը: Բանն այն է, որ նման երևույթների դեմ մղվող պայքարը թույլ էր և սիստեմատիկ բնույթ չէր կրում: Այդ պայքարի մեջ ներգրավված չէին բոլոր կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորները:

Սոցիալականորեն վտանգավոր երևույթների դեմ անբավարար և թույլ պայքար մղելու վրա մեր ուշադրությունը բազմիցս հրավիրել են ՍՄԿԿ Կենտկոմը, կոմունիստ բանվորները, մտավորականության և ստեղծագործական աշխատողների ներկայացուցիչները, ամբողջ կուսակցական կազմակերպությունները: Բայց հանրապետության որոշ ղեկավարներ ժամանակին չէին արձագանքում դրան, չկարողացան ընկալել այդ երևույթների դեմ ժողովրդի մեջ առաջացած խորին զայրույթը:

1973 թվականի ապրիլին Հայաստանի կոմկուսի Կենտկոմն իր պլենումում քննարկեց իրավիճակը և կոչ արեց ամբողջ ճակատով լայն պայքար մղել բացասական երևույթների դեմ: Պլենումի որոշումը լայն արձագանք գտավ բոլոր կուսակցական կազմակերպություններում: Պայքար կազմակերպելու աշխատանքը տվեց որոշ դրական արդյունքներ: Բայց այստեղ էլ մենք անհրաժեշտ հետևողականություն և սկզբունքայնություն հանդես չբերեցինք: Մենք լոկ միայն պայքարի կոչ արեցինք, բայց ինչպես հարկն է այն չկազմակերպեցինք բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների միջոցով, պայ-



քարի կրակը չկենտրոնացրինք գլխավոր ուղղությունների վրա, այդ գործին մասնակից չդարձրինք բոլոր կոմունիստներին, աշխատավորական լայն զանգվածներին:

Հափշտակումներին ու չարաշահումներին նպաստող պարարտ հողը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, կառույցներում, մատակարարող և ուրիշ կազմակերպություններում սոցիալիստական օրինականության կիրառման թուլացումն է, անտնտեսվարությունը, հաշվառման, հաշվետվության, ինչպես նաև արտադրանքի արտադրության ու բաշխման նկատմամբ վերահսկողության գործի բարձիթողի վիճակը, նրանցում ֆինանսա-տնտեսական պատշաճ կարգ ու կանոնի բացակայությունը: Պայքար չծավալվեց այդ հողի վերացման համար: Միայն դրանով կարելի է բացատրել, որ վերջին տարիներս ապրանքա-նյութական արժեքների բացահայտված պակասորդների, հափշտակումների և փչացումների գումարը հանրապետությունում չի նվազում:

1973—74 թվականներին հանրապետության տարբեր ձեռնարկություններում ու կազմակերպություններում տեղ են գտել սոցիալիստական սեփականության խոշոր հափշտակություններ: Մի քանի ամիս առաջ մերկացվեց ժողովրդական բարիքը հափշտակողների մի հանցավոր խումբ Հայկական ՍՍՀ գյուղական շինարարության մինիստրության մասնագիտացված տրեստում: Այդ խումբն ըստ հետաքննության տվյալների, յուրացրել է մոտ 50 հազար ռուբլի: Թալինի շրջանի նավթաբազայում երկար ժամանակ գործում էր հափշտակիչների մի խումբ՝ դիրեկտոր Մ. Սարուխանյանի գլխավորությամբ: Կատարելով տասնյակ հազարավոր ռուբլիների հափշտակություն, հանցագործները, ըստ երևույթին, համոզվելով, որ այլևս հնարավոր չէ թաքցնել հանցագործության հետքերը, հարմար գտան խաղ սարքել, առաջացնելով նավթամթերքների չպատճառաբանված հոսք: Իրենց հանցավոր պլանն իրականացնելու նպատակով նրանք, աշխատանքային օրն ավարտելուց հետո, բաց էին թողել նավթաբաքերի ծորակները, որի հետևանքով ամբարներից դուրս էր հոսել 500 տոննա բենզին: Միայն այդ բանդիտական գործողությունը պետությանը հասցրեց ավելի քան 48 հազար ռուբլու վնաս: Եվ թեպետ նավթաբազայի դիրեկտորը թույլ էր տվել նաև մի ամբողջ շարք ուրիշ կոպիտ խախտումներ, գլխավոր վարչության ղեկավարությունը, ըստ երևույթին, ոչ մի կերպ չէր ուզում հրաժեշտ տալ «անփոխարինելի» աշխատողին: Միայն հարյուրավոր տոննա բենզինի կորստյան կապակցությամբ առաջացած սկանդալը և վարչական մարմինների միջամտությունը լուծեցին հարցը:

Վերջերս հանրապետության դատախազությունը ստուգեց սոցիալիստական սեփականության պահպանման վիճակը թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում: Ի՞նչ ցույց տվեց ստուգումը: Վերջին երեք տարում մինիստրությանը ենթակա ձեռնարկություններում բացահայտվել են հափշտակությունների բազմաթիվ դեպքեր: Միայն 1974 թվականին Երևանի «Կրասնի շվեյնիկ» ֆաբրիկայում բացահայտվել է մոտավորապես 260 հազար ռուբլու, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 120 հազար ռուբլու, Երևանի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 37 հազար ռուբլու հափշտակություն:

Ահա թե ինչի է հանգեցնում սոցիալիստական ապրելակերպին անհարիր բարքերի ու արատների դեմ բոլոր ուղղություններով պայքարի բացակայությունը: Հարց է ծագում. ո՞ւր են նայում մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները: Իսկ որտե՞ղ է համապատասխան շրջկոմների և քաղկոմների կուսակցական վերահսկողությունը: Ինչո՞ւ սկզբնական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական շատ կազմակերպություններ, ժողովրդական վերահսկողության խմբեր չեն արձագանքում վատնումների և հափշտակումների, այդ թվում նաև մանր հափշտակումների փաստերին, այդ երևույթներին չեն տալիս քաղաքական պատշաճ գնահատական, չեն ստեղծում անհանդուրժողության մթնոլորտ նրանց շուրջը, ովքեր ձեռք են մեկնում սոցիալիստական սեփականությանը:

Կենտկոմը և Մինիստրների սովետը պետք է կուսակցական և վարչական խստագույն պատասխանատվության ենթարկեն այն բոլոր ղեկավարներին, ովքեր սպառիչ միջոցներ ձեռք չեն առնում տնտեսության մեջ հաստատ հաշվա-

ռում և վերահսկողություն հաստատելու ուղղությամբ, ովքեր լիբերալիզմ, ներողամտություն և անսկզբունքայնություն են ցուցաբերում սոցիալիստական սեփականության պահպանման համար մղվող պայքարում։

Կենտկոմը խիստ պատասխան կպահանջի նրանցից, ովքեր բոլոր միջոցները չեն ձեռնարկում ժողովրդական սեփականության նկատմամբ անտնտեսվարությունն ու անպատասխանատվությունը խափանելու համար։

Այսօր սուր քննադատության են արժանի նաև կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները։ Չէ՞ որ անտնտեսվարության դեմ և սոցիալիստական սեփականության հոգատար պահպանման համար պայքարը միմիայն տնտեսավարների գործը չէ։ Դա կուսակցական և քաղաքական կարևոր գործ է։ Շրջկոմներն ու քաղկոմները պարտավոր են սկզբնական կուսակցական կազմակերպությունների միջոցով հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ պայքարի ելնի ընդդեմ ժողովրդական բարիքը հափշտակողների։

Դրա հետ միասին մենք պետք է ամրապնդենք այն ծառայությունները, որոնք կոչված են պետական վերահսկողություն իրականացնելու ժողովրդական տնտեսության տնտեսական և արտադրական օղակների ֆինանսա-տնտեսական գործունեության նկատմամբ։ Խոսքը վերաբերում է վերահսկիչ-վերստուգիչ ապարատի աշխատանքի արմատական բարելավմանը։ Քիչ չեն այն փաստերը, երբ այդ ապարատի աշխատողները ժամանակին չեն բացահայտել պակասորդներն ու հափշտակությունները՝ նույնիսկ դրանց առկայության վերաբերյալ բացահայտ ահազանգումների դեպքում։

Վերջերս Կենտկոմի բյուրոն կուսակցական խիստ տույժի ենթարկեց հանրապետության ֆինանսների մինիստրության վերահսկիչ-վերստուգիչ վարչության պետ, ՍՄԿԿ անդամ ընկ. Ա. Աբրահամյանին, որն անբարեխղճորեն էր վերաբերվել իր պաշտոնական պարտականությունների կատարմանը հանրապետության գունավոր մետալուրգիայի վարչության երկրաբանական-հետախուզական տրեստի ֆինանսա-տնտեսական գործունեությունն ստուգելիս և ֆինանսների մինիստր ընկ. Ս. Սաֆարյանի ուշադրությունը հրավիրեց մինիստրության վերահսկիչ-վերստուգիչ վարչության աշխատանքի անբավարար որակի վրա։ Հափշտակումների, հավելագրումների և այլ չարաշահումների փաստերը թաքցնելու մեղադրանքով քրեական պատասխանատվության է ենթարկված «Հայգլխգազի» վերահսկիչ-վերստուգիչ բաժնի պետը։ Առևտրի մինիստրության պետառեսչության 3 աշխատողներ Կիրովական քաղաքի մանրածախ առևտրի ցանցն ստուգելիս թաքցրել էին հայտնաբերված խախտումները՝ կաշառք վերցնելով առևտրի աշխատողներից։

Անհրաժեշտ է, որ համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները շատ կարճ ժամանակում վերահսկիչ-վերստուգիչ ապարատը զտեն անմաքուր, վստահություն չներշնչող մարդկանցից։ Պայքարի զենքը չպետք է ժանգոտի։

Այնուհետև։ Չարաշահումների դեմ պայքարում օրակարգի սուր հարց են դարձել այսօրինի, ի դեպ, պլանային և տնտեսական մարմինների թողտվությամբ, աշխարհ եկած զանազան գերատեսչությունների ու կազմակերպությունների բազմաքանակ մանր արտադրություններն ու արտադրամասերը, որոնք թողարկում են հիմնականում նույն արտադրանքը, ինչ-որ մեր խոշոր ճյուղային արտադրությունները, միայն այն տարբերությամբ, որ դրանք հաճախ աշխատում են համախառն արտադրանքի ազատ պլանավորման սկզբունքով, «ձախ» հումքով և «ձախ» իրացմամբ։ Դրանում տերուտնօրինություն են անում աֆերիստները, «ցեխավիկներ» համեստ անվամբ։

Հանրապետության պետպլանը, համապատասխան կազմակերպությունների հետ համատեղ, պետք է միջոցներ ձեռնարկի շուտափույթ վերացնելու ավելորդ արտադրությունները և խոշորացնելու մնացածները։

Անհրաժեշտ է հետևողական պայքար մղել կաշառակերության դեմ ինչ ոլորտում և ինչ ձևով էլ այն դրսևորվի։

Սովետական շրջանի № 2 ԲՇԳ-ի պետ Մ. Բոսթաջյանը 8 տարվա ազատազրկման է դատապարտվել տարբեր քաղաքացիներից սիստեմատիկաբար կաշառք կորզելու համար։ Այդ ստահակը մարդկանց տրամադրում էր շրջսովետի



տնօրինության տակ գտնվող ազատված բնակարանները, խոստանալով հետագայում նրանց գրանցել այդ բնակտարածությունում։ Բացի դրանից, կաշառքով թույլ էր տալիս գարաժների անօրինական կառուցումներ։

Կաշառակերների, դրամաշորթների և հափշտակիչների դեմ պատշաճ պայքարի բացակայությունը այլանդակում է առանձին մարդկանց բարքերը, ստեղծում է պատրանք, թե փողով և «լավ կապերի» օգնությամբ, այսինքն՝ կաշառքով, կարելի է ամեն ինչի հասնել։ Սրա-նրա մոտ տարածված՝ «խոսելու վրա է», «յոլա կգնանք», «կդասավորենք», «եթե պաշտոնական հաշվով ես խնդրում, չեմ անի, իսկ ընկերական հաշվով՝ կանեմ» և այլ նողկալի արտահայտություններ պետք է վճռականորեն արմատախիլ արվեն։

Առանձնահատուկ մտահոգություն և տագնապ է առաջացնում այնպիսի բացասական փաստերի ներթափանցումն առանձին ուսումնական հաստատություններ, ինչպիսիք են պրոտեկցիոնիզմը, հասունության ատեստատներում և վկայականներում գնահատականների անհիմն բարձրացումը և այլն։

Կենտկոմը լուսավորության մինիստրությունից (մինիստր՝ ընկ. Ս. Հախումյան), բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունից (մինիստր՝ ընկ. Ա. Ասլանյան), կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեներից, դպրոցների և ուսումնական հաստատությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններից և բոլոր կոմունիստներից պահանջում է կազմակերպել և ակտիվ պայքար մղել մեր պանծալի ուսուցչության բարի անունն արատավորող նույնիսկ նման առանձին փաստերի դեմ։ Առողջապահության մինիստրությունում, բժշկական հիմնարկներում, հիվանդանոցների և պոլիկլինիկաների կուսակցական կազմակերպություններում չի ստեղծված կոմունիստական բարոյականության հետ անհամատեղելի այնպիսի երևույթների դեմ անհաշտ ու վճռական պայքարի մթնոլորտ, ինչպիսիք են՝ դրամաշորթությունը, պրոտեկցիոնիզմը, մասնավոր պրակտիկան, դեղորայքի սպեկուլյացիան։ Այն ժամանակ, երբ հանրապետության բժշկական աշխատողների բազմամարդ բանակն ազնվաբար ու բարեխղճորեն է կատարում իր պրոֆեսիոնալ և քաղաքացիական պարտքը ժողովրդի հանդեպ, առանձին բժիշկներ և բուժաշխատողներ, օգտվելով անպատիժ մնալուց, իրենց մասնագիտությունը դարձրել են ամոթալի սպեկուլյացիայի առարկա։ Այսպիսի, նույնիսկ եզակի դեպքերը, գցում են ամենամարդասիրական, ամենաազնիվ մասնագիտության ներկայացուցչի պատիվն ու արժանապատվությունը, հարուցում աշխատավորների արդարացի վրդովմունքը։ Այս ամենի մասին կուսակցական մարմինները բազմիցս զգուշացրել են մինիստրության կոլեգիային և անձամբ մինիստր ընկ. Զ. Նարիմանովին։ Բայց, ինչպես ասում են, «սայլը տեղից չի շարժվում»։

Մենք պետք է միշտ հիշենք, որ կաշառակերությունը հանցագործության ամենանրբացած, դժվար հաստատվող, ուստի և՝ ամենավտանգավոր տեսակներից մեկն է։ Այն խարխլում է պետական ապարատի հեղինակությունը, ոտնահարում քաղաքացիների օրինական իրավունքները։ Ուստի կաշառակերության բոլոր դրսևորումների դեմ պայքարն առաջնահերթ և կարևոր խնդիր է։ Կաշառակերության դեմ պետք է հայտարարել անողոք պայքար։

Կյանքի բոլոր ոլորտներում օրինականության և պետական կարգ ու կանոնի հաստատում, պետական ապարատի, սովետական և տնտեսական կազմակերպությունների աշխատանքում հստակություն, բյուրոկրատիզմի և քաշքշուկի վերացում, խստապահանջություն սովետական օրենքների իրականացման գործում, պաշտոնական դիրքի չարաշահումների և այլ զանցանքների խափանում՝ ահա այն ուղիները, որոնք օբյեկտիվորեն կհանգեցնեն կաշառակերության պայմանների վերացմանը։

Պետական իշխանության մարմինների կյանքի օրենքը պետք է լինի՝ օպերատիվ կերպով ի հայտ բերել և խստորեն պատժել կաշառակերներին և կաշառատուներին, որոնք ձգտում են փրկվել հատուցումից՝ իրենց կեղտոտ գործերի համար։

Չի կարելի մոռանալ նաև, որ որոշ մարդիկ, սովետական իրավակարգի տարրական նորմերը չիմանալու պատճառով, փոխանակ պահանջելու, որ բյու-

րոկրատները, իրենց պաշտոնական դիրքը չարաշահող վայ-ղեկավարները, չինովնիկներն ու մյուս թափթփուկները հարգեն նրանց քաղաքացիական իրավունքները, գնում են օրենքը խախտելու ճանապարհով և դառնում կաշառատուներ, օբյեկտիվորեն նպաստելով կաշառակերության աճին։

Կուսակցական կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որ աշխատանքի ամեն մի տեղամասում հաստատվի պետական հստակ կարգ, որ սովետական օրենքների հարգումն ու անշեղ կատարումը դառնան բոլոր աշխատողների կյանքի նորման՝ անկախ գրաված պաշտոնից, որ արմատախիլ արվեն բյուրոկրատիզմն ու քաշքշուկը աշխատանքում, ի հայտ բերվեն և խստագույնս պատժվեն պաշտոնական դիրքը չարաշահողները, ընդհուպ մինչև դատի տալը։

Անհրաժեշտ է աշխատավորներին պարզաբանել, որ նրանց իրավունքները պաշտպանվում են մեր սոցիալիստական օրենքներով, և ոչ ոք իրավունք չունի ձեռք բարձրացնել դրանց վրա։

Բոլոր սովետական մարդկանց առաջնահերթ պարտականությունն է խստիվ կիրառել օրենքները։ Այժմ խոսքը վերաբերում է նախ և առաջ այն բանին, որ ամենուրեք, մեր կյանքի բոլոր ոլորտներում՝ ձեռնարկություններում, կառույցներում, հիմնարկներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, բոլոր ինստանցիաներում ստեղծվի անհանդուրժողության մթնոլորտ՝ օրենքից կատարվող նվազագույն շեղումների, իրավական նորմերի խախտման ամեն տեսակ փաստերի նկատմամբ։

Մեզանում օրենքը մեկն է, այն պարտադիր է բոլորի համար՝ անկախ գրաված պոստից ու դիրքից։ Սա մեր հասարակության կյանքի անսասան սկզբունքն է։

Սոցիալիստական օրինականության և իրավակարգի ըստ ամենայնի ամրապնդման՝ կուսակցության XXIV համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են արմատական բեկում մտցնել նաև վարչական մարմինների աշխատանքում։

Ներքին գործերի մինիստրության, դատախազական օրգանների, դատարանների աշխատանքում և այն պայքարում, որ նրանք մղում են հանցագործությունների ու իրավախախտումների դեմ, քաղաքացիների իրավունքների և իրավաշահերի պաշտպանության համար, տակավին կան լուրջ թերություններ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թվականի ապրիլյան պլենումը վարչական մարմինների ղեկավարներից պահանջեց վճռական միջոցներ ձեռնարկել հանցագործությունների դեմ մղվող պայքարի ասպարեզում, առավելագույն արդյունավետության հասնել բացասական երևույթների վերացման գործում։ Մենք այսօր պետք է արձանագրենք, որ վարչական մարմինները Կենտկոմի պահանջները չեն կատարել և չեն նվազում սոցիալիստական սեփականության հափշտակումների, քաղաքացիների գույքի կողոպուտի, խուլիգանության, սպեկուլյացիայի և կաշառակերության փաստերը։ Երբեմն մինչև վերջ չեն բացահայտվում հանցագործությունները, և ժողովրդական բարիքը հափշտակողների կազմակերպիչներն ու պարագլուխները մնում են անպատիժ։

Ներքին գործերի մարմինների աշխատանքում թերությունները, սխալները, իսկ երբեմն էլ ձախողումները հնարավոր էին դարձել այն պատճառով, որ մինիստրության ղեկավարությունը և կուսկազմակերպությունը աշխատողներից չէին պահանջում խստիվ կիրառել կուսակցական և պետական կարգապահությունը, կատարել իրենց պաշտոնական պարտքը, կոպիտ սխալներ էին թույլ տրվում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման գործում։ Պարզ է, որ այդպիսի հանգամանքներում ընկ. Վ. Դարբինյանը իրեն զրկել էր մինիստրությունը ղեկավարելու իրավունքից։ Կենտկոմն ամրապնդեց մինիստրության ղեկավարությունը։

Վարչական մարմինների սիստեմում կադրերի նկատմամբ ցածր պահանջկոտությունը միայն ներքին գործերի մինիստրությանը չի վերաբերում. լուրջ թերություններ կան նաև դատախազության և դատական օրգաններում։

Արդարադատության առանձին տեղամասեր վստահված են այնպիսի մարդկանց, որոնք նախաձեռնություն չեն ցուցաբերում պայքարի ակտիվացման գործում, անսկզբունքային են և փափկամորթ, նրանց մեջ երբեմն հան-



դիպում են նաև այնպիսիները, որոնք փոխանակ կատարելու սովետական օրենքները կիրառողի իրենց պարտքը, իրենք են բռնում օրենքների խախտման ճանապարհը։ Ի՞նչ բարոյական իրավունքով, օրինակ, կարող էր մարդկանց դատել Շահումյանի շրջանի ժողովրդական դատարանի նախագահ, ՍՄԿԿ անդամ Ա. Մանուկյանը, որը կուսակցությունից թաքցրել էր հենց իր դատվածությունը, թույլ էր տալիս բնակարանային մեքենայություններ։ Վերջերս Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց նրան ետ կանչել դատավորի պաշտոնից և կուսակցական խիստ տույժ տվեց արդարադատության այդ «պահապանին»։

Բացասական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու մեր բոլոր պահանջները պատշաճ արդյունք չեն տա, եթե վարչական մարմինները չկատարեն իրենց պարտականությունները, քանի դեռ այդ մարմիններն աշխատեն հին ձևով, թույլ, ոչ որակյալ, քանի դեռ նրանք այդ պայքարում չեն ցուցաբերի հետևողականություն և անհաշտություն։

Կուսակցության Կենտկոմը ներքին գործերի մինիստր ընկ. Ե. Պատալովից, հանրապետության դատախազ ընկ. Ս. Օսիպյանից, հանրապետության գերագույն դատարանի նախագահ ընկ. Գ. Քոչարյանից և արդարադատության մինիստր ընկ. Ս. Գևորգյանից պահանջում է անհետաձգելի և կոնկրետ միջոցներ ձեռնարկել՝ արմատապես բարելավելու վարչական մարմինների աշխատանքը։ Անհրաժեշտ է աշխատանքի բոլոր բնագավառներն ամրապնդել նվիրված, գործիմաց, ձեռներեց, սկզբունքային, կայուն և ազնիվ ընկերներով։ Իսկ պաշտոնական դիրքի չարաշահման ուղին բռնած և վարչական օրգանի աշխատողի բարի անունն արատավորողներին դատել կամ խստորեն պատժել։

Վարչական մարմինները պետք է հասնեն այն բանին, որ պատիժն անխուսափելի լինի սովետական օրենքների, սոցիալիստական համակեցության նորմերի ու կանոնների ամեն մի խախտողի համար։

Հանրապետությունում ակտիվ պայքար չի մղվում հանրօգուտ աշխատանքից խուսափող անձանց դեմ, այս նպատակով ձեռնարկվող միջոցները միանգամայն անբավարար են։ Մինչդեռ պորտաբուծությունը, պարազիտիզմը հանցագործություններին և անբարոյականությանը նպաստող միջավայր են։

Դրա համար էլ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պետք է անհապաղ մշակեն և իրագործեն պորտաբուծության դեմ պայքարն ուժեղացնելու, այդ երևույթի և նրա կոնկրետ կրողների շուրջը անհանդուրժողական, ընդհանուր դատապարտման մթնոլորտ ստեղծելու միջոցառումների սիստեմ։ Տեղական սովետների գործկոմները պետք է միջոցներ ձեռնարկեն հանրօգուտ աշխատանքից խուսափողներին աշխատանքի տեղավորելու համար։

Ընկերնե՛ր։ Առանձին մարդկանց անբարոյական արարքներն ազդում են կոլեկտիվների դաստիարակչական պրոցեսի վրա, մեծ վնաս են հասցնում մասսաների մեջ տարվող գաղափարա-դաստիարակչական աշխատանքին։

Դա հատկապես վերաբերում է ղեկավարներին, բոլոր նրանց, ում հասարակությունը ցույց է տվել մեծ վստահություն։ Եվ ահա, երբ այդ անձանց մեջ լինում են մարդիկ, ովքեր բարձր ամբիոններն օգտագործում են կոմունիստական բարոյականության, սովետական ապրելակերպի մասին ամպագոռգոռ ճառերի համար, իսկ իրականում քաղքենու կրքոտ եռանդ են ցուցաբերում միմիայն իրենց անձնական հարստացման և տնտեսական ուռճացման միտումով, ապա դժվար է փոխհատուցել այն վնասը, որ նրանք հասցնում են կոլեկտիվի դաստիարակությանը։

Ամենքին քաջ հայտնի են «Մոնտաժհատուկշինի» գլխավոր վարչության նախկին պետ Վ. Խաչիկյանի կողմից պաշտոնական դիրքի չարաշահման փաստը և նրա բնակարանային խարդախությունները։ Այս մասին մենք այսօր մեկ անգամ ևս հիշատակում ենք, որովհետև դա թե՛ պաշտոնական դիրքի չարաշահման և թե՛ հաճոյակատարության բնորոշ օրինակ է։ Այդ փաստը հաստատում է այն միտքը, որ չափը կորցրած որոշ ղեկավարների թվում է, թե առանձին ղեկավարների հետ ունեցած լավ հարաբերություններն իրավունք են տալիս իրենց լկտիաբար այլանդակություններ անել ի շահ այդ «ղեկավարների»

մակողմանիորեն և խորապես տարրալուծենք ու հետազոտենք այն պատճառները, որոնք ծնեցին անհարիր բարքերի և արատների առանձին երևույթներ՝ այն հաշվով, որ ակտիվ և հետևողական պայքար մղենք դրանց վերացման համար: Անցյալի փորձից գիտենք, որ նման դեպքերում մակերես է դուրս գալիս ամեն տեսակ կեղտոտ քափ ու փրփուր, գլուխ են բարձրացնում և ակտիվանում անձնական հաշիվ մաքրելու սիրահարները, կարիերիստները, ինտրիգանները, բանսարկուները, խառնակիչները, զրպարտիչները, անստորագիր նամակներ գրողները և այլ թափթփուկները: Մի խոսքով, բոլոր նրանք, ովքեր իրենք լինելով խորթ բարքերի կրողներ, «վիրավորվածների» կամ արդարության «ասպետների» անվան տակ կաշխատեն լուծել իրենց եսապաշտական հարցերը, մեզ խանգարելով մեծ աշխատանքում:

Մենք պետք է նմաններին խստորեն նախազգուշացնենք, որ նրանց առջև ամուր և անանցանելի պատնեշ է կանգնեցված: Իսկ եթե ոմանք կփորձեն շրջանցել այն, ապա կպատժվեն կուսակցական կարգապահության ամբողջ խստությամբ: Կանաչ ճանապարհ պետք է բացված լինի նրանց առջև, ովքեր առանց աղմուկ-աղաղակի, աշխատանքի իրենց բնագավառում կուսակցականին վայել լավ կաշխատեն և կուղղեն սխալները:

Կադրային քաղաքականությունն այն փորձաքարն է, որի միջոցով ստուգվում և որոշվում են կուսակցական կազմակերպության, նրա ղեկավար կազմի հասունությունն ու սկզբունքայնությունը, աշխատունակությունն ու մարտունակությունը: Այստեղ կարելի է, վերհիշել հայտնի իմաստուն ասացվածքը. «Ասա ընկերդ ով է, կասեմ դու ով ես», իսկ տվյալ դեպքում, վերափոխելով, կլինեի՝ «Ասա, ինչպես և ինչպիսի կադրեր ես ընտրում, կասեմ՝ ինչպիսի ղեկավար ես դու»:

Պետք է ասել, որ կուսակցական կազմակերպության մեջ թույլ տրված կուսակցական կյանքի նորմերի առանձին խախտումներն ամենից ավելի սուր կերպով անդրադարձան կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործի վրա:

Բանն այն է, որ կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը միշտ չէ, որ կատարվել են գիտականորեն: Սա ասվում է ոչ թե գեղեցիկ ու ճոճուն ֆրազի համար: Կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումն իսկական գիտական և փութաջան աշխատանք է: Այն պահանջում է անաչառորեն դիտարկել, ուսումնասիրել, եթե կուզեք, հետազոտել այս կամ այն աշխատողին, բացահայտել նրա ուժեղ և թույլ կողմերը, որոշել նրա կոչումը և տվյալ աշխատանքի համար ունեցած որակական բոլոր հնարավորությունները:

Կադրային քաղաքականությունը հենց նրա համար է քաղաքականություն կոչվում, որ այդ աշխատանքը ոչ թե միանվագ, կարճատև ակտ է, այլ անընդհատ գործող պրոցես: Կադրային աշխատանքի այդպիսի նորմալ կազմակերպված պրոցես չկար, ինչպես գործող աշխատողների գործունեության ուսումնասիրման, այնպես էլ ղեկավար աշխատանքի առաջ քաշելու համար կադրերի ակտիվ ռեզերվի նախապատրաստման բնագավառում:

Անհրաժեշտ և պատրաստված ռեզերվի բացակայությունը պետք է համարել մեր կադրային քաղաքականության ամենախոցելի տեղերից մեկը, որի բացասական ազդեցությունը, ակներևաբար, մենք դեռ որոշ ժամանակ կզգանք: Կուսակցական օրգանների խնդիրն է կադրերի ընտրության աշխատանքը կազմակերպել նրա անընդհատ պրոցեսի մեջ, այն դնել գիտական հիմքի վրա, ստեղծել և միշտ ունենալ գործնական աշխատանքում աճած և ստուգված կադրերի ակտիվ ռեզերվ:

Կադրային ռեզերվի ստեղծումը ներկայումս պետք է դառնա Կենտկոմի, Մինիստրների սովետի, կուսակցության քաղկոմների և շրջկոմների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավար գործունեության գլխավոր ուղղություններից մեկը:

Մեր գործունեության վրա բացասաբար են անդրադարձել կադրերի տեղաբաշխման գործում կուսակցական սկզբունքների խախտումների առանձին փաստերը, երբ որոշ մարդիկ ղեկավար պոստերի էին նշանակվում անձնական նվիրվածության չափանիշով՝ անտեսելով նրանց քաղաքական և գործնական



հատկանիշները, առանց խորհելու, թե այս կամ այն մարդն արդյո՞ք հարմար է տվյալ աշխատանքի համար: Այդ կերպ նշանակված դրածո կադրերը, որպես կանոն, ոչ այնքան համակված էին հանձնարարված բնագավառում լավ աշխատանք կազմակերպելու ցանկությամբ, որքան հայացքն ուղղում էին դեպի իրենց հովանավորողը, որին ոչ մի բան չէին կարող մերժել, հաճախ ամենակոպիտ կերպով խախտելով կուսակցական և պետական օրինականությունը և թույլ տալով չարաշահումներ: Իսկ շեֆ-հովանավորը, հրապարակավ չվավերացված այդպիսի պայմանագրային հարաբերություններ հաստատելով իր դրածոների հետ, փաստորեն իրեն զրկում էր պահանջկոտության իրավունքից:

Այս կապակցությամբ բնորոշ է կուսակցության Կալինինոյի շրջկոմի նախկին առաջին քարտուղար Գ. Ավդալյանի օրինակը, որի առաջքաշման ժամանակ նկատի չառնվեցին նրա բարոյական ու քաղաքական հատկանիշները, անտեսվեց՝ արդյոք նա ունի՞ անհրաժեշտ սկզբունքայնություն, կարո՞ղ է հարցերի լուծմանը քաղաքական մոտեցում ցուցաբերել:

Հենց այդպիսի վնասակար պրակտիկան պայմաններ ստեղծեց պետական և կուսակցական կարգապահության խախտումների համար, մեր աշխատանքի առանձին տեղամասերում ծնեց հաճոյակատարության և ստորաքարշության, քծնության երևույթներ, «ով ում մարդն է, ում դրածոն է» քաղքենիական բնորոշումները, որոնք կործանարար կերպով են անդրադառնում գործի, մարդկանց վարքագծի և փոխհարաբերությունների վրա:

Կյանքի դասերն այնպիսին են, որ երբ տվյալ կազմակերպության, աշխատանքի տվյալ բնագավառի ղեկի մոտ հայտնվել է այդ աշխատանքի համար իր բոլոր հատկանիշներով անհամապատասխան մեկը, նա ընտրում և ապարատը կոմպլեկտավորում է իր նման աշխատողներով, սեփական չափանիշների սկզբունքով: Որպես դրա ուղղակի հետևանք, ստեղծվում է ոչ-գործունակ, ոչ-ստեղծագործական ապարատ՝ աշխատանքի ցածր մակարդակով, որն ի վիճակի չէ լրիվ լուծելու իր գործունեության մեջ առաջացող ժամանակակից և բարդ խնդիրները: Բայց սա բոլորը չէ: Սա ողբերգության սկիզբն է: Այն չի ավարտվում նման ղեկավարին պաշտոնանկ անելով: Տարիների ընթացքում նրա ստեղծած արատավոր սիստեմը, աշխատանքի ոճը, բարքերը, սովորույթները նրան ազատելուց հետո ինքնաբերաբար չեն մահանում, դրանք ինչ-որ ժամանակ իներցիայով շարունակում են գոյություն ունենալ մարդկանց գիտակցության, նրանց սովորույթների և գործողությունների մեջ: Նոր նշանակված աշխատողը հարկադրված է լինում ինչ-որ պահ կանգ առնել, որպեսզի վերակառուցի աշխատանքը, ջանքեր ու ժամանակ գործադրի այդ իներցիան հաղթահարելու համար:

Նման իրադրության մեջ, օրինակ, ստիպված էին աշխատանքն սկսել կուսակցության Արտաշատի, Մասիսի, Արթիկի շրջկոմների, «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման նոր ղեկավարները, որոնք, ազատվելով անպատիժ մեքենայություններ անելու սովոր գործամոլներից, ամեն պահ ընդհարվում էին նրանց դիմադրությանը, պրովոկացիաներին և բանսարկություններին:

Չի կարելի արհամարհել կյանքի դաժան դասերը: Ով պոչ է խաղացնում, ստորաքարշություն անում և հաճոյանում առանձին մարդկանց կամ մի խումբ մարդկանց առջև, նա երբեք չի կարող ամրանալ կուսակցական ղեկավար աշխատանքում: Վաղ թե ուշ նման աշխատողն անխուսափելիորեն ձախողվում է իր ամբողջ թայֆայի հետ միասին, որը մի ժամանակ նրան հաճոյանում կամ որին ինքն էր հաճոյանում: Այսպիսին է անխուսափելի վախճանը, երբ ոտնահարվում են կուսակցական սկզբունքները:

Մեր խնդիրն է անհապաղ, մինչև վերջ և առանց որևէ մնացորդի, վերացնել կադրերի ընտրության և տեղաբաշխման սխալները և այդ գործում անշեղորեն ղեկավարվել լենինյան սկզբունքներով: Հարկավոր է մեր կադրային գործունեությունն այնպես վարել, որ ոչ ոք փաստական հիմք չունենա գործածելու «հաճոյակատարություն», «քծնություն», «ստորաքարշություն», «ով ում մարդն է» տերմիններն ու արտահայտությունները, որպեսզի բոլոր այդ տերմինները ջնջվեն մեր կուսակցական կազմակերպության բառարանային ֆոնդից: Յուրա-

քանչյուր ղեկավար պետք է իմանա և հպարտանա նրանով, որ ինքը ոչ թե այս կամ այն անհատի դրածոն է, այլ կուսակցության նշանակած աշխատող, կուսակցության, որի առջև ինքը լիովին պատասխանատվություն է կրում։ Եվ որ նրա գնահատականը տրվելու է միայն ըստ իր աշխատանքի արդյունքների։ (Ծափահարություններ)։

Կադրերի դաստիարակության և նրանց աշխատանքի արդյունավետության վրա բացասաբար էր ազդում այն պրակտիկան, երբ ղեկավար աշխատողների զանցանքները, սկզբունքային սխալները, թերությունները միշտ չէ, որ մատնանշվում էին։

Գրաված պաշտոնի անհամապատասխան լինելու, աշխատանքը ձախողելու համար առանձին ղեկավար աշխատողներ երբեմն չէին ազատվում աշխատանքից, այլ հաճախ նույնիսկ գովաբանվում և պարգևատրվում էին։ Նրանք շարունակում էին աշխատել այնքան ժամանակ, մինչև որ բռնվում էին կոպիտ խախտումների և չարաշահումների մեջ։

Խնդիրն այն է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները արմատապես բարելավեն կադրերի հետ կատարվող իրենց աշխատանքը։

Պետք է մշտապես անաչառ գնահատական տալ կադրերի գործունեությանը, վերլուծել նրանց հաջողություններն ու անհաջողությունները։ Կադրերի հետ տարվող աշխատանքում կարևոր ու վճռական տեղ պետք է գրավեն նրանց նկատմամբ բարձր պահանջկոտությունը, աշխատանքում և վարքագծում նկատվող նրանց սխալների և վրիպումների ժամանակին բացահայտումը, դրանց բնույթի և առաջացման պատճառների զննությունը։ Թույլ տված սխալների, վրիպումների համար հարկավոր է խիստ պատասխան պահանջել աշխատողից, ընդ որում ոչ թե նրան ծնկի բերելու, այլ ամուր ոտքի կանգնեցնելու համար, իսկ հանցանքների, խախտումների և չարաշահումների համար պետք է խստիվ պատժել։ Բայց բոլոր դեպքերում կադրերի նկատմամբ հոգատարությունը, այսպես թե այնպես, սկսվում է խիստ, օբյեկտիվ պահանջկոտությունից։ Կա այսպիսի կենսական ֆորմուլա՝ որքան շատ մշտական պահանջկոտություն ու խստություն ցուցաբերվի կադրերի նկատմամբ, այնքան քիչ կպատժվեն նրանք։

Ահա այդպիսի մշտական ու հետևողական, ժամանակին ցուցաբերվող պահանջկոտության բացակայությունն էլ կադրերի դաստիարակության գործում հանգեցրեց բացասական հետևանքների։ Գործը ձախողած և պատժված կադրերը հաճախ մի ղեկավար աշխատանքից փոխադրվում էին մյուսին։ Այսպիսով ստեղծվեց այսպես կոչված մշտական «նոմենկլատուրայինների», պատժվածների մի ամբողջ կատեգորիա, որոնք անզուսպ ձգտում և արմատացած հոգեբանություն ունեն՝ մշտապես գտնվել ղեկավար աշխատանքում։ Հաճախ նրանց պնդաճակատությունը հաղթում էր, և նրանք նորից հայտնվում էին ղեկավար աշխատանքում. ավելին, երբեմն նրանք պահանջներ էին ներկայացնում կուսակցական մարմիններին ու ղեկավարներին այն առթիվ, որ նրանց ղեկավար աշխատանքի չեն տեղավորում։ Եվ ահա ստացվում է կախարդական շրջանակ. կուսակցական մարմինը շատ ջանքեր ու ժամանակ է ծախսում այն բանի վրա, որ ի հայտ բերի խախտումներն ու խախտողներին, բայց ավելի շատ ժամանակ ու ճիգեր է գործադրում ձախողվածների քմահաճույքը կատարելու և նրանց աշխատանքի տեղավորելու վրա։

Այդպիսի մարդիկ կուսակցական մարմիններից հսկայական ժամանակ են խլում և նրանց խանգարում են զբաղվել անհրաժեշտ գործով։

Այս ամենի մասին կարելի էր չասել, եթե դա մեզանում չունենար բացասական երևույթ դառնալու միտում։ Հարկավոր է վերջ տալ այդ չարիքին։ Հարկավոր է ստեղծել այնպիսի խստապահանջության մթնոլորտ, որի պայմաններում պատժված մարդիկ անգամ չմտածեն ղեկավար աշխատանքի մասին այնքան ժամանակ, քանի դեռ իրենց չեն արդարացրել։ Բացի դրանից, ժամանակին խիստ պահանջկոտության բացակայությունը հանգեցրեց այն բանին, որ բարոյա-քաղաքական առումով անկայուն որոշ կադրեր փրկություն գտան։ Խոսքը վերաբերում է այն անձանց, որոնք պատժվեցին վերջին ժամանակներս։



Յուրաքանչյուր ղեկավար աշխատող ամենից առաջ ինքը պետք է պատասխանատու լինի իր համար, իր գործողությունների համար։

Այսօր Կենտկոմի բյուրոն մեկ անգամ ևս հայտարարում է, որ ղեկավար պոստերից մի շարք աշխատողների ազատման և նրանց կուսակցական պատժի ենթարկելու մասին վերջին մեկուկես տարվա ընթացքում ընդունված որոշումները միանգամայն հիմնավորված են։ Բայց դրա հետ մեկտեղ, այդ տխուր պատմության մեջ հարկավոր է ի նկատի առնել նաև հարցի ոչ պակաս կարևոր կողմը։ Բանն այն է, որ մեզնից յուրաքանչյուրը ցավով և խոցված զգացմունքով ընդունեց առանձին ղեկավարների անփառունակ վախճանը։

Մենք պարտավոր ենք խորհել և հարց տալ, թե ինչպե՞ս պատահեց, որ նրանք գլորվեցին սխալների, խախտումների ճահիճը։

Խիստ քննադատության է ենթակա Կենտկոմի բյուրոն, որը վերջին տարիներս թույլ էր զբաղվում կադրերի ընտրության և դաստիարակության հարցերով։ Է՛լ ավելի սուր քննադատության են ենթակա Կենտկոմի առանձին նախկին քարտուղարներ ու հանրապետության այլ ղեկավար աշխատողներ, որոնց թողտվությամբ ու, երբեմն էլ, անմիջական մասնակցությամբ կուսակցական կազմակերպության մեջ արմատավորվում էին խորթ բարքեր, երբ տիրապետում էր անպատժելիության մթնոլորտը, կարգ ու կանոնը խախտողներին սիրաշահելու ձգտումը, ամեն կերպ սուր իրադրություններից խուսափելու մտայնությունը։

Ղեկավարի պահանջկոտությունը ենթադրում է նախ և առաջ բարձր կուսակցականություն, խոր գործիմացություն, անաչառություն և օբյեկտիվ վերաբերմունք ստորադրյալների նկատմամբ, սկզբունքայնություն՝ հարցերը լուծելիս։

Կուսակցական կազմակերպությունները և կոլեկտիվները միշտ զգում են իրենց ղեկավարի բոլոր հատկությունները, առանձնապես՝ կարևոր և վճռական հատկությունները։ Ղեկավարի մանր թերությունները, որոնք հատուկ են յուրաքանչյուր մարդու, ինչ-որ չափով ներվում են, իսկ սկզբունքներից նահանջելը չի ներվում երբեք։ Այդպիսի ղեկավարը սպառում է իրեն, նրան այլևս չեն լսում ու չեն ենթարկվում, քայքայվում է կարգապահությունը, խախտվում է աշխատանքի ընդհանուր ռիթմը, որ, վերջին հաշվով, կործանարար է անդրադառնում նաև ընդհանուր գործի վրա, կադրերի դաստիարակության վրա։

Հայտնի է, որ խախտումների և չարաշահումների կրողների նկատմամբ անզիջում վերաբերմունք կարող է ցուցաբերել միայն այն ղեկավարը, որն անբասիր է բոլոր տեսակետներից՝ որպես կոմունիստ, որպես ղեկավար, որպես քաղաքացի, միայն նա, ով կուսակցության գործին իր նվիրվածությամբ նվաճել է գործնական և քաղաքական հեղինակություն և ոչ թե հագել պաշտոնական հեղինակության քղամիդ։ Այդպիսի ղեկավարի համար պահանջկոտ, սկզբունքային լինելու ոչ մի պատնեշ չկա։ Նա համարձակ է, անհաշտ և անզիջում՝ կուսակցական և պետական կարգապահության պահպանման պայքարում։

Անառարկելի ճշմարտություն է, որ կուսակցական մասսայի և ժողովրդի մեջ ղեկավար աշխատողի հեղինակությունը որոշվում է ոչ միայն նրա պաշտոնական դիրքով։ Այն հիմնականում ձևավորվում է տվյալ մարդու ամենօրյա կոնկրետ գործերով, քաղաքական և հոգևոր վեհ կերպարով, իր աշխատանքի բարձր որակով, մարդկանց նկատմամբ անկեղծ, օբյեկտիվ, կուսակցական վերաբերմունքով, խստապահանջ բարությամբ, թերությունների, խախտումների, դրանց կրողների նկատմամբ անհաշտությամբ։

Մենք բոլորս պարտավոր ենք մշտապես հոգալ բոլոր աստիճանների, մեծ ու փոքր ղեկավար աշխատողների բարձր հեղինակության մասին, նրանց նկատմամբ հարգալից վերաբերմունքի մասին։ Դա ոչ թե պարապ ու վերացական հարց է, այլ հարկավոր է գործի համար։ Եվ այդ հոգատարությունն ամենից առաջ պետք է դրսևորվի կադրերի ճիշտ ընտրության գործում։ Մեզանում կան մեծ թվով ընդունակ, տաղանդավոր, հոգով հարուստ ու կրթված մարդիկ, որոնք մշտապես հարստացնում են իրենց գիտելիքները գիտության, մեր սոցիալիստական իրականության առաջավոր փորձի և ժողովրդի իմաստության

շտեմարանից, մարդիկ, որոնք իրավամբ վայելում են մասսաների վստահություն և աջակցություն։

Մեր առջև խնդիր է ծառացած՝ լավ, մտածված կադրային քաղաքականությամբ անհրաժեշտ բարձրության վրա դնել հեղինակությունն ու բարի անունն այն ղեկավարների, ովքեր իրենց բոլոր գիտելիքները, փորձը և եռանդը նվիրաբերում են կուսակցության և կառավարության առաջադրանքների կատարմանը՝ հանուն ժողովրդի բարօրության։ Այդպիսի ղեկավարներ մենք շատ ունենք, այդպիսին է հանրապետության ղեկավար աշխատողների կազմի մեծամասնությունը։ Մենք պետք է ըստ ամենայնի պաշտպանենք լավ աշխատող և պահանջկոտ ղեկավարներին, նրանց պաշտպանենք անհիմն հարձակումներից ու անարգանքից, նրանց մասին տարածվող քաղքենիական ասեկոսներից, որոնց մեջ առանձնապես լավ են վարժված ամեն տեսակ գրպարտիչներն ու անանուն նամակագիրները։

Լավ հասկանալով, որ այդպիսի մարդիկ ամենից լավ հարձակվում են խստապահանջ և անզիջում, նրանց անձնական, եսասիրական շահերին դիպչող ղեկավարների վրա, մենք պետք է ուշադիր կերպով խորամուխ լինենք այդ գործերում և ոչ միայն առիթ չտանք նման վնասակար վարժությունների համար, այլև մեկընդմիշտ խափանենք դրանով զբաղվելու նրանց տրամադրությունը։ Մենք պետք է մտածենք նաև այն մասին, որ մասսայական ինֆորմացիայի միջոցներով քիչ կամ գրեթե չեն գովատվում ղեկավար աշխատողների արժանի և լավ գործերը։ Մի տեսակ ընդունված չէ, որ մամուլում, հեռուստատեսությամբ, ռադիոյով համապատասխան նյութեր հրապարակվեն ղեկավարների մասին, լինի դա մինիստր, գործարանի դիրեկտոր, կոլտնտեսության նախագահ, կուսակցության քաղկոմի ու շրջկոմի քարտուղար, այն ղեկավարների մասին, ովքեր կազմակերպում են ժողովրդի համար նյութական բարիքներ և հոգևոր արժեքներ ստեղծելու պայքարը։ Նրանց մասին ամենից ավելի գրվում է բացասական դիրքերից, ընդգծելով թերություններն ու սխալները։ Եթե մենք ժողովրդից չպետք է թաքցնենք ղեկավարի բացասական կողմերը, ապա հավասարապես պահպանելով չափի զգացումը, չպետք է ստվերում պահենք նաև նրանց լավ գործերը։ Դա նույնպես կօգնի պետականության զգացում պատվաստելու մասսային։

Մենք պետք է մշտական հոգատարություն ցուցաբերենք ղեկավար աշխատողների նկատմամբ, նրանց արդյունավետ աշխատանքի համար ստեղծենք անհրաժեշտ բոլոր պայմանները։ Բարձրորակ, կուսակցության և ժողովրդի գործին նվիրված ղեկավար կադրերը մեր ոսկյա ֆոնդն են, և մենք պարտավոր ենք պահպանել այն։

Կադրային քաղաքականության առաջնահերթ և վճռական հարցերից մեկը կադրերի հաջորդափոխության հարցն է, փորձված և երիտասարդ կադրերի գործունեության ճիշտ զուգորդության հարցը։ Կուսակցությունը մեզ սովորեցնում է, որ չի կարելի կուսակցական-պետական աշխատանքում գտնվել և հոգ չտանել ապագայի, հերթափոխի մասին, նոր կադրեր աճեցնելու մասին։ Մի խոսքով, մեր խնդիրն է՝ փորձի իմացությունից և երիտասարդության պոտենցիալ ուժից ստեղծել կադրային հոյակապ և ամուր համաձուլվածք, այնպիսի համաձուլվածք, որն ի վիճակի լինի լուծելու կուսակցական կազմակերպության, մեր հանրապետության առջև կանգնած ժամանակակից ամենաբարդ խնդիրները։

Անհրաժեշտ է նաև լրջորեն զբաղվել ղեկավար աշխատանքում կանանց առաջ քաշելու խնդրով։

Կարևոր խնդիր է՝ կադրերին մշտապես պահել բարձր պատասխանատվության, ձեռներեցության, ստեղծագործական խիզախման ու համարձակության մթնոլորտում։ Կուսակցական և պետական աշխատողի պատասխանատվության բարձր զգացումը նրա ստեղծագործական ոգեշնչման հզոր խթանն ու աղբյուրն է. այն մոբիլիզացնում է աշխատողի հոգևոր և մտավոր բոլոր ունակությունները։ Մեր պարտքն է կադրերին ներարկել լենինյան տիպի աշխատողին ներհատուկ բոլոր ազնիվ հատկանիշները՝ անսահման նվիրվածություն գործին, կուսակցական կրքոտություն, սկզբունքայնություն, նախաձեռնություն աշխատանքում։ Մենք մեր պարտքն ենք համարում ստեղծել այնպիսի մթնոլորտ, որպեսզի կադրերն աշխատեն վստահ, առանց վախվորելու և ետ նայելու, համարձակ դիմեն արդարացված ռիսկի, աշխատեն հոգու կրակով։



Մեր աշխատանքի թերությունների, սխալների և արատների վերացման գլխավոր միջոցներից մեկը, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը և ինչպես պահանջում է կուսակցության XXIV համագումարը, քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի ծավալումն է։

Այժմ, քան երբեք, հարկ է հրաժեշտ տալ ճոռոմ ֆրազներին։ Բոլոր կուսկազմակերպությունների, կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների գործունեության ընթացքում միշտ խստորեն հաշվի առնել եղած ռեալ հնարավորությունները, նմանապես և դժվարությունները, ինչպես հաջողությունները, այնպես էլ թերությունները գործարար կերպով, ռեալիստորեն վերլուծելու և գնահատելու կարողությունը։ Սեփական գործունեության արդյունքները քննադատաբար գնահատելու ունակությունն այն հատկությունն է, որը մինչև օրս պակասել է հանրապետության բազմաթիվ ղեկավար աշխատողների մոտ։ Դա պետք է դառնա բոլոր կոմունիստների և առաջին հերթին բոլոր աստիճանի ղեկավարների վարքագծի նորման։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի կոմունիստները, յուրաքանչյուր աշխատավոր մարդ ավելի վճռաբար հանդես գան իրենց կոլեկտիվների կյանքի զանազան բացասական երևույթների, բարեհոգության և ինքնահանգստացման դեմ, ավելի համարձակորեն քննադատեն թերությունները, ավելի հաստատակամորեն հասնեն դրանց վերացմանը։ Ահա թե ինչու հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որ կոմունիստը վստահ լինի, թե իր յուրաքանչյուր ճիշտ քննադատական դիտողություն հաշվի կառնվի, իսկ խելացի առաջարկությունը կիրագործվի։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի պաշտպանել այն մարդկանց, ովքեր համարձակորեն բացահայտում են թերությունները, մերկացնում են չարաշահումները, հանդես գալ նրանց դեմ, ովքեր ուղղակիորեն կամ անուղղակիորեն փորձում են ահաբեկել այդպիսիներին, ովքեր ձգտում են քննադատությունից գլուխներն ազատել պատրվակներով, սին հավաստիացումներով։

Կենտկոմը վճռականորեն հայտարարում է, որ օբյեկտիվ և ճիշտ քննադատության բացահայտ կամ քողարկված ճնշման ամեն մի դրսևորում կդիտվի որպես ներկուսակցական դեմոկրատիայի ամենակոպիտ խախտում, կպատժվի կուսակցական օրենքի ամբողջ խստությամբ։

Կուսակցականորեն արձագանքել քննադատությանը՝ նշանակում է, նախ, բացահայտորեն ընդունել իր սխալները, երկրորդ, ամեն անհրաժեշտ բան անել այդ սխալները որքան կարելի է արագ վերացնելու համար։

Իհարկե, մենք նկատի ունենք կուսակցական, սկզբունքային քննադատությունը և ոչ թե քաղքենիական քննադատությունը։ Քննադատությունը պետք է հիմնված լինի գործերի վիճակի լավատեղյակության և վերլուծության վրա, այն պետք է լինի ընկերական և անկեղծ, հետապնդի պոզիտիվ նպատակներ։ Ճիշտ քննադատությունը համախմբում է։ Չէ՞ որ քննադատության արժեքը որոշվում է ոչ թե արտահայտությունների խստությամբ, որին սովոր են ոմանք, այլ նրա ճշմարտացիությամբ, ապացույցի ուժով, բարձրացված հարցի նշանակալիությամբ, այն օգուտով, որ նա բերում է։ Կուսակցության Կենտկոմը պետք է այնպիսի իրադրություն ստեղծի, որ բոլոր կոմունիստները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները ճշտորեն, լենինաբար օգտվեն քննադատության հզոր զենքից։

Անհրաժեշտ է սրել կուսակցական կարգապահությունը պահպանելու հարցը։ Այն իր մեջ ներառնում է կոմունիստի վարքագծի նորմերի ամբողջ գու-

մարը, որոնք նրա համար դառնում են պարտադիր կոմունիստական կուսակցության շարքերն ընդունվելու պահից ի վեր և որոնցով նա պետք է աչքի ընկնի որպես կոմունիստ։ Դա ենթադրում է խիստ ինքնապահանջկոտություն, զսպվածություն ու կայունություն, կոլեկտիվում և հասարակության մեջ իր դերի, իր պարտականությունների ըմբռնում, սահմանում է վարքագծի նորմերը և պատշաճ հեղինակություն է տալիս կոմունիստին։ Ընդհանրացնելով կյանքի փաստերը, կարելի է ասել, որ մեզանում դեռևս կան կոմունիստներ, որոնք մոռացել են կուսակցության կանոնադրության այս պահանջները։ Կուսակցական կարգապահությունը յուրաքանչյուր կոմունիստի անկապտելի հատկանիշն է, բայց այդ պահանջներն անչափ ավելի են աճում այն կոմունիստների նկատմամբ, ովքեր ընտրվում են Կենտկոմի, կուսակցության քաղկոմների և շրջկոմների կազմում։

Կենտկոմի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների անդամները, հաշվառման մեջ գտնվելով իրենց սկզբնական կուսակցական կազմակերպությունում, պետք է պատասխանատվություն կրեն նրա աշխատանքի վիճակի համար, նրան օգնեն՝ կուսակցական աշխատանքն օրինակելի մակարդակի հասցնելու։

Անհրաժեշտ է կատարելագործել կուսակցական օրգանների նոմենկլատուրային աշխատանքը, առավելագույն չափով բարձրացնել պահանջկոտությունն ու պատասխանատվությունը կադրերի ուսումնասիրման, ընտրության և առաջքաշման գործում, խիստ պատասխան պահանջել այդ աշխատանքի վատ որակի համար։ Ըստ երևույթին, մենք պետք է ամենամոտ ապագայում այդ հարցն ուսումնասիրենք համակողմանի և լուծենք այնպես, որ սահմանենք յուրաքանչյուր օրգանի և նրա ղեկավարի անձնական հստակ պատասխանատվությունը կադրային աշխատանքի համար և որոշենք, թե ով ինչի համար է պատասխանատու տվյալ գործում։

Հանրապետության տնտեսական-քաղաքական ողջ կյանքի ու աշխատանքի յուրաքանչյուր բնագավառի հաջող ղեկավարման համար անհրաժեշտ է հստակ կազմակերպվածություն, կուսակցական և հասարակական կազմակերպությունների, պետական կառավարման բոլոր մարմինների ճշգրիտ փոխգործողություն, յուրաքանչյուր օղակի ամրապնդում և նրա գործարար ու հասարակական-քաղաքական հեղինակության բարձրացում։ Այս տեսակետից մենք մեծ և լրջորեն մտածված աշխատանք պետք է կատարենք, ղեկավարությունը կազմակերպենք այնպես, որ յուրաքանչյուր օրգան զբաղվի իր գործերով ու ֆունկցիաներով և պատասխանատվություն կրի դրա համար։

Ընկերնե՛ր։ Կենտկոմի ներկա պլենումին օբյեկտիվորեն զեկուցում տրվեց կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման գործում հանրապետության ձեռք բերած հաջողությունների մասին, ինչպես նաև օբյեկտիվորեն ցույց տրվեցին այն թերությունները, որոնք բացասաբար են ազդել մեր հաջողությունների աստիճանի վրա։

Մենք բոլորս պետք է իմանանք, որ առաջիկա աշխատանքը հեշտ չի լինի, այն կպահանջի լարել ուժերը, կամքը, բազմապատկել հմտությունն ու եռանդը ամենատարբեր բնագավառների խոշոր վճռական պրոբլեմներն ու հարցերը լուծելու համար։ Բոլոր ղեկավար օրգանները, ամենից առաջ կուսակցության Կենտկոմը, նրա բյուրոն, Մինիստրների սովետը և նրա նախագահությունը, կուսակցական շրջկոմներն ու քաղկոմները, մինիստրությունները, գերատեսչությունները ու նրանց կոլեգիաները, սովետական և մյուս օրգաններն ու կազմակերպությունները պետք է խորապես հասկանան առաջիկա մեծ աշխատանքի իմաստն ու ուղղությունը, հստակորեն տեսնեն այն ագնիվ նպատակն ու վեհ խնդիրները, որոնք Հայաստանի կոմունիստական կուսակցության առջև դրվել են ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունված որոշումներով։



Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, խստիվ ղեկավարվելով կուսակցական կյանքի լենինյան նորմերով, պարտավոր է ստեղծել և իրոք կստեղծի գործնական, լարված ստեղծագործական մթնոլորտ, որը կապահովի կադրերի վստահ աշխատանքը, կնպաստի ղեկավարման բոլոր օղակներում հարգալից և հոգատար փոխհարաբերությունների, լիակատար վստահության հաստատմանը՝ այդ ամենը օրգանապես զուգորդելով խիստ պահանջկոտության և պատասխանատվության հետ, կստեղծի բարյացակամության և իսկական խստապահանջ ընկերականության մթնոլորտ, որը միաժամանակ կբացառի ամեն կարգի զիջումներն աշխատանքի, կուսակցական և պետական սկզբունքներում, կբացառի լիբերալ վերաբերմունքն այդ սկզբունքներից և կարգապահությունից կատարվող շեղումների նկատմամբ։ (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր։

Հանրապետության կոմունիստները միահամուռ կերպով հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումի որոշումներին, լայնորեն ծավալում են սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնում են իրենց ուժերը՝ հաջողությամբ կատարելու հնգամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները։ Այդ է մեր գալիք հաղթանակների գրավականը։

Թույլ տվեք հավաստիացնել մեր կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը պատվով կկատարի իր առջև դրված խնդիրները և, հավատարիմ մեծ Լենինի անմահ ուսմունքին, մշտապես կլինի սովետական ժողովրդի փառապանծ ավանգարդ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳԻՏԱԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Ա. Ա. ԲԱԴԱԼՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածու
Տ. Լ. ՔՈՉԱՐՅԱՆ

*ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԿԼԱՍԻԿՆԵՐԸ ցույց են տվել, որ խոշոր մեքենայական արտադրությունը գիտությունն աստիճանաբար վեր է ածում արտադրաուժի: Գիտության զարգացումն էապես ազդում է արտադրության նյութական տարրերի՝ աշխատանքի գործիքների և առարկաների վրա, կատարելագործվում են տեխնոլոգիական պրոցեսները, որակապես փոխվում է բանվորական ուժը. այս ամենի շնորհիվ բարձրանում է հասարակական աշխատանքի արտադրողականությունը: Արտադրության մեջ որքան արագ և լրիվ են իրացվում գիտական մտահղացումները, այնքան հաջողությամբ է գիտությունը վերածվում անմիջական արտադրաուժի: Ուստի, անտեսության զարգացման կարևորագույն պայմաններից մեկը գիտության նվաճումների արագ ներդրումն է արտադրության մեջ:*

*Փորձը, սակայն, վկայում է, որ նոր տեխնիկան և տեխնոլոգիան դեռևս դանդաղ են ներդրվում արտադրության մեջ: Հաճախ նոր մեքենաների նախագծերը յուրացվում և ներդրվում են ուշացումով, այդ պատճառով մինչև սերիական թողարկումը դրանք տեխնիկապես հնանում են, խիստ նվազում է սպասվելիք տնտեսական արդյունքը:*

*Տնտեսագետների հաշվումներով «հետազոտություն-արտադրություն» փուլի տևողությունը երկրում 8—10 տարի է, մեր հանրապետությունում՝ 5—10: Այսպես, քիմիա-տեխնոլոգիական արտադրությունում նոր տեխնիկան ստեղծվում և յուրացվում է (շինարարական աշխատանքների հետ) 9—12 տարում, որի հետևանքով գիտական հայտնագործությունների զգալի մասը հաճախ չի ներդրվում. մինչդեռ արտադրության առաջադիմական ճյուղերում յուրաքանչյուր 6—7 տարին մեկ նորացվում է թողարկվող արտադրանքը:*

*«Գիտությունը,— նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում,— իր դերը կարող է հաջողությամբ կատարել, եթե ապահովվի աշխատանքների ամբողջ կոմպլեքսի արագ իրագործումը՝ սկսած գիտական հետազոտություններից ու տեխնիկական լուծումներից մինչև դրանց արդյունքներն արտադրության մեջ արմատավորելը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 187*):

*Ինչպես հայտնի է, նոր տեխնիկայի ստեղծմանը և յուրացմանը, կիրառական հետազոտությունից մինչև սերիական արտադրություն, մասնակցում են տարբեր կազմակերպություններ ու ձեռնարկություններ (գիտահետազոտական ինստիտուտներ, նախագծա-կոնստրուկտորական ու տեխնոլոգիական հաստատություններ, արդյունաբերական ձեռնարկություններ և այլն), որոնք միմյանց վարչականորեն և տնտեսապես կապված չեն:*

*Գոյություն ունեցող կարգի համաձայն, ճյուղային գիտահետազոտական ինստիտուտները կիրառական հետազոտություններն ավարտելուց հետո արդյունքները հանձնում են նախագծային ու կոնստրուկտորական կազմակերպություններին: Այստեղ մշակվում են տեխնիկական փաստաթղթերը, պատրաստվում է փորձանմուշը, ապա արդյունաբերական ձեռնարկություններում սկսվում են նոր տեխնիկայի յուրացման, արտադրության նախապատրաստման և սերիական թողարկման աշխատանքները: Այս ողջ պրոցեսն էլ կոչվում է «հետազոտություն-արտադրություն» փուլ:*

*Այսպիսով, նոր տեխնիկայի ստեղծման ու յուրացման պրոցեսն իրականացնում են գիտական և արտադրական մի շարք կազմակերպություններ, որոնցից յուրաքանչյուրն ունի իր կոնկրետ պարտականություններն ըստ առանձին տեղամասերի և պատասխանատու է հենց այդ տեղամասի աշխատանքի համար: Գիտական կազմակերպություններից և ոչ մեկը պատասխանատու չէ «հետազոտություն-արտադրություն» ողջ փուլի իրականացման, դրա տևողության կրճատման և, որ կարևոր է, նոր տեխնիկայի ժամանակին յուրացման ու ներդրման համար: Բացի այդ, նշված օղակներում թերի է պլանավորման, ֆինանսավորման և տնտեսական խթանման գործող կարգը:*

*Արդյունաբերության աշխատողները, լավ գիտակցելով նոր տեխնիկայի նշանակությունն ու դերն արտադրության արդյունավետության բարձրացման գործում, միաժամանակ բավարար չափով շահագրգռված չեն ժամանակին ներդնելու այն. Նոր ստեղծվող մեքենաները սկզբնական շրջանում ավելի աշխատատար են, քան հները, որոնց արտադրությունը ձեռնարկություններում վաղուց յուրացվել է: Մյուս կողմից, նոր արտադրանքը, որպես կանոն, ենթադրում է չնախատեսված մեծ ծախսեր, կապված դրա յուրացման, արտադրության նախապատրաստման և մասսայական թողարկման հետ: Գաղտնիք չէ, որ հաճախ նոր արտադրանքը թողարկվում է վնասով կամ ցածր շահութաբերությամբ: Օրինակ, Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանում 1973 թվականին և 1974 թ. առաջին կիսամյակում յուրացվել է ասբոցեմենտե խողովակների համար օղակների արտադրությունը, որի մեծածախ գինը յուրաքանչյուր կգ-ի համար 1 ռ. 98 կ. է, երբ փաստացի ինքնարժեքը կազմում էր 2 ռ. 48 կ.: Ասբոցեմենտե խողովակների համար օղակները թողարկվում էին ավելի քան 20 տոկոս վնասով, մինչդեռ գործարանային արտադրության միջին շահութաբերությունն ըստ ինքնարժեքի կազմում էր 9,2 տոկոս: Ուրեմն, նոր արտադրատեսակների արտադրությունը սերիական թողարկման առաջին երկու տարիներին բացասաբար է անդրադառնում ձեռնարկության գործունեության վրա, իջեցնում տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Կրճատվում է արտադրանքի իրացման և շահույթի ծավալը, ընկնում շահութաբերության մակարդակը, նվազում են տնտեսական խրախուսման ֆոնդերի հատկացումների չափը և աշխատողների նյութական շահագրգռվածությունը:*

*Գործնականում քիչ չէ պատահում, երբ ձեռնարկությունները ստանալով նոր մեքենայի փորձանմուշը կամ նախագծերը, կոնստրուկտորական բյուրոյում դրանք փոփոխում են, հարմարեցնում իրենց արտադրության տեխնոլոգիային՝ արտադրության տեխնոլոգիան նոր արտադրանքի թողարկման պահանջներին հարմարեցնելու փոխարեն: Նման դեպքում փոփոխվում են արտադրանքի տեխնիկա-տնտեսական պարամետրերը, երբեմն էլ սերիական թողարկումից հետո պատրաստի մեքենան խիստ տարբերվում է գլխավոր նմուշից: Պատճառը պարզ է: Նոր տեխնիկա ստեղծող կոնստրուկտորը, հետազոտողը, մշակողը և պատրաստողը գործում են միմյանցից անջատ, տարբեր կազմակերպություններում ու ձեռնարկություններում. Նրանց միջև սերտ փոխգործողություն չկա, և որևէ փոքր հարցի լուծման համար վատնվում է հսկայական ժամանակ: Դրա հետևանքով ձգձգվում է արտադրանքի ստեղծման ու յուրացման պրոցեսը, ընկնում որակը, այն այլևս չի համապատասխանում ժամանակի պահանջներին:*

*«Հետազոտություն-արտադրություն» փուլի տևողության կրճատման և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար անհրաժեշտ է գիտության ու արտադրության առավելագույն մերձեցում: Դա կարելի է իրականացնել միավորումների ստեղծման միջոցով, որոնք ընդգրկելով նոր տեխնիկայի ստեղծման և իրացման գիտաարտադրական օղակները, հնարավորություն*

տեխնիկական մակարդակը ճյուղային ատեստացիայի տվյալներով կազմում է (տոկոսներով)՝

| | 1969 թ. | 1972 թ. |
|---|---|---|
| Որակի բարձր կարգ | 7,0 | 22,5 |
| » առաջին կարգ | 44,0 | 53,5 |
| » երկրորդ կարգ | 49,0 | 24,0 |
| Ընդամենը | 100 | 100 |

Ակներև է, թե միավորման գործունեության երեք տարում որակի բարձրացման ինչպիսի մեծ տեղաշարժ է կատարվել:

Նախատեսվում է իններորդ հնգամյակի տարիներին բարձր կարգի արտադրանքի տեսակարար կշիռը հասցնել 55 տոկոսի և իսպառ վերացնել երկրորդ կարգի արտադրանքը: Արտադրաորակի բարձրացման շեշտակի վերելք կա նաև մյուս միավորումներում: Արտադրության ընդհանուր ծավալում նոր արտադրանքի տեսակարար կշիռը 1972 թ. «Էլեկտրակերամիկա» ԳԱՄ-ում ավելացել է մոտ 2,6, իսկ «Կոնդենսատոր»-ում՝ ավելի քան 2 անգամ:

Գիտաարտադրական միավորումներում հաջողությամբ կարելի է կենտրոնացնել գիտատեխնիկական, պլանային, արտադրական, ֆինանսական, հաշվառման և այլ ծառայությունները, տնտեսել աշխատանքային, նյութական ու ֆինանսական զգալի ռեսուրսներ: Այսպես, Լենինգրադի «Պոզիտրոն» ԳԱՄ-ում վարչական ապարատից կրճատվեց 350 աշխատող, «Պլաստպոլիմերում» 50-ի փոխարեն ստեղծվեց 26 բաժին[1]:

Գիտաարտադրական միավորումներում նոր տեխնիկայի ստեղծման հետ միաժամանակ, մասսայական արտադրության համար, սեղմ ժամկետում են պատրաստվում տեխնոլոգիական սարքավորումները և հարմարանքները: Դյուրին է դառնում դետալների, հանգույցների ունիֆիկացման, նորմալացման և ստանդարտացման միասնական քաղաքականության իրականացումը: Հաջողությամբ են լուծվում աշխատանքային ու նյութական տիպային նորմատիվների մշակումն ու կիրառումը: Ռացիոնալ են կազմակերպվում նյութատեխնիկական մատակարարումը, ֆինանսական միջոցների մանևրումը և այլն, իսկ այս ամենի շնորհիվ բարելավվում են և՛ ամբողջությամբ վերցրած ԳԱՄ-ի, և՛ նրա առանձին ստորաբաժանումների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները:

Պետք է նշել, որ գիտաարտադրական միավորումների աշխատանքներում գոյություն ունեն նաև ինչպես կազմակերպչական, այնպես էլ մեթոդոլոգիական բնույթի մի շարք թերություններ: Այսպես, չնայած ԳԱՄ-ները գործում են արդեն 5—6 տարի, բայց դեռևս չկա ընդհանուր տիպային կանոնադրություն գիտաարտադրական միավորումների կազմավորման, տնտհաշվարկի կազմակերպման, տնտեսական խրախուսման ֆոնդերի ստեղծման և օգտագործման վերաբերյալ: Մինչ այժմ չեն մշակված ԳԱՄ-ների տնտեսական գործունեության արդյունքների պլանավորման և գնահատման միասնական ցուցանիշներ:

Փորձը ցույց է տվել, որ գիտաարտադրական միավորումների գործունեության առավել թույլ օղակներից է նոր արտադրանքի սերիական թողարկումը: Յուրացված արտադրանքը հարկավոր է անմիջապես «ընթացքից» հանձնել սերիական արտադրությանը: Դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ միավորումներն ունենան մասսայական արտադրության ձեռնարկություններ: Օրինակ «Պլաստպոլիմեր» գիտաարտադրական միավորումը մշակել է ժողտնտեսության համար կարևոր թունաքիմիկատների և կենցաղային իրերի փաթեթավորման համար ջրալուծվող սպիրտային պոլիվինիլային թաղանթ, այդ աշխատանքներն սկսվել և ավարտվել են 1970 թ., իսկ տեխնիկական բոլոր փաստաթղթերը մշակվել են 1971-ին: Միավորումն իր փորձնական արտադրությունում կազմակերպել է այդ արտադրանքի թողարկումն, որն, ինարկե, չի կարող բավարարել սպառողների լրիվ պահանջը: ԳԱՄ-ը սերիական արտադրության համապատասխան ձեռնարկություն չունենալու պատճառով, ժողտնտեսության մեջ պահանջարկ ունեցող այդ թաղանթի թողարկումը կիրականացնի միայն 1976-ին Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում: «Էլեկտրապարատ» միավորման մշակած արտադրանքի զգալի մասը ևս նույն պատճառով չի ներդրվում արտադրության մեջ: Այդ գործը համեմատաբար լավ է կազմակերպված «Ակումուլյատոր», «Պոզիտրոն» գիտաարտադրական միավորումներում, որտեղ ստեղծված յուրաքանչյուր նոր տեսակի արտադրանքի թողարկումը կատարվում է ԳԱՄ-ի սերիական արտադրության գործարանում:

[1] Վերոհիշյալ բոլոր տվյալները վերցված են տարեկան հաշվետվություններից և սկզբնական փաստաթղթերից:



Արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման կարևոր պայմաններից մեկը միավորման մեջ պատենտային աշխատանքի արմատավորումն է: Այժմ մի շարք գիտաարտադրական միավորումներում ստեղծված են հատուկ պատենտալիցենզային խմբեր կամ բաժիններ: Դրանք ինֆորմացիա են հավաքում գիտության այս կամ այն բնագավառի նվաճումների վերաբերյալ: Դա խիստ անհրաժեշտ է, որովհետև անհնար է ապահովել գիտատեխնիկական զարգացման բարձր մակարդակ, առանց կիրառելու մյուս երկրների ձեռք բերած փորձը և գիտական հայտնագործությունները: Պատենտային նյութերի ու ինֆորմացիայի ժամանակին ուսումնասիրությունը թույլ է տալիս բացահայտել արտադրաուժերի զարգացման տեղաշարժը, տեխնիկայի զարգացման տենդենցը, որը շատ կարևոր է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման համար:

Գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը հնարավոր չէ առանց համաշխարհային գիտատեխնիկական առաջընթացի լայն ինֆորմացիայի: Ուստի, համաշխարհային ստանդարտների մակարդակին համապատասխանող արդի տեխնիկայի մշակումները կազմակերպելու, իրականացնելու և դրանց ներդրման ժամանակ պատահական սխալներից խուսափելու համար, անհրաժեշտ է հետևողականորեն ուսումնասիրել հայրենական ու արտասահմանյան պատենտային նյութերը: Իսկ այս աշխատանքների հաջող իրականացման կարևոր ազդակ են գիտաարտադրական միավորումները:

Գիտաարտադրական միավորումների նշված առավելությունները ծանրակշիռ հիմք են այդ միավորումների կազմակերպումն է՛լ ավելի արագացնելու համար: Սակայն պետք է նշել, որ արդյունավետ այդ միջոցառմանը մեր հանրապետությունում պատշաճ ուշադրություն չի նվիրվում, թեև ՀՍՍՀ ժողտնտեսության զարգացման 1971—1975 թթ. պետական հնգամյա պլանի և ՀՍՍՀ ժողտնտեսության զարգացման 1972 թ. պետական պլանի մասին նյութերում ուղղակի ասված է. «Գիտական աշխատանքները բարձր մակարդակով իրականացնելու համար պետք է ամրապնդել հետազոտությունների փորձնական արտադրաբազաները, առավել մեծ ուշադրություն դարձնել գիտաարտադրական միավորումների ստեղծմանը»: Գիտատեխնիկական առաջընթացի կազմակերպման և կառավարման այդ առաջավոր ձևի՝ գիտաարտադրական միավորման ստեղծման համար մեզ մոտ կան բոլոր պայմանները: Այսպես, Հայաստանում վաղուց արդեն գործում են մաթեմատիկական մեքենաների մշակման գլխադաս ինստիտուտը, ինչպես և հաշվողական տեխնիկա թողարկող երկու գործարան: Վերջերս ստեղծվել են այդ գործարաններից մեկի՝ «Էլեկտրոնի» մասնաճյուղերը Երևանում, Էջմիածնում և Ղափանում:

Մեր հանրապետությունում հաշվողական տեխնիկայի արտադրության հետագա զարգացման և այդ ձեռնարկությունների գործունեությունների կոորդինացման ու մասնագիտացման կատարելագործման, ինչպես և նոր տեխնիկան արտադրության մեջ արագ ներդրման համար անհրաժեշտ է միավորել հաշվողական տեխնիկայի ստեղծման, իրացման գիտական և արտադրական կազմակերպությունները: Մեր կարծիքով, այդ ԳԱՄ-ի մեջ կարելի է մտցնել.

— Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը: Այն զբաղվում է էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկայի մշակմամբ, որը և կլինի ԳԱՄ-ի գլխադաս կազմակերպությունը.

— Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի փորձնական գործարանը, որը պատրաստում է նոր արտադրանքի փորձանմուշները.

— Երևանի «էլեկտրոն» գործարանը։ Այստեղ կենտրոնացված են էլեկտրոնային-հաշվիչ մեքենաների և հատուկ հաշվողական կոմպլեքսների մասսայական արտադրության արտադրական հիմնական կարողությունները.

— «էլեկտրոն» գործարանի էջմիածնի մասնաճյուղը, որը մասնագիտացված է ֆերիտային միջուկների վրա օպերատիվ և երկարաժամկետ հիշողության սարքերի թողարկմամբ։

Այս միավորման մեջ կարելի է ներառել նաև «էլեկտրոն» գործարանի Երևանի և Ղափանի մասնաճյուղերը։

Գիտաարտադրական միավորում անհրաժեշտ է կազմակերպել նաև կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բազայի հիման վրա։ Դա հնարավորություն կընձեռի նոր տեսակի էլեկտրասարքավորումներն արագորեն ներդնել արտադրության մեջ։

Ապագան պատկանում է գիտաարտադրական միավորումներին։ Դրանց կազմակերպումը, կառավարման կատարելագործումը մեծապես կնպաստեն տեխնիկական առաջընթացի արագացմանը, նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման ժամկետների կրճատմանը, արտադրանքի որակի բարձրացմանը, ինչպես նաև նյութական ու աշխատանքային ռեսուրսների զգալի կրճատմանը։

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ, ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ* միևնույն միասնական մատերիական աշխարհի տարբեր կողմերն են։ Մարդը բնության զավակն է, նրա զարգացման բարձրագույն արտահայտությունը։ Հասարակության գոյությունը և զարգացումն անհնարին են առանց բնական միջավայրի, առանց բնության հետ մարդկանց որոշակի հարաբերության, որի ընթացքում արտադրվում են անհրաժեշտ գոյամիջոցները։ Ուստի հասարակության և բնության փոխազդեցության պրոբլեմը մշտապես գտնվել է մարդկանց գործնական ու ճանաչողական հետաքրքրության ոլորտում, չնայած նրա բնույթը, ընդգրկման շրջանակները և հարցադրման խորությունը պատմականորեն փոխվել են՝ կախված հասարակական պահանջմունքներից, գիտության ու տեխնիկայի զարգացման մակարդակից, հասարակարգի բնույթից և այլն։

Այդ պրոբլեմի տարբեր ասպեկտների ուսումնասիրությամբ զբաղվում են բնական, տեխնիկական և հասարակական բազմաթիվ գիտություններ։ Հետազոտման կոնկրետ բնագավառների առջև ծառացող խնդիրների փիլիսոփայական իմաստավորման միջոցով դիալեկտիկական մատերիալիզմը կապ է հաստատում էկոլոգիական պրոբլեմով զբաղվող տարբեր գիտությունների միջև։ Ժամանակակից էկոլոգիական իրադրության փիլիսոփայական վերլուծությունը հնարավորություն է տալիս ընդհանուր մեթոդաբանական մակարդակով բացահայտել նրա զարգացման հիմնական տենդենցները, որոշել էկոլոգիական աններդաշնակությունների վերացման առավել ընդհանուր սկզբունքներն ու ուղիները։

*ԸՆԴՀՈՒՊ ՄԻՆՉԵՎ XIX ԴԱՐԻ ԿԵՍԵՐԸ* փիլիսոփայական ու հատուկ գիտական համակարգերում բնական միջավայրը դիտվում էր իբրև մարդու նկատմամբ բացառապես արտաքին և որոշ իմաստով նրան հակադիր մի ֆենոմեն, գոյամիջոցների մի անսպառ շտեմարան, որից հասարակական էակը վերցնում է իրեն անհրաժեշտ ամեն ինչ՝ բնավ չմտահոգվելով իր գործունեության հետևանքներով։ Մարդու և բնության փոխհարաբերության պրոբլեմն այդ փուլում գերազանցապես հանգեցվում էր նրան, թե գիտության ու տեխնիկայի նվաճումները որքանով են հնարավորություն տալիս իշխելու բնության ուժերի վրա, վերցնելու բնությունից այն ամենը, ինչ անհրաժեշտ է մարդուն։ Եվ դա հասկանալի է։ Երկրագնդի բնակչության համեմատաբար փոքրաթիվ լինելը, բնական միջավայրի վրա մարդկանց ներգործության սահմանափակ հնարավորությունները, որ պայմանավորված էր արտադրաուժերի, ինչպես նաև գիտության ու տեխնիկայի զարգացման այն ժամանակվա մակարդակով, մյուս կողմից՝ բնական պաշարների առատությունն ու գործնական անսպառելիությունը հիմք էին հանդիսանում մարդու և բնության փոխհարաբերության այդպիսի ըմբռնման համար։

Վիթխարի չափով զարգացնելով արտադրաուժերը, մեծացնելով մարդու տիրապետությունը բնության նկատմամբ, կապիտալիզմը միաժամանակ բե-

րը կանխատեսելու համար Աճի սահմանները աշխատության հեղինակները ձգտում են հանդես բերել կոմպլեքսային մոտեցում: Այդ նպատակով նրանք վերցնում են մի շարք պարամետրեր՝ ազգաբնակչության աճը, բնական պաշարների ծավալը, շրջակա միջավայրի աղտոտման աստիճանը և փորձում են պարզել այդ գործոնների ազդեցության գումարային արդյունքը՝ նրանցից յուրաքանչյուրի փոփոխման տարբերակների դեպքում: Այսպես, բնական պաշարների օգտագործման արդյունավետության մեծացումը, ըստ այդ տեսակետի, կարող է թուլացնել կամ վերացնել քաղցի և անապահովվածության վտանգը, բայց դա կհասցնի արտադրության այնպիսի շեշտակի աճի և դրա հետ կապված շրջակա միջավայրի աղտոտման, որը մարդու կենսագործունեության համար երկրագնդի վրա կստեղծի անտանելի պայմաններ: Ո՞րն է ելքը: Ըստ այդ կոնցեպցիայի, սպասվող աղետից խուսափելու արմատական միջոցը քննարկվող բոլոր պարամետրերի (ազգաբնակչության, արտադրության և սպառման, շրջակա միջավայրի աղտոտման) աճի դադարեցումը և, մի ինչ-որ «համաշխարհային հավասարակշռության», ընդհանուր հաստատունության սահմանումն է («էկոլոգիական պեսիմիզմի» կոնցեպցիայի մանրամասն քննադատությունը տես Ն. Կ. Ֆեոդորով, Ի. Բ. Նովիկ. Բնական միջավայրի հետ մարդու փոխազդեցության պրոբլեմներ. («Вопросы философии», 1972, № 12):

Այսպիսով, հետազոտման ոչ ճիշտ մեթոդը կանխորոշում է պրոբլեմի սխալ լուծումը: Հասարակությունը մի սոցիալական օրգանիզմ է, որի զարգացման տարբեր պարամետրերը միմյանց հետ կապված են ուղիղ և հետադարձ կապերով: Ուստի, ինչպես իրավացիորեն նշում են Ն. Ֆեոդորովը և Ի. Նովիկը, չի կարելի հասարակության զարգացման այդ պարամետրերից յուրաքանչյուրի աճը արտաբերել նրա արդի տենդենցների հիման վրա՝ անտեսելով այդ կապերը և փոխազդեցությունը: Այսպես, ազգաբնակչության աճի արդի տենդենցներն անփոփոխ չեն պահպանվի ապագայում: Ինչպես ցույց է տալիս զարգացած երկրների փորձը, կյանքի ուրբանիզացիան հանգեցնում է ազգաբնակչության աճի տեմպերի դանդաղեցմանը: Չի բացառվում նաև հասարակության կողմից բնակչության աճի գիտակցական կարգավորումը: Այժմ աշխարհում բոլոր ընտանիքների մոտ 30 տոկոսը գիտակցաբար կարգավորում է սերնդի աճը: Եվ հավանաբար այդ տոկոսն աճելու է:

Մյուս կողմից, բնական հանածոների ամբողջությունն անընդհատ պակասելու ենթակա մի անփոփոխ մեծություն չէ: Ակադեմիկոս Ի. Մ. Գուբկինի գնահատմամբ, նավթի հետախուզված համաշխարհային պաշարները 1937 թ. կազմում էին 7077,2 միլիոն տոննա: Եվ չնայած նավթի համաշխարհային հանույթը 1900 թ. համեմատությամբ այժմ ավելացել է ավելի քան 50 անգամ, բայց անընդհատ ավելանում են նաև հետախուզված պաշարները: Վերջին տարիների ընթացքում միայն կապիտալիստական երկրներում այդ պաշարներն աճել են 7 անգամ: 1958 թ. նավթի հետախուզված պաշարները 42 անգամ գերազանցում էին 1957 թվականի արդյունահանման մակարդակը (Н. А. Быховер, Экономика минерального сырья, М., 1967, стр. 92, 114): Հետախուզված պաշարների աճի և արդյունահանման տեմպերի աճի այսպիսի համամասնությունը բնութագրական է նաև հանքային հարստությունների մյուս հիմնական տեսակների համար: Այսպես, 1937 թ. քարածխի համաշխարհային պրոգնոզային երկրաբանական պաշարները սահմանվեցին 79.916 միլիարդ տոննա, իսկ 1956 թ. միայն ԱՄՆ-ում կոնդիցիոն քարածուխների երկրաբանական պաշարները, որոնք ընկած են մինչև 1.800 մետր խորության մեջ, հասնում էին 8.669 միլիարդ տոննայի: Քարածխի համաշխարհային արդյունահանումը 1963 թ. կազմեց 2,2 միլիարդ տոննա, իսկ գորշ ածխինը՝ 700 միլիոն (նույն տեղը, էջ 160, 161, 168): 1959 թ. գազի համաշխարհային պրոգնոզային պաշարները հավասար էին 170 տրիլիոն խորանարդ մետրի: 1964 թ. գազի ապրանքային արդյունահանումը կազմեց 654,2 միլիարդ խորանարդ մետր (նույն տեղը, էջ 128, 134): Երկաթահանքի համաշխարհային երկրաբանական պաշարները գործնականում անսահմանափակ են:

Այսպիսով, օգտակար հանածոների և էներգիայի բնական պաշարները



գործնականում գրեթե անսպառ են, եթե նկատի ունենանք երկրի ընդերքի խորքերն ու տիեզերական տարածությունը, որոնք տարբեր պատճառներով մարդը դեռևս չի կարող լիովին օգտագործել, բայց տեխնիկայի ու գիտության զարգացման շնորհիվ այդ ամենը նրա համար մատչելի կդառնան ապագայում: Իհարկե, չվերականգնվող բնական հարստության ընդհանուր ծավալն անընդհատ պակասում է: Սակայն, ինչպես վկայում է պրակտիկան, մարդը շարունակում է բավարարել իր աճող պահանջմունքները: Տեխնիկայի և տեխնոլոգիայի զարգացմանը համեմատ արմատապես փոխվում է այն պատկերացումը, թե բնության որ տարրերը կարելի է համարել մարդու օգտագործման համար պիտանի և որը՝ ոչ: Գիտության և տեխնիկայի զարգացումը հնարավորություն է տալիս նոր միջոցներ և եղանակներ գտնել մարդկանց պահանջմունքների բավարարման համար: Դա թուլացնում է մարդու կախվածությունը բնական հարստությունների որոշակի տեսակներից: Գիտությունն անընդհատ հայտնագործում է սննդի, զանազան նյութերի, էներգիայի նկատմամբ մարդու պահանջմունքների բավարարման սկզբունքային նոր միջոցներ: Գյուղատնտեսությունը դեռևս զարգացման վիթխարի պոտենցիալ հնարավորություններ ունի, բայց արդեն ստեղծվել է սինթետիկ գործվածքների հզոր արդյունաբերություն, նշագծվում են սինթետիկ սնունդ ստանալու առաջին հաջողությունները: Այդ ամենը վկայում է, որ մարդը սկզբունքորեն ունակ է լուծելու «ամեն ինչից» «ամեն ինչ» պատրաստելու պրոբլեմը և անշեղ մոտենում է դրան: Իսկ երկրի վրա նյութի անվերադարձ ծախսումը դեռևս աննշան է: Այն կապված է ջերմամիջուկային ու ատոմային էներգիայի ստացման պրոցեսների և երկիր չվերադարձող տիեզերական ապարատների արձակման հետ:

Այսպիսով, մարդու հիմնական պահանջմունքները բավարարելու մեր մոլորակի հնարավորություններն աճում են ավելի արագ, քան ազգաբնակչությունը: Լենինը նշել է, որ «հողի նվազող պտղաբերության օրենքը» կարող է սոսկ պայմանական նշանակություն ունենալ միայն այն դեպքում, երբ տեխնիկան մնում է անփոփոխ և ընդհակառակը կիրառելի չէ տեխնիկական առաջընթացի պայմաններում:

Էկոլոգիական ճգնաժամը կարող էր վրա հասնել մարդկության զարգացման ցանկացած էտապում, եթե տեխնիկան չառաջադիմեր, ինչպես դա տեղի է ունենում կենդանական աշխարհում, երբ որոշ արեալում կենդանիների թվական աճը գերազանցում է օգտագործվող պաշարների ծավալը:

Անընդունելի է նաև այն պնդումը, թե միջավայրի աղտոտման աճը անխուսափելիորեն կապված է արտադրության զարգացման և ազգաբնակչության աճի հետ: Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ԱՄՆ-ում վերջին 25 տարվա ընթացքում ազգաբնակչության մեկ շնչի հաշվով օդի, հողի և ջրի աղտոտման պրոցեսն աճել է 7—8 անգամ, իսկ արտադրությունը՝ ընդամենը 50 տոկոսով («Вопросы философии», 1972, № 12, стр. 49): Հետևաբար, շրջակա միջավայրի աղտոտումն ուղիղ համեմատական չէ արդյունաբերության աճին: Դա կապված է արտադրության տեխնոլոգիական նոր պրոցեսների կազմակերպման հետ (արտադրության քիմիացում, սինթետիկ նյութերի օգտագործում և այլն): Արդի գիտությունը հնարավորություն է տալիս մաքրման հատուկ կառույցների միջոցով կանխել կամ նվազագույնի հասցնել շրջակա միջավայրի աղտոտումը, բայց դա վիթխարի կապիտալ ներդրումներ է պահանջում (ձեռնարկության արժեքի մինչև 25—30 տոկոսը), որը հակասում է մոնոպոլիաների՝ գերշահույթ կորզելու ձգտմանը:

Ամենաընդհանուր գծերով այսպիսին է գոյություն ունեցող բնական հավասարակշռությունն անփոփոխ պահելու էկոլոգիական ստրատեգիան, որը ոչ միայն խոցելի է մեթոդաբանական տեսակետից, այլև ծնում է անկումային տրամադրություններ և հոռետեսական պատկերացումներ մարդկության ապագայի նկատմամբ:

Էկոլոգիական պրոբլեմի քննարկման ժամանակ դրսևորվող մյուս ստրատեգիական գիծը, ինչպես նշվեց, ելնում է գոյություն ունեցող բնական հավասարակշռությունը որոշակի սահմաններում փոփոխելու հնարավորության և անհրաժեշտության ըմբռնումից:

Ինչպես նշում է Կ. Մարքսը, մարդը կենդանուց տարբերվում է ամենից առաջ հենց նրանով, որ փոխում է բնության առարկաները, նյութերը՝ դրանք հարմարեցնում իր պահանջմունքներին։ Բայց իր բազմադարյան գոյության ընթացքում մարդկությունը բնության տարերային ուժերի կործանարար ազդեցությունից պաշտպանվել է՝ առավելապես հարմարվելով բնական միջավայրին։ Գիտության և տեխնիկայի զարգացման համեմատաբար ցածր մակարդակը, ընդհուպ մինչև XX դարի սկիզբը, անհնարին էր դարձնում մեծ մասշտաբներով բնական միջավայրի արմատական վերափոխումը։ Կարելի է ասել, որ այժմ ավարտվում է մարդկության զարգացման այդ փուլը։

ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆ արմատապես փոխել է մարդու ու բնության փոխհարաբերության և՛ մասշտաբները, և՛ բնույթը։ Մեր ժամանակներում մարդու անմիջական պրակտիկ գործունեության ասպարեզ է դարձել ոչ միայն երկրի ամբողջ մակերեսը, այլև նրա ընդերքը, համաշխարհային օվկիանոսի խորքերը։ Մարդը դուրս է եկել երկրի սահմաններից և գործնականում յուրացնում է մերձավոր տիեզերքը։ Այսպիսով, տառացիորեն մի սերնդի կյանքի ընթացքում էապես փոխվում է «բնական միջավայր» հասկացության բովանդակությունն ինչպես ընդգրկման շրջանակներով, այնպես էլ նրանում խտացած ինֆորմացիայի ծավալով։ Մասնավոր գիտականից այն դառնում է ընդհանուր գիտական, փիլիսոփայական հասկացություն։

Գիտության և տեխնիկայի արդի նվաճումներն ավելի ու ավելի են համոզում, որ չի կարելի բնությունը դիտել իբրև մարդու նկատմամբ արտաքին ինչ-որ մի բան։ Այդ առթիվ Ֆ. Էնգելսը գրում է. «Եվ այսպես, յուրաքանչյուր քայլափոխում փաստերը մեզ հիշեցնում են, որ մենք ամենևին էլ բնության վրա չենք իշխում այնպես, ինչպես նվաճողն է իշխում օտար ժողովրդի վրա, չենք իշխում բնության վրա այնպես, ինչպես բնությունից դուրս գտնվող որևէ մեկը,— այլ որ մենք, ընդհակառակը, մեր մարմնով, արյունով և ուղեղով պատկանում ենք նրան ու գտնվում ենք նրա ներսում, որ մեր ամբողջ տիրապետությունը նրա նկատմամբ այն է, որ մենք, ի տարբերություն մյուս բոլոր էակների, կարողանում ենք ճանաչել նրա օրենքները և ճշտորեն կիրառել դրանք» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, 1969, էջ 178—179)։ Ահա թե ինչու մարդու և բնության փոխհարաբերությունն օպտիմալ կերպով կազմակերպելու համար անհրաժեշտ է բնական միջավայրին մոտենալ իբրև սոցիոգեո համակարգի տարրերից մեկի, այսինքն՝ ավելի ամբողջական և ընդգրկուն դիտել մարդու և բնության փոխազդեցությունը։

Գիտատեխնիկական հեղափոխության մեր ժամանակներում հասարակությունն ավելի ու ավելի մեծ չափերով է դիմում բնության վերականգնվող պաշարների նպատակային ավելացմանը և ողջ մոլորակի մասշտաբով բնական միջավայրի վերափոխմանը։ Մարդու վերափոխիչ գործունեությունը վիթխարի մասշտաբների է հասել։ Հասարակությունը հսկայական քանակությամբ բնական նյութեր է ներգրավում արտադրական պրոցեսների մեջ և վերափոխված ձևով կրկին վերադարձնում բնական միջավայր։ Ընդ որում, շնորհիվ տեխնոլոգիական նորագույն պրոցեսների, որոնք կապված են արտադրության մեջ քիմիական ռեակցիաների և ատոմային էներգիայի մասսայական օգտագործման հետ, այժմ բնության նյութերը ենթարկվում են ոչ միայն արտաքին ձևական փոփոխությունների, ինչպես դա տեղի էր ունենում մեխանիկական մշակման ժամանակ, այլև ներքին կառուցվածքային փոփոխությունների՝ մոլեկուլային և ենթամոլեկուլային մակարդակով։ Այդ եղանակով ստեղծվում են նախապես սահմանված նոր հատկություններով նյութեր, որոնք բնության մեջ պատրաստի գոյություն չունեն և նրա կողմից յուրացվում են մեծ դժվարությամբ՝ երբեմն մի քանի սերունդների կյանքի տևողության ընթացքում։ Այդ ամենի ազդեցության ներքո փոխվում են բուսական և կենդանական աշխարհը, աշխարհագրական տեղանքը, բավական մեծ շրջանների միկրոկլիման, հողի, մթնոլորտի ու հիդրոմիջավայրի կազմը և վիճակը։

Այսպիսով, մարդու վերափոխիչ գործունեության ազդեցությամբ էապես փոխվում է նրա կենսագործունեության համար անհրաժեշտ բնական հիմքը, այսպես կոչված «առաջնային բնությունը» վերափոխվում է մարդկային գոր-



ծունեությամբ ստեղծված «երկրորդային բնության», նախապես տրված բիոսֆերան վեր է ածվում տեխնոբիոսֆերայի։ Բայց այդ փոփոխություններն իրենց հերթին «անտարբեր չեն» մարդկանց նկատմամբ և հետադարձ կերպով ազդում են նրանց վրա։ Մարդը և բիոսֆերան, հասարակությունը և բնության պրոցեսները սերտորեն միահյուսվում են փոխազդեցությունների մի միասնական ցանցի մեջ, ստեղծվում է մի ամբողջություն, որի մեջ ձուլվում են զարգացող հասարակությունը և նրա կողմից վերափոխվող բնությունը։ Այդ միասնությունը նշվում է նոոսֆերա, բանականության սֆերա հասկացությամբ։

Նոոսֆերայի առաջացումը ոչ թե հանգեցնում է բնական միջավայրի քաոսացմանը, այլ բարձրացնում է տիեզերքի՝ մեզ համար մատչելի մասի կազմակերպվածությունը։ Մեր մոլորակի բիոսֆերան օրգանական ձևերի տարերային կենսագործունեության արդյունք է և միաժամանակ մարդկային գիտակցական գործունեության օբյեկտ։ Բիոսֆերայի քաոսային խախտումներն անշուշտ անթույլատրելի են և ոչ ցանկալի։ Բայց գոյություն ունեցող վիճակը չի կարելի միակ հնարավորը համարել։ Մարդը կարող է միջամտել և հասարակության աճող պահանջմունքներին համապատասխան մեծացնել բիոսֆերայի արդյունավետությունն այդ բառի ամենալայն իմաստով։ Նպատակադրված փոփոխությունների միջոցով բիոսֆերայի օպտիմալացման ասպարեզում մարդու հնարավորություններն անսահման են։

Արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացումը մեր ժամանակում ստացել է համաշխարհային բնույթ։ Դրա հետևանքով աճել է ժողովուրդների փոխադարձ կախվածությունը։ Կապի մասսայական միջոցների բուռն աճը «մոտեցրել է» մոլորակի նույնիսկ ամենահեռավոր անկյունները, մի տեսակ «խտացրել է» նրա վրա տեղի ունեցող իրադարձությունները, դրանց հաղորդել գլոբալ բնույթ։ Շրջակա միջավայրն աղտոտումից պաշտպանելու, ազգաբնակչության աճի կարգավորման, համաշխարհային օվկիանոսի հարստությունների յուրացման և էկոլոգիական մի շարք այլ պրոբլեմներ գլոբալ են ոչ միայն ողջ մարդկության շահերը շոշափելու իմաստով, այլև այն պատճառով, որ կարող են լուծվել միայն ողջ մարդկության ջանքերով։

Այդ պրոբլեմի լուծման կարևորագույն առանձնահատկություններից մեկն այն է, որ էկոլոգիական որոշ պաշարներ չեն կարող փոխարինել միմյանց։ Օրինակ, սննդի տարբեր տեսակները կարող են փոխարինել միմյանց, բայց ջուրը չի կարող փոխարինել օդին, իսկ օդը՝ հողին, ինչպես, ասենք, էներգիայի տարբեր աղբյուրները։ Արդեն այժմ որոշ երկրներում իր ամբողջ սրությամբ ծառանում է քաղցրահամ ջրի պրոբլեմը, որի պաշարները երկրի վրա անվերջ չեն և ոչ հեռավոր ապագայում կարող են սպառվել կամ օգտագործման համար դառնալ ոչ պիտանի, եթե պահպանվեն նրա սպառման աճող մասշտաբները և արտադրական աղտոտման արդի տենդենցները։ Էկոլոգիական պրոբլեմի լուծման այդ առանձնահատկությունը մարդկանց պարտավորեցնում է մեծ զգուշությամբ և հոգատարությամբ վերաբերվել բնական միջավայրին, այնպես կազմակերպել հասարակական արտադրությունը, որ շրջակա միջավայրի ֆիզիկա-քիմիական փոփոխությունները չգերազանցեն նրա հետ փոխազդեցության մեջ գտնվող կենդանի օրգանիզմի և առաջին հերթին մարդու ադապտացիոն հնարավորությունների սահմանը։

ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՀՈՒՊ ՄՈՏԵՑԵԼ է գիտատեխնիկական արդի առաջընթացի վնասակար հետևանքների վերացման պրոբլեմի արմատական լուծմանը։ Բուրժուական գիտնականներից շատերը փորձում են ապացուցել, թե գիտատեխնիկական առաջընթացի «ախտերը» կարելի է բուժել միայն տեխնիկայի ու գիտության հետագա կատարելագործման և դրանց նորագույն նվաճումների հիման վրա, եթե հասարակությունը ցուցաբերի անհրաժեշտ զգուշություն։ Դժվար չէ տեսնել, որ այդ դեպքում անտեսվում է սոցիալական գործոնի դերը գիտատեխնիկական հեղափոխության բացասական հետևանքները վերացնելու գործում։

Իրականում գիտատեխնիկական առաջընթացն ինքնաբերաբար չի կարող լուծել այդ պրոբլեմը։ Հասարակության և բնության միջև ներդաշնակ փոխազդեցության հաստատումը հնարավոր է միայն որոշակի սոցիալական հիմքի

վրա։ Մասնավոր սեփականատիրական հասարակության մեջ գերշահույթ կորզելու ձգտումն անհաշտելի հակասության մեջ է ամբողջովին վերցրած հասարակության շահերի հետ, մի հանգամանք, որն էապես խանգարում է այդ պրոբլեմի լուծմանը հօգուտ ամբողջ հասարակության։ Ի դեպ, դա հասկանում են նաև կապիտալիստական աշխարհի որոշ գիտնականներ ու հասարակական գործիչներ, թեև խուսափում են դրանից բխող արմատական հետևություններից, փորձում են պրոբլեմի կոմպրոմիսային լուծման միջոցներ գտնել կապիտալիստական հասարակության շրջանակներում։ Կապիտալիստական զարգացած երկրների արդի էկոլոգիական իրադրության և նրա զարգացման տենդենցների անաչառ վերլուծությունը վկայում է, որ մարդկությունը չի կարող խուսափել էկոլոգիական ճգնաժամի սպառնացող վտանգից՝ առանց կապիտալիստական տնտեսական և սոցիալական համակարգի արմատական վերափոխման։

Միայն սոցիալիզմն է հնարավորություն տալիս հիմնովին լուծելու արդի գիտատեխնիկական հեղափոխության վնասակար հետևանքների վերացման բարդ խնդիրը, որը կենսական նշանակություն ունի մարդկության համար։ Սոցիալիզմի ժամանակ հասարակության և բնության փոխազդեցության պրոբլեմների կարգավորման տնտեսական հիմքը արտադրության միջոցների հանրային սեփականության վրա հիմնված պլանային արտադրությունն է, սոցիալիստական արտադրաեղանակը, որը բացառում է հակասությունները հասարակության և նրա առանձին անդամների հիմնական շահերի միջև։ Նոր պայմաններում էկոլոգիական պրոբլեմների լուծման քաղաքական հիմքը սոցիալիստական իրավական-պետական կարգն է։

Իրավական հատուկ ակտերի միջոցով սոցիալիստական պետությունը կարգավորում է բնական հարստությունների կոմպլեքսային, արդյունավետ և առավել ռացիոնալ օգտագործումը քաղաքացիների, կոլեկտիվների ու կազմակերպությունների կողմից։ Արտադրության կեղտաջրերով, վնասակար նյութերով և մնացուկներով մթնոլորտային օդի, անտառների, ջրերի, երկրի մակերևույթի ու ընդերքի աղտոտումը սոցիալիստական օրենսդրությունն արգելում է, իսկ մեղավորները պատասխանատվության են ենթարկվում։ Հաշվի առնելով հանքային հումքի սպառման անընդհատ աճը, ինչպես նաև օգտակար հանածոների անվերականգնելիությունը, սոցիալիստական հասարակությունը հոգ է տանում, որ գալիք սերունդները նույնպես հնարավորություն ունենան բավարարելու բնական հարստությունների հետ կապված իրենց պահանջմունքները։ Մարդու ապագայի նկատմամբ այդպիսի հոգատարությամբ է համակված **ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ընդերքի օրենսդրության հիմունքների** նախագիծը, որը մշակել և վերջերս հասարակության լայն քննարկմանն է ներկայացրել ՍՍՀՄ Մինիստրների սովետը։

Ինչպես ՍՍՀՄ-ում, այնպես էլ սոցիալիստական համագործակցության մյուս երկրներում հատկապես վերջին տարիներին մեծ մասշտաբների աշխատանքներ են տարվում բնական միջավայրը մարդու կենսագործունեության համար նպաստավոր պայմաններում պահպանելու, հասարակության ու բնության փոխազդեցության օպտիմալացման բնագավառներում։ Բավական է նշել մեր երկրում բնական միջավայրի վերափոխման և Բայկալ լճի ու Վոլգայի ջրերը արդյունաբերական աղտոտումից զերծ պահելու նպատակով իրականացվող վիթխարի միջոցառումները, որոնք արդեն այժմ նշանակալի արդյունքներ են տալիս։

Սոցիալիստական երկրների պրակտիկան համոզիչ կերպով ցույց է տալիս, որ այն կարող է կանխվել հասարակության սոցիալիստական վերակառուցմամբ։



# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԿՈՒՍԿՈՄԻՏԵՆ ԵՎ ԴՊՐՈՑԸ

Ա. Շ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևանի «Էլեկտրոն» գործարանի կուսկոմիտեի քարտուղար

Նոր սերնդի կրթությունն ու դաստիարակությունը մեր երկրում համաժողովրդական, կուսակցական և պետական խոշոր նշանակություն ունեցող գործ է։ Դպրոցական հաստատության և ընտանիքի հետ մեկտեղ՝ դրանով պետք է շահագրգռված լինեն նաև աշխատավորական կոլեկտիվները։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ասել է. «Ընտանիքի, դպրոցի, հասարակայնության ջանքերի միասնությունը սովետական մանկավարժության անկապտելի գիծն է» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 314)։

Արտադրական կոլեկտիվն ակտիվ միջամտությամբ կարող է ներազդել իր անդամների վրա, որպեսզի նրանք ավելի լրջորեն և պատասխանատվությամբ զբաղվեն իրենց դպրոցական երեխաների կրթությամբ ու դաստիարակությամբ։ Դպրոցն իր առջև ծառացած խնդիրները կարող է առավել հաջողությամբ լուծել, երբ ծնողի աշխատանքային կոլեկտիվն ըստ պատշաճի օգնում է դպրոցական գործին, ասում իր հեղինակավոր խոսքը։ Դա ինքնին ակտիվացնում է նաև ընտանիքի դերը։ Այս դեպքում սերտանում է նրանց կապը։ Այսպիսով, շատ կարևոր է, երբ աճող սերնդի կրթության և կոմունիստական դաստիարակության հարցերով միացյալ զբաղվում են դպրոցը, ընտանիքն ու արտադրական կոլեկտիվը՝ իր կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններով։ Այս իրողությունն ապացուցվում է «Էլեկտրոն» գործարանի կոլեկտիվի փորձով։

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ արտադրող մեր ձեռնարկության պատմությունն սկսվում է 1961 թվականից։ Նրա ծննդից 2—3 տարի անց այստեղ հետզհետե ստեղծվեցին լավ ավանդույթներ, որոնցից մեկը կոլեկտիվի անդամների և նրանց դպրոցական երեխաների հետ տարվող աշխատանքն է։ Այդ ավանդույթը ձևավորվեց դանդաղ, դրան նպաստող ձևերն ու մեթոդները մշակվեցին ոչ միանգամից։ Այժմ դժվար է պատկերացնել մեր կոլեկտիվի գործունեությունն առանց դպրոցականների հետ տարվող աշխատանքի։

Գործարանի դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական և ԼԿԵՄ կոմիտեները սերտ կապ են հաստատել այն դպրոցների հետ, որտեղ սովորում են մեր կոլեկտիվի անդամների երեխաները։ Կուսկազմակերպության որոշմամբ գործարանն ստանձնել է մեզանից ոչ հեռու գտնվող № 52 միջնակարգ դպրոցի շեֆությունը։ Այնտեղ սովորում են մեր բանվոր-ծառայողների 400 երեխաներ, իսկ մի մասը հաճախում է №№ 69, 115, Ներքին Չարբախ գյուղի ու քաղաքի այլ հանրակրթական դպրոցները։ Գործարար են կապերը նաև դրանց հետ։

Ուսումնական տարվա ընթացքում գործարանի ակտիվիստները պարբերաբար այցելում են դպրոց, հետաքրքրվում երեխաների առաջադիմության, ծնողների ու դպրոցի կապի և առօրյա այլ հարցերով։ Կուսկոմիտեի նախաձեռնությամբ արդեն սովորույթ է դարձել յուրաքանչյուր տարվա երրորդ քառորդից

հետո կոլեկտիվի անդամների դպրոցական երեխաների կրթության և դաստիարակության հարցը քննարկել կուսակցական դռնբաց ժողովում։ Մինչ այդ 2—3 մարդուց բաղկացած հանձնաժողովը դպրոցներում հանգամանորեն ուսումնասիրում է աշակերտների կրթության ու դաստիարակության վիճակը և գրավոր զեկուցագիր ներկայացնում կուսկոմիտե։ Այդպիսի ուսումնասիրություններ ենք անցկացնում քաղաքի ավելի քան 40 դպրոցներում, որտեղ սովորում են էլեկտրոնցիների երեխաները։ Նման ուսումնասիրություններն ու քննարկումները բարձրացնում են դպրոցական երեխաներ ունեցող բանվոր-ծառայողների պատասխանատվությունը, մեծապես խթանում ուսման առաջադիմությանը։ Ժողովներից մեկում, օրինակ, ենթաշեֆ № 52 դպրոցի դիրեկտոր Բ. Բլեյանն ասաց, որ գործարանի ու դպրոցի համատեղ ջանքերը չափազանց արդյունավետ են։ Էլեկտրոնցիների երեխաների ուսման առաջադիմությունը 5—7 տոկոսով բարձր է դպրոցի միջինից։ Նրանք առավել ակտիվորեն են մասնակցում հասարակական աշխատանքներին։ Նույն ժողովի մասնակից, Երևանի Շահումյան շրջանի ժողկրթբաժնի վարիչ Վ. Մինասյանը նշեց, որ «Էլեկտրոն» գործարանի կոլեկտիվի փորձը շատ ուսանելի և ուշագրավ է. իրենք պրոպագանդում են այն։

Կուսկոմիտեն և արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները քննարկում են նաև դպրոցների նյութական բազայի ամրապնդմանն ու երեխաների ամառային հանգստի կազմակերպմանն առնչվող հարցեր։ Ընդհանրապես բոլոր քննարկումները գործնական են և կոնկրետ։ Գործարանի ղեկավարությունը ժամանակին իրազեկ է լինում ընդունված որոշումներին, որի շնորհիվ արդյունքները դառնում են ավելի շոշափելի։

Կուսկոմիտեն ստեղծել է 11 մարդուց բաղկացած համագործարանային ծնողական խորհուրդ, որը ղեկավարում է գործարանի կադրերի բաժնի վարիչ Ամալյա Արմաղանյանը։ Նախկին մանկավարժն այժմ սիրով է կատարում այդ հանձնարարությունը։ Ծնողական խորհուրդն ակտիվ և արդյունավետ աշխատանք է ծավալում ինչպես կոլեկտիվի անդամների շրջանում, այնպես էլ դպրոցներում։ Խորհրդի անդամները հաճախակի լինում են դպրոցներում, հետաքրքրվում աշակերտների առօրյայով, մոտիկից ճանաչում առաջավորներին և թերացողներին։ Նրանք զրուցում են այն ծնողների հետ, որոնց երեխաները վատ են սովորում կամ խախտում են վարքի կանոնները։ Այսպես, արտադրական բաժնի աշխատակից Վ. Հակոբյանի երեխան երկու առարկայից ուներ «2» գնահատական, ուսուցիչները բողոքում էին, որ նա անկարգապահ է, անուշադիր, իսկ ծնողը դպրոց չի հաճախում նույնիսկ հատուկ հրավեր ստանալիս։ Անհրաժեշտ եղավ ոչ միայն զրուցել Վ. Հակոբյանի հետ, այլև հարցը լսել գործարանի ծնողական խորհրդի նիստում, նրա շուրջն ստեղծել հասարակական կարծիք։ Իհարկե, ոչ միանգամից, բայց երկրորդ քառորդում զգացվեց, որ տղան դարձել է կարգապահ, ձգտում է սովորել։ Վ. Հակոբյանն սկսեց հաճախել դպրոց, մասնակցել ծնողական ժողովներին, լսել դասղեկի խորհուրդները։ Եվ ահա, երրորդ քառորդում Լյովան ոչ մի առարկայից չուներ «2» գնահատական։ Դա ուրախացրեց և՛ ծնողներին, և՛ ծնողական խորհրդի անդամներին։ Վերջիններիս օգնության վերաբերյալ երախտագիտությամբ են արտահայտվում փականագործներ Գ. Խաչատրյանը, Կ. Վարդանյանը, գալվանապատող Հ. Մարկոսյանը, մոնտաժող Փ. Բագրատյանը և շատ ուրիշներ։ Խորհրդի անդամները տարբեր առիթներով հանդիպել են նրանց և նրանց դպրոցական երեխաների հետ, դիտողություններ արել ու խորհուրդներ տվել, պարսավել ու խրախուսել, հասել այն բանին, որ բարձրանա դպրոցականների ուսման առաջադիմությունը։

Մի ուրիշ օրինակ։ 1973—74 թթ. ուսումնական տարվա առաջին քառորդում էլեկտրոնցիների երեխաներ, № 52 դպրոցի աշակերտներ Պարգև Համբարձումյանը, Նիկոլայ Գասպարյանը, Արայիկ Գաբրիելյանը, Անուշ Իսրայելյանը, Մարգարիտ Զաքարյանը, Արսեն Մադոյանը, Գոհար Ռասոյանը, Լուսիկ Գաբոյանը վատ էին սովորում. 2—3 առարկայից ունեին «2» գնահատական։ Ծնողական խորհրդի անդամներն առանձին-առանձին զրուցեցին նրանց ծնողների հետ, այնուհետև հրավիրեցին իրենց նիստին. քննարկումը բուռն էր։



Խորհուրդը դատապարտեց ծնողների անտարբերությունը, պահանջեց ավելի կոնկրետ ու որոշակիորեն զբաղվել երեխաների կրթությամբ։ Այնուհետև, գործարանի ծնողական խորհրդի խնդրանքով նրանք հրավիրվեցին նաև դպրոցական ծնողական խորհրդի նիստին։ Արդյունքը գոհացուցիչ էր։ Ուսումնական տարվա երրորդ քառորդի վերջում վատ սովորող աշակերտներ չկային, նրանք բոլորն էլ փոխադրվեցին հաջորդ դասարաններ։ Իսկ Լուսիկ Գաբոյանը և Մարգարիտ Զաքարյանը դարձան ուսման առաջավորներ։

Գործարանային ծնողական խորհուրդն իր նիստերում լսել է նաև № 52 և 115 միջնակարգ դպրոցների ուսմասվարների հաղորդումները դպրոցականների ուսման առաջադիմության, դաստիարակության վիճակի և գործարանի կոլեկտիվի օգնության վերաբերյալ։

Գործարանի օրինակով յուրաքանչյուր բաժնում և արտադրամասում ևս ստեղծել ենք ծնողական խորհուրդներ, որոնք համապատասխան գործունեություն են ծավալում իրենց կոլեկտիվների շրջանակներում։ Այսպես, օրինակ, № 2 արտադրամասում աշխատող 150 բանվոր-ծառայողներից կեսն ունի դպրոցական երեխա։ Սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի որոշմամբ ստեղծված ծնողական խորհուրդը ղեկավարում է առաջավոր և փորձառու փականագործ, կոմունիստ Հ. Վարդումյանը։ Այստեղ նույնպես տարին մեկ անգամ կուսկազմակերպությունը, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հետ միասին, քննարկում է դպրոցականներին վերաբերող հարց, հետևում իր որոշման կատարմանը։ Արտադրամասում ստեղծվել է գերազանցիկներին նվիրված ստենդ, դպրոցականները հաճախ այցելում են արտադրամաս, ծանոթանում իրենց ծնողների աշխատանքային առօրյային։

Ծնողական խորհուրդն իր տեսադաշտում է պահում ետ մնացող աշակերտներին, արտադրամասի ղեկավարության, կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների հետ միասին բարոյապես և նյութապես խրախուսում է դպրոցականներին ու նրանց ծնողներին։

Գործարանի ծնողական խորհուրդը և ԼԿԵՄ կոմիտեն ստեղծել են «Գործարան-դպրոց» վերտառությամբ պատի թերթ, որը լույս է ընծայվում յուրաքանչյուր եռամսյակը մեկ անգամ։ Այն հետաքրքրական է ու բովանդակալից, դարձել է գործարանի կոլեկտիվի և դպրոցականների սիրելի օրգանը։ Այստեղ հրապարակվող նյութերը պատմում են աշակերտների առօրյայի, նրանց ձգտումների ու երազանքների, ծնողների աշխատանքի և հետաքրքրասիրությունների մասին։ Պատի թերթին աշխատակցում են մանկավարժները, դպրոցականներն ու ծնողները։ Թերթը փակցվում է ինչպես գործարանում, այնպես էլ ենթաշեֆ № 52 միջնակարգ դպրոցում։

Գործարանի արտադրական կոլեկտիվում ստեղծված մթնոլորտը բարերար է ազդում ծնողների վրա։ Նրանք է՛լ ավելի մեծ ուշադրություն են նվիրում իրենց երեխաներին, հաճախակի լինում են դպրոցում, ստուգում նրանց օրագրերը, դասամատյանները, հետևում դասերի յուրացմանը, ստեղծում լավ սովորելու պայմաններ։ Եվ եթե նախկինում մանկավարժական կոլեկտիվները բողոքում էին, որ ծնողական ժողովներին մասնակցում են միայն աշակերտների մայրերը, ապա այժմ վիճակը փոխվել է, դպրոցականների կյանքով ակտիվորեն հետաքրքրվում են նաև հայրերը։

Մենք ունենք շատ ծնողներ, որոնք, խորապես գիտակցելով իրենց պարտականությունները, մշտապես ապրում են իրենց երեխաների կրթության ու դաստիարակության հոգսերով։ Այսպես, օրինակ։ Գործարանի ավտոպարկի ինժեներ Հ. Թերզյանը Հայրենական պատերազմի ակտիվ մասնակից է, լավ աշխատող և լավ հայր. նրա չորս երեխաներն էլ գերազանց են ավարտել միջնակարգը։ Երեքը՝ Սարգիսը, Հեղինեն և Գայանեն, ենթաշեֆ № 52 միջնակարգ դպրոցի շրջանավարտներ են։ Հեղինեն ավարտել է Երևանի պետական համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետը, Սարգիսը սովորում է բանասիրական, Գայանեն՝ մեխանիկա-մաթեմատիկական ֆակուլտետում։ Հ. Թերզյանի զավակների լուսանկարները երկար տարիներ փակցված էին հատուկ ստենդին, իսկ երեխաները պարբերաբար հաճախում էին գործարան, ծանոթանում արտադրությանն ու կոլեկտիվի անդամների հետ, խրախուսվում ղեկավարության

կողմից: Երբ Գայանեն ավարտեց միջնակարգ դպրոցը, գործարանը նրան պարգևատրեց տուրիստական ուղեգրով: Հ. Թերզյանը, որպես հոգատար ծնող, ամեն տարի օգտվել է առողջարանի անվճար ուղեգրից:

Իր երեխաների կրթությամբ և դաստիարակությամբ առանձնակի բարեխղճությամբ է զբաղվում նաև գործարանի հիմնադիր-բանվորուհի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ժենյա Մանուկյանը: Նրա երեք երեխաներն էլ № 52 ենթաշեֆ միջնակարգ դպրոցի լավագույն սաներից են: Ռոբերտը 1973—74 ուստարում գերազանց գնահատականներով ավարտեց դպրոցը և ընդունվեց Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ռադիո-էլեկտրոնային ֆակուլտետ, Բագրատը՝ մեքենաշինական տեխնիկում, իսկ Գոհարը յոթերորդ դասարանի ուսման առաջավորներից է:

Գովեստի արժանի են նաև բանվորուհի Հայաստան Ավետիսյանը, տեխնիկ Ժասմեն Հովսեփյանը, ավտովարորդ Խաչիկ Բաղալյանը, տեխնոլոգ Նունե Խաչատրյանը, վարպետ Սարգիս Սարգսյանը և շատ ուրիշներ, որոնց երեխաներն ուսման գերազանցիկներ են:

Ծնողների հետ տարվող աշխատանքում մեծ կարևորություն ենք տալիս մանկավարժական գիտելիքների պրոպագանդմանը: Արտադրամասերում պարբերաբար կազմակերպում ենք մանկավարժական զրույցներ. ծնողներն առավել սիրով են ունկնդրում այնպիսի դասախոսությունները, որոնք վերաբերում են ծնողի անձնական օրինակին, դպրոցի և ընտանիքի կապին, մեծահասակների ու երեխաների փոխհարաբերություններին: Կոլեկտիվի առջև հանդես են գալիս «Գիտելիք» ընկերության Երևանի քաղաքային բաժանմունքի և Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի դասախոսները:

Դպրոցի կոմերիտական և պիոներական կազմակերպությունների հետ սերտորեն համագործակցում է նաև գործարանի ԼԿԵՄ կոմիտեն: Արտադրության առաջավոր տասը կոմերիտականներ հասարակական կարգով ջոկատավար են աշխատում: Նրանց ղեկավարած ջոկատներում համեմատաբար բարձր է ուսման առաջադիմությունը, պիոներները կարգապահ են և ակտիվորեն մասնակցում են հասարակական աշխատանքներին: Հետաքրքրական և բովանդակալից են անցնում նրանց ջոկատային պարապմունքները: Վեցերորդ դասարանի № 5 ջոկատի հերթական պարապմունքը նվիրված էր «Էլեկտրոն» գործարանի պատմությանը: Ջոկատավար Լյուդմիլա Գրիգորյանը, որը գործարանի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարի առաջին տեղակալն է, խնամքով կազմել էր պարապմունքի պլանը, աշխատանքի բաժանում կատարել պիոներների միջև: Նրանք ձեռնարկությունում նախապես հանդիպել և զրուցել էին արտադրության վետերանների, գործարանի հիմնադիրների հետ: ԼԿԵՄ կոմիտեն նրանց տրամադրեց ձեռնարկությանը վերաբերող շատ լուսանկարներ, որոնց հիման վրա ստեղծվեց նրա պատմության ալբոմը:

Ջոկատավարի պարտականությունը սիրահոժար է կատարում նաև № 10 արտադրամասի առաջավոր բանվորուհի Շովինար Մարտիրոսյանը: Նա երկու տարի առաջ ավարտել է № 52 միջնակարգ դպրոցը և այժմ ջանք չի խնայում իր գիտելիքները հաղորդելու դպրոցականներին: Աշխատանքից հետո, ավելի հաճախ շաբաթ օրերին Շովինարն այցելում է հինգերորդ «գ» դասարանի իր ջոկատի պիոներներին, կազմակերպում էքսկուրսիաներ, հանդիպումներ, հավաքներ, զրույցներ ու ընթերցումներ: Նա երեխաների հետ եղել է մայրաքաղաքի գրեթե բոլոր տեսարժան վայրերում և թանգարաններում: Առանձնապես տպավորիչ էր հանդիպումը գործարանի վետերան, առաջավոր փականագործ Հ. Վարդումյանի հետ: Վերջինս պիոներներին պատմեց իր աշխատանքային փորձի մասին, ծանոթացրեց էլեկտրոնային հաշվիչ մեքենաների մեխանիկական կառուցվածքին: Ջոկատը հանդիսավոր պայմաններում Վարդումյանին ընդունեց պատվավոր պիոներ:

Հմուտ ջոկատավարներ են նաև արտադրության առաջավոր կոմերիտականներ Փառանձեմ Մկրտչյանը, Ալվարդ Ներսիսյանը, Ասյա Գրիգորյանը և ուրիշներ:

Դպրոցականները և գործարանի կոմերիտականները համագործակցության շատ ձևեր ու մեթոդներ են կիրառում: Նրանք այցելում են միմյանց, կազմա-



կերպում արտադրության առաջավորների հետ հանդիպման երեկոներ, համատեղ մասնակցում տոնական հանդեսներին: Դպրոցականների գեղարվեստական ինքնագործ խումբը համերգներ է տալիս էլեկտրոնցիների համար, որպես կանոն, գործարանի կոմերիտական կազմակերպության կոնֆերանսը ողջունում են աշակերտ-պատվիրակները: Իրենց հերթին, էլեկտրոնցիները ներկա են լինում սեպտեմբերի 1-ի առաջին զանգին նվիրված արարողությանը: Այդ օրը դպրոցականներին ողջունում են գործարանի կոմերիտականները, ջոկատավարները, աշխատանքի վետերանները: Նրանք մասնակցում են նաև շրջանավարտների տարեվերջյան հանդեսին:

Ինչպես տեսնում ենք, առիթները շատ են փոխադարձ կապերի ամրապնդման համար: Սակայն մեր փոխհարաբերությունները դրանցով չեն սահմանափակվում: Կիրառում ենք ուրիշ ձևեր ևս: Դպրոցի սրահներից մեկում կախված են լուսանկարներն այն սաների, որոնք դպրոցն ավարտելուց հետո աշխատանքի են անցել «Էլեկտրոն» գործարանում: Նրանց թիվը տարեցտարի ավելանում է:

Գործարանի ԼԿԵՄ կոմիտեն ինչպես իր նիստերում, այնպես էլ կոմերիտական ընդհանուր ժողովներում քննարկում է պիոներ-դպրոցականների հետ տարվող աշխատանքի հարցը: Յուրաքանչյուր ուստարում մեր կոմերիտական-ջոկատավարները հաշիվ են տալիս իրենց գործունեության մասին: Անցած ուսումնական տարում, օրինակ, ԼԿԵՄ կոմիտեն իր նիստում լսեց № 52 միջնակարգ դպրոցի ավագ ջոկատավար Գայանե Ղազարյանի հաղորդումը պիոներական աշխատանքներին էլեկտրոնցի ջոկատավարների ցույց տված մասնակցության վերաբերյալ: Քննարկմանը մասնակցում էին նաև գործարանի կուսկոմիտեի անդամները, դպրոցի ուսմասվարը: Ըստ արժանվույն գնահատելով կատարած դրական գործերը՝ ԼԿԵՄ կոմիտեն նշեց, որ առանձին ջոկատավարներ դեռևս լավ չեն նախապատրաստվում պարապմունքներին: Նոր ուսումնական տարում ջոկատավարները նկատելիորեն աշխուժացրել են իրենց գործունեությունը:

Սովորողների աշխարհայացքի ձևավորումը, նրանց կոմունիստական դաստիարակությունը կուսկոմիտեի մշտական հոգսն են, այդ գործում մեծ է պրոպագանդիստների դերը: Ինչպես ենթաշեֆ № 52, այնպես էլ մյուս դպրոցների բարձր դասարանների համար գործարանի դասախոսական խմբի անդամները պարբերաբար դասախոսություններ են կարդում ու զրույցներ անցկացնում մասնագիտական ճիշտ կողմնորոշման հարցերի մասին, նրանց մեջ սեր արթնացնում կիբեռնետիկայի և էլեկտրոնային արտադրության նկատմամբ: Նման դասախոսություններով ու զրույցներով հանդես են եկել ինժեներներ Ս. Ներսիսյանը, Խ. Խաչատրյանը, Ա. Բալայանը և Մ. Յավուրյանը: Այս նախաձեռնությունը, որ լավ արդյունք է տալիս, անհրաժեշտ է հետայսու դարձնել ավանդույթ:

Ուրախալի է, որ վերջին երեք տարում մեր 286 սաներից 72-ը ընդունվել են բարձրագույն ուսումնական հաստատություններ, 61-ը՝ տեխնիկումներ և պրոֆտեխուսումնարաններ: Ստանալով համապատասխան մասնագիտություն, նրանցից շատերը սիրով գալիս են մեզ մոտ: Այսպես, օրինակ, Անահիտ Կիրակոսյանը, ավարտելով պետհամալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը, աշխատանքի անցավ № 9 արտադրամասում որպես տնտեսագետ, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի շրջանավարտ Գյուլնարա Հայրապետյանը կոնստրուկտոր է գլխավոր կոնստրուկտորի բաժնում: Նման օրինակները շատ են:

Գործարանի դիրեկցիան, կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները բարոյապես ու նյութապես խրախուսում են և՛ ծնողներին, որպեսզի նրանք է՛լ ավելի լավ հոգան երեխաների կրթության և դաստիարակության մասին, և՛ աշակերտներին, որպեսզի նրանք ձեռք բերեն խոր ու կայուն գիտելիքներ, ցուցաբերեն օրինակելի վարք: Այս ավանդույթի հիմքը դրեցինք 1971 թ. մայիսի 12-ի կուսժողովում, որոշվեց է՛լ ավելի ուժեղացնել դպրոցականների և կոլեկտիվի անդամ ծնողների հետ տարվող աշխատանքը, խրախուսելով լավ սովորող աշակերտներին և նրանց ծնողներին: Կուս-

ժողովի որոշմամբ արդեն մի քանի տարի է, ինչ կենտրոնացված կարգով գործարանի միջոցներով գնվում են բոլոր դասագրքերը և անվճար տրվում դպրոցականներին։ Յուրաքանչյուր ուստարվա վերջում բոլոր գերազանցիկները հրավիրվում են գործարանի ԼԿԵՄ կոմիտե։ Նրանք պարգևատրվում են գեղարվեստական գրքերով, ծանոթանում արտադրությանն ու նրա առաջամարտիկների գործերին։ Այդ օրը մի տեսակ տոնական է լինում գործարանի ողջ կոլեկտիվի և դպրոցականների համար։

Գործարանի բակում ձևավորել ենք «Մեր գերազանցիկները» խորագրով ստենդ, որտեղ փակցված են գերազանցիկ աշակերտների լուսանկարները՝ հակիրճ բնութագրերով։ Միաժամանակ նշվում է ծնողի անունը և աշխատանքային տեղամասը։ Ամեն օր ծնողներն արտադրամաս են մտնում՝ տեսնում երեխաների լուսանկարները ու համակվում անսքող հպարտության և ուրախության զգացումով։ Այս ստենդը բարոյական յուրատեսակ խրախուսանք է դպրոցականի, նրա ծնողի, ինչպես և դպրոցի մանկավարժական կոլեկտիվի համար։

Գործարհկոմի որոշմամբ ցածր վարձատրվող բանվորների երկու և ավելի դպրոցահասակ երեխաներն ամեն տարի, որպես նվեր, ստանում են համազգեստ։ Այդպիսի աշակերտների թիվն անցնում է 350-ից։

Մեծ կարևորություն ենք տալիս սովորողների ամառային հանգստի կազմակերպմանը։ Ամեն տարի, ամռանը 350—400 դպրոցական երեխաներ հանգստանում են գործարանի պիոներական ճամբարում, որը գտնվում է Մարտունու շրջկենտրոնում։ Ճամբարն ապահովված է մանկավարժական և ջոկատավարական կադրերով։ Պիոներների համար կազմակերպվում են արշավներ, էքսկուրսիաներ, հետաքրքրական պարապմունքներ ու ժամանցներ, ցուցադրվում են կինոնկարներ։ Քաղաքում մնացող ավելի քան 200 պիոներ-դպրոցականների ներգրավում ենք բակային ճամբար, ուր նրանք օրական երկու անգամ անվճար տաք սնունդ են ստանում մեր ճաշարանից։ Այս ճամբարն ունի իր ղեկավարությունն ու ավագ ջոկատավարը, որոնք կազմակերպում են դպրոցականների ակտիվ հանգիստը, հետաքրքրական դարձնում նրանց առօրյան։ Գործարանի դիրեկցիան անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք է կատարել Ղափանի մերձակա անտառում 250 տեղանոց պիոներական ճամբարի շենք կառուցելու համար։

Կարելի է վստահ ասել, որ գործարանի կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններն ու դիրեկցիան ձեռք են բերել կոլեկտիվի անդամ ծնողների ու նրանց դպրոցական երեխաների հետ տարվող աշխատանքի որոշակի փորձ։ Սակայն դեռևս շատ անելիքներ ունենք։ Մեր յուրաքանչյուր միջոցառում պետք է երեխաների մեջ սեր արթնացնի գործարանի, իրենց ծնողների մասնագիտության հանդեպ։ Մեր պարտքն է հիշել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի հետևյալ խոսքերը. «Դպրոցը, կոմերիտմիությունը, արհմիությունները պետք է գործն այնպես կազմակերպեն, որ ամեն մի պատանի, ամեն մի աղջիկ հստակորեն հասկանա աշխատավոր մարդու դերն ու վեհությունը, բանվոր դասակարգի պատմական միսիան, ձգտի կանգնել նրա փառապանծ շարքերում» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 654)։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾ Է

Գ. Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ
ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվի հրահանգիչ

Կուսակցական արխիվը կուսակցական-կոմերիտական առավել արժեքավոր փաստաթղթերի շտեմարան է։ Դրանց հիմքը կազմում են ՀԿԿ Կենտկոմի, ՀԼԿԵՄ Կենտկոմի, գավկոմների, քաղկոմ-շրջկոմների, շրջկոմների իրավունքով կուսկոմիտեների, կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի (ԿՎՀ), շրջանային վերստուգիչ հանձնաժողովների (ՇՎՀ), քաղբաժինների, կուսակցական և կոմերիտական սկզբնական կազմակերպությունների նյութերը, որոնք ունեն պատմական, քաղաքական, գիտահետազոտական և տեղեկատու խոշոր արժեք։ Արխիվում են պահվում նաև Վ. Ի. Լենինի և նրա հավատարիմ աշակերտներ ու զինակիցներ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Բ. Կնունյանցի, Ա. Միկոյանի, Ա. Մյասնիկյանի, ինչպես և Հայաստանի հեղափոխական շարժումների մյուս ականավոր գործիչների արխիվային նյութերն ու անձնական գործերը։

Կուսարխիվի աշխատողներն ավարտեցին տարիների ընթացքում կուտակված մեծ քանակությամբ փաստաթղթերի գիտատեխնիկական մշակումը։ Նրանց հիմնական նպատակն է՝ եղած նյութերը պահպանել անկորուստ, անվթար, արխիվը հարստացնել արժեքավոր, պատմագրական նշանակություն ունեցող նոր փաստաթղթերով։

Բազմազան են արխիվի հարստացման աղբյուրները։ Հեղափոխական շատ գործիչներ և հին բոլշևիկներ իրենց մոտ ունեն արխիվային արժեքավոր փաստաթղթեր։ Մենք հավաքում ենք այդ ամենը ինչպես նրանց կենդանության ժամանակ, այնպես էլ մահից հետո, խնամքով մշակում և ֆոնդավորում։

Մենք ոչ միայն զբաղվում ենք արխիվային փաստաթղթերի պահպանմամբ, այլև հետևում, որպեսզի կուսակցության և կոմերիտմիության բոլոր քաղկոմ-շրջկոմների, շրջկոմի իրավունքով կուսկոմիտեների ու սկզբնական կազմակերպությունների ժամանակավոր արխիվային փաստաթղթերը պահպանվեն գոյություն ունեցող հրահանգների պահանջներին համապատասխան և, նյութերի հանձնման ժամկետները լրանալուց անմիջապես հետո, քաղկոմ-շրջկոմները բոլոր կանոններով մշակեն դրանք ու ժամանակին, անվթար հանձնեն կուսարխիվ։

Ամեն տարի կուսակցական և կոմերիտական մարմինների ու սկզբնական կազմակերպությունների հաշվին կուսարխիվի ֆոնդը հարստանում է 10—12 հազար միավոր նյութերով։

Բայց պետք է ասել, որ չնայած մեր սիստեմատիկ օգնությանը, այնուամենայնիվ, առանձին քաղկոմ-շրջկոմներ ձգձգում են նյութերի մշակման և պատրաստի նյութերը բարձր որակով ու ժամանակին կուսարխիվ հանձնելու գործը։ Դրա հետևանքով շատ կարևոր փաստաթղթեր չեն պահպանվում և արխիվ չեն հանձնվում։ Օրինակ, ՀԿԿ Լենինականի քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հաստատված գրաֆիկի համաձայն իրենց նյութերը պետք է կուսարխիվ հանձնեին 1971 թ., մինչդեռ մինչև օրս չեն հանձնել։ Ավելին, նրանք 1968 թ. փաստաթղթերը հանձնել են արխիվ՝ ոչ սահմանված կարգով։ Նշանակում է՝ հնարավոր չէ դրանք օգտագործել։ ՀԿԿ Լենինականի

քաղկոմում անբավարար է նաև նյութերի պահպանման վիճակը. քաղկոմի բաժինները դրանք վստահել են տնտեսվարին, որը տվյալ գործում պատասխանատու չէ: Պահեստում անմշակ վիճակում են բոլոր կարևոր փաստաթղթերը, ինչպես և կուսարխիվում առանձին ֆոնդ ունեցող երկաթգծի, ֆիզկուլտուրայի տեխնիկումի, գարեջրի գործարանի, քաղաքի բուժմիավորման և այլ սկզբնական կուսկազմակերպությունների 1955—1967 թթ. նյութերը:

ՀԿԿ Երևանի կազմակերպության Շահումյանի շրջկոմը կուսարխիվ է հանձնել ՍՄԿԿ շարքերն ընդունվածների, ապելյացիոն և սկզբնական կուսկազմակերպությունների գործերը, մինչդեռ ընդհանուր բաժնի 10 տարվա նյութերը դեռևս գտնվում են շրջկոմում:

ՀԿԿ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի և Մյասնիկյանի շրջկոմները արխիվ են հանձնել միայն իրենց ապարատների փաստաթղթերը, իսկ շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների նյութերը 10—12 տարի է այդ կազմակերպություններում են գտնվում:

ՀԿԿ Արարատի շրջկոմը 47 սկզբնական կուսկազմակերպություններից ստացել է միայն 7-ի փաստաթղթերը: Մեր ուսումնասիրությունը պարզեց, որ դրանք էլ անմշակ են. ապելյացիոն գործերը չէին կարված, դրանց թերթերը չէին համարակալված, նյութերը չէին դասավորված այբբենական կարգով:

Մեղրու շրջանի մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ ապահովված չեն արձանագրությունների մատյաններով, դրանք գրվում են սովորական թղթի վրա, որի հետևանքով առանձին ժողովների արձանագրություններ բացակայում են: Սկզբնական շատ կազմակերպությունների ժողովների արձանագրություններում չեն լրացված տարեթվերը (գրում են միայն ս. թ., որը սխալ է): Արձանագրությունների մեծ մասը չի ստորագրված ժողովների նախագահների ու քարտուղարների կողմից: Նման փաստեր կան հանրապետության նաև ուրիշ սկզբնական կազմակերպություններում: Հասկանալի է, եթե բացակայում են տարեթիվը, ամսաթիվը և ժողովի նախագահի ու քարտուղարի ստորագրությունը, ապա այդ արձանագրությունն օրինական չէ: Հաճախ քաղկոմ-շրջկոմները ևս վերադասներին ուղարկած շատ զեկուցագրերի պատճեններում չեն նշում ամիս-ամսաթիվն ու տարեթիվը, թողնում են անստորագիր, որով և դրանք, որպես փաստաթուղթ, արժեզրկվում են:

Կուսակցական փաստաթղթերը, հատկապես կուսժողովների և բյուրոների նիստերի արձանագրություններն ունեն պատմական ու տեղեկատու խոշոր նշանակություն, կարևոր աղբյուր են կուսակցության, առաջին հերթին, տվյալ կազմակերպության պատմությունը հյուսելու համար: Պարզ է, երբ դրանք թերի են կամ չկան հրապարակում, նշանակում է՝ նրանց պատմությունն ընդհատվում է, գործունեությունը՝ մնում ստվերում: Հետևաբար, փաստաթղթերի պահպանումը պատասխանատու և լուրջ գործ է: Սակայն սկզբնական շատ կուսկազմակերպություններում այն բարձիթողի վիճակում է, անտարբերության հետևանքով շատ փաստաթղթեր կորել են: Հենց թեկուզ՝ Երևան քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններում: Այսպես, «Արարատ» գինու կոմբինատի կուսկազմակերպությունում չկան 1955 թ., Կլարա Ցետկինի անվան № 1 կարի ֆաբրիկայում՝ 1954—1955 թթ., բակտերիալ պարարտանյութերի գործարանում՝ 1962—1963 թթ. և 1965—1967 թթ., ռետինա-տեխնիկական գործարանում՝ 1957—1962 թթ. կուսժողովների ու բյուրոների նիստերի արձանագրությունները: Դեռ ավելին, տեղական շինանյութերի կոմբինատի, երկաթբետոնե կառուցվածքների գործարանի, «Գառնի» կարի միավորման № 3 ֆաբրիկայի կուսկազմակերպություններն արխիվ չեն հանձնել 8—14 տարվա փաստաթղթեր: Նույնպիսի թերություններ կան նաև կերամիկական առարկաների, հացի № 1, գարեջրի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանների, Կիրովի անվան քիմիական, կաթի կոմբինատների, Շահումյանի անվան կաշվի արտադրական միավորման և ուրիշ սկզբնական կուսկազմակերպություններում:

Սակայն Երևանի օրինակը եզակի չէ: Անտարբերության և թափթփվածության փաստերի ենք հանդիպում գրեթե բոլոր քաղաքային ու գյուղական կուսկազմակերպություններում:



Որո՞նք են սկզբնական կուսկազմակերպություններում կարևոր փաստաթղթերի կորստի պատճառները: Նախ այն, որ նյութերը երկար տարիներ մնում են տեղերում, երկրորդ, ընտրությունից հետո կուսակցական տնտեսությունն ակտով չի հանձնվում նորընտիր քարտուղարին: Վերջինս անցյալի համար իրեն պատասխանատու չի զգում: Բացի այդ, շատ կազմակերպություններում արձանագրությունները գրում են ոչ թե հատուկ մատյանում, այլ առանձին թերթերի վրա, որոնք հաճախ կորչում են:

Սկզբնական կուսկազմակերպություններում փաստաթղթերի կորուստը կանխելու, դրանք ճիշտ ձևակերպելու և ժամանակին կուսարխիվ հանձնելու համար անհրաժեշտ է, որ քաղկոմ-շրջկոմների կազմակերպական բաժինները պարբերաբար ստուգեն սկզբնական կուսկազմակերպությունների տնտեսության վիճակը, նրանց ցույց տան անհրաժեշտ օգնություն:

Արխիվի աշխատողներս ջանում ենք կանխել վերը նշված թերությունները, այդ նպատակով գործնական օգնություն ենք ցույց տալիս քաղկոմ-շրջկոմներին և շրջկոմի իրավունքով կուսկոմիտեներին: Լինելով տեղերում՝ ուսումնասիրում ենք արխիվային փաստաթղթերի ժամանակավոր պահպանման, մշակման վիճակը, սկզբնական կուսկազմակերպությունների կողմից կուսշրջկոմ հանձնած նյութերի որակը:

Քանի որ փաստաթղթերի մշակումը մասնագիտական բնույթ ունի, մենք տեղերում այն կազմակերպում ենք արխիվային բոլոր կանոններով: Քաղկոմ-շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների նյութերի պահպանման և դրանք անկորուստ կուսարխիվ հանձնելու նպատակով, քաղկոմ-շրջկոմների համապատասխան աշխատողների և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների համար պարբերաբար կազմակերպում ենք սեմինար-պարապմունքներ, անցկացնում հրահանգչական զրույցներ: Օգնում ենք նաև կուսակցական-կոմերիտական թերթերի ու ամսագրերի խմբագրություններին, որպեսզի նրանք իրենց նյութերը ժամանակին և մշակված հանձնեն արխիվ:

Արժեքավոր գործ են կատարում կուսարխիվի տեղեկատու ապարատի աշխատողները: Նրանք քաղվածքներ են հանում կուսակցական և կոմերիտական մարմինների որոշումներից, տեղեկանքներ տալիս ՀԿԿ Կենտկոմի կուսհանձնաժողովին, քաղկոմ-շրջկոմներին, թոշակավորող հանձնաժողովներին և առանձին կոմունիստների: Ովքեր երբևիցե աշխատել են կուսակցական և կոմերիտական մարմիններում, փաստաթուղթ կարող են վերցնել միայն կուսարխիվից: Կուսարխիվն այժմ դարձել է նաև գիտական հետազոտությունների օջախ: Այստեղ են պահվում Հայաստանի հեղափոխական շարժումների, հեղափոխության ականավոր գործիչներին վերաբերող փաստաթղթերը, Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար ակտիվորեն պայքարած մարտիկների լուսանկարները, նրանց գործունեությունը, ինչպես նաև կոմերիտմիության պատմությունն ու կոմերիտական վետերաններին վերաբերող արժեքավոր բազմաթիվ փաստաթղթեր:

Կուսակցական արխիվը ոչ միայն նյութեր է ստանում տեղերից և անաղարտ պահպանում, տրամադրում գիտնականներին, տալիս տեղեկանքներ ու պատասխանում հարցումներին, այլև ակտիվ մասնակցում է դրանց հրապարակմանը:

Այսպիսով, կուսակցական ու կոմերիտական փաստաթղթերը մեծ կարևորություն, պատմական խոշոր արժեք ունեն: Կուսակցության և կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմների ու սկզբնական կազմակերպությունների առաջնահերթ պարտքն է՝ փաստաթղթերը պահպանել խնամքով, մշակել ժամանակին և առանց կորուստների հանձնել կուսարխիվ:



## ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԸ

# ՄՈՍԿՎԱՅԻ ՄԱՏՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
**Պաշտոնաթող գեներալ-մայոր**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ տարեգրության մեջ Հայրենական մեծ պատերազմն ամենածանր փորձությունն էր։ Որքան ժամանակը մեզ հեռացնում է այդ պատերազմի իրադարձություններից, այն դժնդակ ու ահեղ տարիներից, այնքան ցայտուն են դառնում կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի կատարած հերոսական սխրագործության նշանակությունն ու վեհությունը։

Ֆաշիստական Գերմանիան, ուխտադրժորեն հարձակվելով Սովետական Միության վրա, հույս ուներ, թե մինչև ատամները զինված իր բանակը, որն արդեն իրեն էր ենթարկել գրեթե ողջ կապիտալիստական Եվրոպայի տնտեսական ու ռազմական ռեսուրսները, կկարողանա վեց-ութ շաբաթում, առանց մեծ դժվարության պարտության մատնել սովետական բանակին։ Այդ նպատակով հիտլերյան հրամանատարությունը մեր հայրենիքի սահմանների մոտ կենտրոնացրել էր 190 սպառազեն դիվիզիա (շուրջ 5,5 մլն զորք), 3.712 տանկ, 5.000 մարտական ինքնաթիռ, 47.260 հրանոթ ու ականանետ, 193 ռազմանավ։

Բայց թշնամու հաշիվները սխալ դուրս եկան։ Չնայած հանկարծակի հարձակման հետևանքով ստեղծված խիստ ծանր կացությանը, մեր կուսակցության Կենտկոմը, սովետական կառավարությունը, ՍՍՀՄ զինված ուժերի հրամանատարությունն անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեցին թշնամուն հակահարված հասցնելու համար։ Սովետական ողջ ժողովուրդը ոտքի ելավ ընդդեմ ֆաշիստական զավթիչների։ Երկրի ամբողջ կյանքը պատերազմի պահանջների համապատասխան վերակառուցելու հիմնական ծրագիր հանդիսացավ կուսակցության Կենտկոմի և ՍՍՀՄ ժողկոմսովետի 1941 թ. հունիսի 29-ի դիմումը՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» նշանաբանով։

Սովետական ռազմիկները պատերազմի առաջին իսկ օրերից համառ դիմադրում էին թշնամուն, կռվում արիաբար։

Բավական է ասել, որ պատերազմի սկզբից մինչև 1941 թ. նոյեմբեր, հիտլերյան բանակը կորցրեց մոտ 750 հազար զինվոր ու սպա։ Երբեք չեն մոռացվի սովետական այն սահմանապահների սխրանքները, որոնք առաջինն ընդունեցին թշնամու հարվածները։ Չեն մոռացվի նաև Լենինգրադի պաշտպանության հերոսները, որոնք քաջաբար մարտնչելով առաջնորդի անունը կրող քաղաքի մատույցներում, կասեցրին հիտլերականների հաղթարշավը, դրանով իսկ՝ մեծ օգնություն ցույց տվեցին Մոսկվայի պաշտպաններին։

Սովետական զորքերի տոկունությունն ու համառությունն արդեն այն օրերին հարկադրված էին ընդունել նույնիսկ թշնամիները։ Ահա ինչ է գրում հիտլերյան բանակի ցամաքային զորքերի գլխավոր շտաբի պետ, գեներալ Գալդերն իր օրագրում, 1941 թ. հունիսի 24-ին. «...Պարզվում է, որ ռուսները նահանջի մասին չեն մտածում։ Ընդհակառակը, իրենց տրամադրության տակ եղած ամեն ինչ նետում են սեպաձև առաջ շարժվող գերմանական զորքերի դեմ»։ Իսկ հուլիսի 26-ին նա ավելացնում է. «Հարավ» բանակի խումբը դանդաղ է առաջ շարժվում՝ դժբախտաբար զգալի կորուստներ կրելով։ Զգացվում է... հակառակորդն ամուր և եռանդուն ղեկավարություն ունի»։

ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿԶԲԻ ՎՃՌԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԷՐ Մոսկվայի համար մղված ճակատամարտը, որտեղ բախվեցին սովետական ու գերմանա-ֆաշիստական զորքերի գլխավոր խմբավորումները։ Հակառակորդը Մոսկվայի մոտ կենտրոնացրել էր 77 դիվիզիա, այդ թվում՝ 14-ը տանկային և 8-ը՝ մոտորացված։ Մոսկվային պատրաստվում էին հարված հասցնելու ավելի քան մեկ միլիոն մարդ, 1.700 տանկ, 19.450 հրանոթ ու ականանետ։ Օդից ցամաքային զորքերին պետք է օժանդակեր 950 ինքնաթիռ։

Հարձակումն սկսվեց սեպտեմբերի 30-ին Բրյանսկի ռազմաճակատի զորքերի դեմ ֆաշիստական «Կենտրոն» բանակախմբի ձախ զորաթևի տանկային միավորումների գրոհով։ Իսկ հոկտեմբերի 2-ին հարձակման անցան գլխավոր ուժերը։ Այդ ծանր օրերին կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը և ՍՍՀՄ զինված ուժերի Գերագույն գլխավոր հրամանատարությունը մի շարք հրատապ միջոցներ ձեռնարկեցին, որոնց նպատակն էր համառ դիմադրությամբ կաշկանդել թշնամուն, ժամանակ շահել Մոսկվայի մատույցներում պաշտպանության նոր բնագիծ ստեղծելու և երկրի խորքից ռեզերվներ հասցնելու համար։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ գերմանական զորքերի առաջխաղացումը նկատելիորեն դանդաղեց։ Այսպես, հոկտեմբերի սկզբին թշնամին օրական առաջ էր շարժվում 26 կիլոմետր, իսկ ամսվա վերջին՝ ընդամենը երկու-երեք։ Մինչև հոկտեմբերի 30-ը մեր զորքերը Մոսկվայից արևմուտք և հարավ-արևմուտք գործող ռազմաճակատներում վերջնականապես կայուն դիրքեր գրավեցին։ Հակառակորդի ուժերը զգալիորեն թուլացան։ Մոսկվայի վրա գերմանացիների հարձակումը խափանվեց։

1941-ի նոյեմբերի 15—16-ը հիտլերյան զորքերը Մոսկվայի վրա նոր, խոշոր հարձակում ձեռնարկեցին՝ ամբողջ ռազմաճակատով մեկ։

Մայրաքաղաքի պաշտպանության համար ոտքի ելավ բովանդակ երկիրը. ճակատ էին մեկնում նորանոր համալրումներ, մոտեցվում էին պահեստային զորքեր Հեռավոր Արևելքից, Սիբիրից, Ուրալից։ Մոսկվայի մոտ գերմանա-ֆաշիստական զորքերի ջախջախմանը, որպես 239-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատար, բախտ է ունեցել մասնակցելու նաև տողերիս հեղինակը։ Դիվիզիան, որ լիովին համալրված էր սիբիրցիներով, Հեռավոր Արևելքից շտապ փոխադրվեց երկաթուղով։ Արագընթաց գնացքից երևում էին ռմբակոծված կայարաններ, այրված վագոններ, քանդված շենքեր։ Հակառակ ուղղությամբ շարժվում էին իրենց տունն ու տեղը թողած, հոգնատանջ մարդկանց բազմություններ։ Սայլերին բարձված էին հապճեպ կապկպված իրեր։ Այդ սրտաճմլիկ տեսարանները մորմոքում էին մեր ռազմիկներին և անհուն ցասումով լցնում նրանց սրտերը։ Մարտիկներն ու սպաները տենչում էին որքան հնարավոր է շուտ մարտի բռնվել թշնամու հետ։

1941 թ. նոյեմբերի 15-ից մինչև 17-ը մեր դիվիզիան դիրքեր գրավեց Ակիմովկա Կրուտայա բնագծում (Տուլայի մարզում) և, 125-րդ տանկային գումարտակի աջակցությամբ, սկսեց հարվածել հակառակորդի 112-րդ հետևակային դիվիզիայի մարտական դասավորությանը՝ մեծ կորուստներ պատճառելով նրան։ Այս կապակցությամբ ֆաշիստական երկրորդ տանկային բանակի հրամանատար, գեներալ Գուդերիանը իր հուշերում գրել է. «...Նոյեմբերի 17-ին մենք տեղեկություն ստացանք, որ Ուզլովայա քաղաքի կայարանում կենտրոնացվել են սիբիրյան թարմ զորամասեր։ Ռուսական տանկերը և հետևակայինները գրոհեցին միաժամանակ Դեդիլովոյի ուղղությամբ... Բանը հասավ խուճապի։ Դա, որ առաջինն էր ռուսական կամպանիան սկսվելուց ի վեր, լուրջ նախազգուշացում էր այն մասին, որ մեր հետևակը կորցրել է իր մարտունակությունը»։

Բանակի գեներալ Դ. Ա. Լելյուշենկոն Մոսկվա—Ստալինգրադ—Բեռլին—Պրագա իր գրքում գրում է. «Այդ 239-րդ հրաձգային դիվիզիան առաջինը հասցրեց այնպիսի հուժկու հարված, որ խուճապ և շփոթություն առաջացրեց թշնամու բանակում»։

Հաջող գործողություններից հետո մեր դիվիզիայի առջև խնդիր դրվեց՝ պաշտպանական դիրքեր գրավելով, թույլ չտալ, որ հակառակորդը ճեղքում կատարի Կաշիրա—Մոսկվա և Ռյազան ուղղություններում, ամուր պահել երկու ռազմաճակատների (Արևմտյան և Հարավ-արևմտյան) սահմանակետը, ապահովել 10-րդ բանակի զորքերի կազմավորումն ու դասավորումը Ռյազան քաղաքի շրջանում։

1941 թ. նոյեմբերի 18-ից մինչև 20-ը հակառակորդի 167-րդ և 112-րդ հետևակային դիվիզիաները հրետանու, տանկերի ու ավիացիայի օժանդակությամբ փորձում էին գրավել կարևոր հենակետեր։ Բայց թշնամու ուժերի այդպիսի մեծ գերակշռությունը չասասանեց մեր մարտիկների կամքը։ Ինչպես Մոսկվայի բոլոր պաշտպանները, այնպես էլ մեր դիվիզիայի ռազմիկները թշնամու զորաշղթաները դիմավորեցին բոլոր զինատեսակների՝ հրաձգային, հրետանային ու ականանետային, փոթորկալի կրակով։ Ամենուրեք բոցավառվում էին հակառակորդի տանկերը։

Այդ օրերին մեզ հասավ պանֆիլովականների քաջագործության լուրը, որը նոր սխրանքների ոգեկոչեց մեր ռազմիկներին։ Հիշողությունից երբեք չի ջնջվի մեր հրետանավորներ Ն. Գորյունովի, Գ. Հայրապետյանի, Ն. Գրյազնովի սխրանքը։ Մարտկոցում մնացել էին երեքը։ Նրանք կրակելով երեք հրանոթից, ոչնչացրին ութ տանկ։ Սակայն անհավասար մարտում ընկան քաջի մահով։ Այդպես իրենց անունները փառքով պսակեցին նաև տանկերի կործանիչներ սերժանտ Տլեուբաևը, Ոսկանյանը, Բոնդարենկոն։ Դարանելով քողարկված հակատանկային փոսի մեջ, նրանք թշնամու տանկերին թողնում էին մոտենալ մինչև 10—15 մետր և ոչնչացնում նռնակների խրձերով։ 1941 թ. նոյեմբերի 19-ին այդ քաջերը, ոչնչացնելով վեց տանկ, ընկան հերոսի մահով։

Կուզենայի նշել նաև 817-րդ հրաձգային գնդի մարտական կոմիսար Վիկտոր Ալեքսանդրովիչ Կուրենկովի սխրանքը. արհամարհելով մահը, նա հասնում էր ճակատի առաջին գիծը, ոգևորում և նոր քաջագործությունների մղում ռազմիկներին։

Նոյեմբերի 19—20-ը թշնամու բոլոր կատաղի գրոհները հանդիպեցին մեր մարտիկների համառ դիմադրությանը։ Ճիշտ է, տեղ-տեղ հակառակորդին հաջողվեց սեպաձև ճեղքել մեր պաշտպանությունը, բայց դիվիզիայի զորամասերը վճռական հակագրոհներով կարողացան ետ շպրտել նրան դեպի ելման դիրքերը։ Մեր միավորման գործողություններին բարձր գնահատական է տրվում Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովի Մոսկվայի վրա ճիտլերականների հարձակման ձախողումը գրքում։ Մարշալը գրում է. «Հակագործողության համար մենք շտապ Ուզլովայա քաղաքի շրջակայքը փոխադրեցինք 239-րդ հրաձգային և 41-րդ հեծյալ դիվիզիաները։ Կատաղի մարտերը, որոնք մեր զորքերի մասսայական հերոսության օրինակ էին, այստեղ շարունակվում էին գիշեր ու ցերեկ»։

Նոյեմբերի 21-ի առավոտից հակառակորդը մարտի մեջ մտցրեց նոր, թարմ ուժեր։ Փաստորեն մեր 239-րդ հրաձգային դիվիզիայի դեմ ռազմաճակատում ավելացան նաև 29-րդ մոտորացված և երրորդ տանկային դիվիզիաների զորամասերը՝ ընդհանուր առմամբ հակառակորդի չորս դիվիզիա։ Նոյեմբերի 21—23-ը ծանր, հյուծիչ մարտեր էին մղվում հակառակորդի գերակշիռ ուժերի դեմ։ Մենք պարզորոշ հասկանում էինք, որ պատերազմը թևակոխել է վճռական փուլ, որ նահանջել այլևս չի կարելի, որ նահանջի յուրաքանչյուր քայլը մեծ, թերևս, անուղղելի կորուստ կարող է լինել։ Այս գիտակցությամբ էին տոգորված դիվիզիայի բոլոր մարտիկները, հրամանատարներն ու քաղաշխատողները։

Արյունալի մարտեր տեղի ունեցան հատկապես նոյեմբերի 21-ի առավոտյան, երբ թշնամին երկու գումարտակներով, տանկերի օժանդակությամբ գրոհեց Բիբիկովո գյուղի վրա, որտեղ գտնվում էր դիվիզիայի շտաբը։ Սպաները և քաղբաժնի աշխատողները, գլխավորելով շտաբային ստորաբաժանումները, կազմակերպեցին շրջանաձև պաշտպանություն։ Դրությունը սպառնալից էր։ Այդ ծանր պահին 817-րդ հրաձգային գնդի երրորդ գումարտակը, տանկային և հետախուզական գումարտակների հետ, հակագրոհի անցավ և հակառակորդին ետ շպրտեց հյուսիսային ուղղությամբ։ Այդ անակնկալ հարձակման նախաձեռնողն ու կազմակերպիչը կապիտան Ադիս Ենոքյանն էր, որն այդ անհավասար մարտում ընկավ քաջի մահով։



Այս ծանր օրերին մենք ստացանք ռազմաճակատի հրամանատար Գ. Ժուկովի կարգադրությունը՝ թեկուզ կյանքի գնով պաշտպանել գրաված դիրքերը, մինչև որ գլխավոր ուժերն անցնեն հարձակման։

Որոշվեց մինչև 10-րդ բանակի հիմնական ուժերի մոտենալը Սպասսկոյե—Օլխովեց—Գետմանովկա ուղղությունում անակնկալ հարվածով ոչնչացնել հակառակորդի 29-րդ մոտո-հրաձգային դիվիզիայի զորամասերը։ Առաջադրանքը իրագործվեց գիշերային պայմաններում։ Այդ մասին գնդապետ Դ. Զ. Մուրիևն իր «Թայֆուն» գործողության ձախողումը գրքում գրում է. «Կատարելով դիվիզիայի հրամանատարի առաջադրանքը, 817-րդ հրաձգային գունդը, մոտենալով Սպասսկոյեին, պարզեց, որ գյուղը գրավված է հակառակորդի 29-րդ մոտո-հրաձգային դիվիզիայի 71-րդ գնդի կողմից։ Դիվիզիայի առաջապահ զորամասի համարձակ, հանկարծակի և սրընթաց գործողությունների շնորհիվ երեք ժամում ջախջախվեց թշնամու գունդը՝ իր շտաբով հանդերձ»։

Պաշտպանական մարտերում կոմունիստները ցույց էին տալիս խիզախության ու հերոսության անձնական օրինակ, անկուսակցական մարտիկներին պայքարի մղում թշնամու դեմ։ Այսպես, 239-րդ հրաձգային գնդի յոթերորդ հրաձգային վաշտի կուսկազմակերպիչ Կոկովկինը, ծանր վիրավորված, շարունակում էր քաջաբար կռվել։ Մարտում հերոսի մահով ընկան վաշտերի քաղղեկներ Լիսովսկին և Բիկովսկին, 813-րդ հրաձգային գնդի կուսբյուրոյի քարտուղար Պարամոնովը, կոմունիստ, ավագ լեյտենանտ Գայմանը, որոնք իրենց հետ միշտ անձնուրաց գրոհի էին տանում մարտիկներին։

ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ համար մարտնչող բոլոր միավորումները մարտական սխրագործության հիանալի օրինակներ էին տալիս։ Սովետական բանակը հաղթանակով դուրս եկավ Մոսկվայի մատույցներում մղված պաշտպանական ահեղ ճակատամարտից։ Մեր մայրաքաղաքի վրա կատարված միայն երկրորդ հարձակման ընթացքում թշնամին կորցրեց ավելի քան 155 հազար մարդ, մոտ 800 տանկ, 1.500 ինքնաթիռ։ Սովետական մարդիկ հանդես բերեցին մարտական անկրկնելի հերոսություն, անձնուրացություն, բարձր կարգապահություն, նվիրվածություն կոմունիստական կուսակցությանն ու սոցիալիստական հայրենիքին։

Սովետական ռազմիկի, ֆաշիզմի ջախջախման գործում նրա ծառայության մասին հիանալի է ասել անգլիացի գրող հրապարակախոս Ջեյմս Օլդրիջը. «...Իմ գիտակցության մեջ սովետական զինվորը հառնում է շառագունած աստղով կտրիճի տեսքով։ Նա նախ և առաջ ռազմիկ է, որը եղել է կարմիր բանակի ողնաշարը։ Ոչ մի զինվոր այնպիսի հիացմունք չի առաջացնում, ինչպես կարմիր բանակի զինվորը, ընդ որում ոչ միայն սովետական մարդկանց մեջ, այլև ողջ աշխարհում... Եվ ես ոչ մի անգամ չեմ պատահել անգլիական կամ ամերիկյան զինվորի, որը չզգար, որ մի շարք տարիներ հենց կարմիր բանակայինի ուսերին էր ընկած պատերազմի հիմնական ծանրությունը»։

Արևմտյան ռազմաճակատի զորքերը Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովի հրամանատարությամբ պաշտպանական ծանր մարտերում ուժասպառ և արյունաքամ արեցին թշնամուն, նրա տանկային ու դաշտային բանակներին այնպիսի հարված հասցրին, որ Մոսկվայի մոտ ֆաշիստական խմբավորման հարձակողական ուժերը հիմնավորապես ջլատվեցին։ Դա հնարավորություն տվեց մեր Գերագույն գլխավոր հրամանատարությանը 1941 թ. դեկտեմբերի 6-ին վճռական հակահարձակում կազմակերպելու Արևմտյան և նրա հարևան Կալինինի ու Հարավ-արևմտյան ռազմաճակատների զորքերի ուժերով։

Հարձակման անցնելու հրամանը ռազմիկների մեջ հսկայական հայրենասիրական խանդավառություն առաջացրեց։ Վրեժի ցասումով լցված՝ նրանք նետվեցին գրոհի։ Թշնամին ի վիճակի չեղավ կասեցնելու Արևմտյան ռազմաճակատի մեր զորքերի սրընթաց հարձակումը, խուճապահար նահանջեց՝ մարտադաշտում թողնելով տեխնիկան ու զինամթերքը։ Հիտլերյան պրոպագանդան և գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը, խուսափելով թաքցնե-

լու նպատակով, իրենց զորքերի նահանջը հայտարարեցին իբրև «պլանաչափ ետքաշում»: Բայց «պլանաչափ ետ քաշվելու» ճանապարհները, որոնք լի էին հրկիզված տանկերով, ավտոմեքենաներով, հրանոթներով, գերեվարված զինվորների շարասյուներով, հիտլերյան հորդաների պարտության խոսուն պատկերն էին: Շրջապատման և ջախջախման լուրջ վտանգ կախվեց նաև Գուդերիանի երկրորդ տանկային բանակի վրա:

Մեր 239-րդ դիվիզիան հարձակվում էր 10-րդ բանակի կազմում: 1941 թ. դեկտեմբերի 6-ի առավոտյան, հրետանային նախապատրաստությունից հետո, սիբիրցի ռազմիկները վճռականորեն նետվեցին հակառակորդի վրա, ճեղքեցին նրա պաշտպանական գիծը: Ինչպես և Արևմտյան ռազմաճակատի մյուս հատվածներում, թշնամին հանկարծակիի բերվեց:

Որքա՜ն անմոռաց սխրանքներ գործեցին մեր ռազմիկներն առաջխաղացման այդ օրերին: Հարձակումը ծավալվում էր շատ դժվարին պայմաններում: Մոլեգնում էր բուքը՝ փակելով ճանապարհներն ու արահետները: Չնայած անքնությանն ու սառնամանիքին, դիվիզիայի մարտիկները գիշեր-ցերեկ հետապնդում էին թշնամուն: Այդ օրերին Արևմտյան ռազմաճակատի խորհուրդը կոչով դիմեց զորքերին. «Ընկեր մարտիկնե՛ր և հրամանատարնե՛ր: Օգտագործե՛ք ստեղծված իրադրությունը: Թույլ մի տվե՛ք, որ թշնամին ուշքի գա, գործե՛ք վճռական ու համարձակ: Անխնա բնաջնջե՛ք ֆաշիստական զավթիչներին...»: Եվ դիվիզիայի ռազմիկներն այդ կոչին պատասխանում էին նորանոր սխրանքներով: Հարձակման թափն ուժեղացնելու համար դիվիզիայում ստեղծվեցին դահուկորդների ուժեղ ջոկատներ, իսկ հրաձգային ստորաբաժանումների մի մասը սկսեց առաջ շարժվել սահնակներով: Գնդացիրներն ու հրանոթները նույնպես դրվեցին սահնակների վրա: Դա մեծ հնարավորություն տվեց շրջանցել հակառակորդի զորաթևերը, շրջապատել և ոչնչացնել նրա հենակետերը:

Արևմտյան, Կալինինի ու Բրյանսկի ռազմաճակատների զորքերը հակահարձակման ընթացքում կատարեցին առաջադրանքը. նրանք ջախջախեցին գերմանա-ֆաշիստական 50 դիվիզիա, որից 11-ը՝ տանկային և 4-ը՝ մոտորացված: Ազատագրվեց 11 հազար բնակավայր, այդ թվում՝ Կալինին և Կալուգա մարզային քաղաքները, վերացվեց Տուլայի շրջապատման վտանգը: Ֆաշիստները կորցրին ավելի քան 500 հազար մարդ, 1.300 տանկ, 2.500 հրանոթ, ավելի քան 1.500 ավտոմեքենա: Թշնամին Մոսկվայից ետ շպրտվեց 150—300 կմ: Սովետական զորքերի այդ հակահարձակումը հետագայում վերաճեց ողջ ռազմաճակատում երկու հազար կիլոմետր երկայնքով ծավալված ընդհանուր հարձակման, որը հաջողությամբ շարունակվեց՝ ընդհուպ մինչև 1942 թ. ապրիլը:

ՄՈՍԿՎԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՈՒՄ ՄԵՐ ԶՈՐՔԵՐԻ հաղթանակն ամբողջ աշխարհին ցույց տվեց, որ հենց սովետական բանակն է այն ուժը, որն ունակ է խորտակելու ֆաշիզմը: Եվրոպայում իր հաղթարշավից և Սովետական Միության տերիտորիայում ունեցած ժամանակավոր հաջողություններից հետո գերմանական վերմախտը կրեց առաջին ջախջախիչ պարտությունը: Իսկ դա այնքան ծանր էր, որ ֆաշիստական պրոպագանդան մի քանի շաբաթ չէր համարձակվում հաղորդել այդ մասին:

Մոսկվայի մոտ սովետական զորքերի հաղթանակը ստրատեգիական, բարոյա-քաղաքական, հոգեբանական և միջազգային հսկայական նշանակություն ունեցավ: Հօդս ցնդեց հիտլերյան վերմախտի անպարտելիության մասին եղած առասպելը, ձախողվեց «Բարբարոսի» պլանը: Մոսկվայի մոտ ֆաշիստական զորքերի ջախջախումը լրջորեն սասանեց թշնամու ռազմական մեքենան, կոտրեց նրա մարտական ոգին և մարտունակությունը: Հիտլերյան Գերմանիան նկատելիորեն հեղինակազրկվեց իր արբանյակ երկրների աչքում: Դա սթափեցրեց Ճապոնիայի և Թուրքիայի հետադիմական շրջաններին, որոնք ժամանակավորապես հրաժարվեցին ՍՍՀՄ-ի դեմ պատերազմելու իրենց մտադրություններից:

Մոսկվայի մոտ ձեռք բերված հաղթանակը մեծապես նպաստեց նաև դիմադրության շարժման ծավալմանը հիտլերականների կողմից նվաճված երկրներում, ոգևորեց հակահիտլերյան կոալիցիայի պետությունների ժողովր-



դական զանգվածներին և ոգեշնչեց ուժեղացնելու ֆաշիզմի դեմ մղվող պայքարը:

Երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության ժամանակակից կեղծարարները՝ բուրժուական գաղափարախոսները, փորձում են ամեն կերպ արդարացնել Մոսկվայի մոտ ֆաշիստների կրած պարտությունը, նսեմացնել մեր հաղթանակի նշանակությունը, վիճարկել այդ ճակատամարտի ելքի օրինաչափությունը: Նրանք թխել են հարյուրավոր գրքեր, որոնցում փորձում են ապացուցել, թե իբր Մոսկվայի գրավումը ձախողվեց պատահական գործոնների՝ Հիտլերի «ճակատագրական» սխալների, մինչև իսկ ռուսական խստաշունչ ձմեռվա, վատ ճանապարհների և նման այլ պատճառներով:

Սակայն այդ բոլոր հորինվածքներն ընդհանուր ոչինչ չունեն պատմական ճշմարտության հետ: Մոսկվայի մոտ մեր հաղթանակի կանխորոշման և ապահովման գլխավոր պայմանը սովետական բանակի պայքարի արդարացի բնույթն էր, սովետական ժողովրդի ու նրա ռազմիկների ցուցաբերած մասսայական հերոսությունը, սոցիալիստական կարգերի առավելությունները, կոմունիստական կուսակցության հմուտ ղեկավարությունը:

Անանցանելի ճամփաների և սաստիկ սառնամանիքի վերաբերյալ բուրժուական հեղինակների ստահոդ վարկածները կեղծարարներին հարկավոր են իրականությունը խեղաթյուրելու, սովետական ռազմիկների հերոսական ոգին ու մարտական արժանիքները նսեմացնելու համար:

Որոշ բուրժուական պատմաբաններ պնդում են, թե Մոսկվայի մոտ հակահարձակում սկսելով՝ սովետական զորքերը քսանապատիկ գերակշռություն ունեին հակառակորդի նկատմամբ: Իրականում, ընդհակառակը, հակահարձակման ժամանակ սովետական զորքերը ֆաշիստներին զիջում էին տանկերի ու հրետանու քանակով... Մեր գերազանցությունը սովետական ռազմիկների բարոյական անխորտակ ուժն էր, նրանց բարձր գիտակցականությունն ու հաղթանակի հավատը, հարազատ կոմունիստական կուսակցությանը նրանց անսահման նվիրվածությունը:

Մարդկության ամենավտանգավոր թշնամու՝ հիտլերյան ֆաշիզմի հետ տեղի ունեցած գոտեմարտը համոզիչ ցույց տվեց մեր ժողովրդի միաձուլությունն ու համախմբվածությունն իր ազատության և անկախության համար մղված պայքարում:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՎ ՆՐԱ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԸ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, այդ խոշորագույն ճակատամարտում ցուցաբերեցին սովետական հայրենասիրության զարմանահրաշ օրինակներ: Մասսայական հերոսությամբ, թիկունքում կատարած տիտանական աշխատանքով, բարձր կազմակերպվածությամբ ու տոկունությամբ նրանք կարողացան դիմագրավել թշնամու հսկայական ճնշմանը, ջախջախել նրա «Կենտրոն» բանակախմբի հիմնական ուժերը և փաստորեն փոխել ուժերի հարաբերակցությունը ռազմաճակատում:

Մոսկվայի մատույցներում տեղի ունեցած ճակատամարտը, հիրավի, պատմական մեծ նշանակություն ունեցավ և վճռական ազդեցություն թողեց Հայրենական մեծ պատերազմի, ընդհանրապես երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքի վրա: Հենց դրանով էլ դրվեց սովետական բանակի ստրատեգիական հարձակման սկիզբը, որն այնուհետև ավարտվեց փայլուն հաղթանակով:

# ԽԻԶԱԽ ԲԱԶԵՆԵՐԸ

Զ. Պ. ՊՈՂՈՍՅԱՆ

1941 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍԻ 9-ԻՆ «Պրավդա»-ն իր առաջնորդողում գրել է. «Մեր փառաբանված ավիատորներն առաջինը լրացրին Սովետական Միության հերոսների հիանալի համաստեղությունը: Տառապած մարդկության պատմության մեջ նրանք գրեցին անմոռանալի հերոսության, քաջության ու անձնազոհության նորանոր էջեր...»: Հոդվածից հետո զետեղված է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը կործանիչ ավիացիայի քաջարի խոյահարող օդաչուներ Ս. Ի. Զդորովցևին, Մ. Պ. Ժուկովին և Պ. Տ. Խարիտոնովին Լենինի շքանշանով և Սովետական Միության հերոսի Ոսկե աստղ մեդալով պարգևատրելու մասին: Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ նրանք առաջինն արժանացան այդ բարձր կոչմանը: Հրամանատարության կարևոր առաջադրանքը կատարելուց հետո, տունդարձի ճանապարհին, երբ բենզինը գրեթե վերջացել էր, իսկ գնդացիրների ու թնդանոթների արկղերը դատարկ էին, առանց վարանելու մարտի բռնվեցին ֆաշիստական չորս «ՅՈՒՆԿԵՐՍ—88» տիպի ռմբակոծիչների հետ և իրենց անզեն կործանիչների պրոպելլերներով ու թևերի ուժգին հարվածներով խոյահարեցին, գետին տապալեցին ֆաշիստական ինքնաթիռները, որ մի կերպ ճեղքելով մեր զենիթային օղակաձև պաշտպանության կետերը, թռչում էին՝ ռմբակոծելու Լենինգրադը:

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերի հրեխոյահարողներից էր 31-րդ արագընթաց ռմբակոծիչ ավիագնդի կոմիսար, քաջարի ռմբակոծիչ օդաչու Սարգիս Միքայելի Հայրապետովը. 150-րդ ռմբակոծիչ ավիացիոն գնդի կոմիսար Մ. Ա. Յուսնկինի օրինակով, պատերազմի երրորդ օրը իր հրդեհված ռմբակոծիչը նա ուղղեց թշնամու տանկերի շարասյան վրա:

Սարգիս Հայրապետովը ծնվել է 1914 թ., Շամշադինի շրջանի Դրոդի գյուղում: 1932 թ. Բաքվի նավթահանքերում աշխատելիս, ընդունվել է կոմունիստական կուսակցության շարքերը, իսկ 1935 թվականից կուսակցության կոչով մեկնել Ստալինգրադ՝ ռազմական ավիացիոն ուսումնարանի մարտական օդաչուների երկամյա դասընթացներում սովորելու: Գերազանց հանձնելով ավարտական քննությունները՝ նա ուղարկվում է ավիացիոն զորամաս, որպես ռմբակոծիչ ինքնաթիռի օդաչու:

Շուտով Ս. Հայրապետովը նշանակվում է ավիաէսկադրիլիայի, այնուհետև՝ ավիացիոն գնդի կոմիսար: Ավիատորների և ավիագնդի սիրելին էր նա: Օդաչուները մշտապես նրա մոտ էին գնում խորհրդի, օգնության, պարզապես իրենց սիրտը բանալու, նրա հետ զրուցելու: Իր ենթականերին նա համակում էր իրենց ուժերի հանդեպ վստահությամբ, հաղթանակի նկատմամբ հավատով և խիզախության, անընկճելիության օրինակ ծառայում նրանց համար:

Մեր ձեռքին է «Во славу Родины» ճակատային թերթի 1943 թվականի փետրվարի 27-ի խունացած համարը:



«Պատերազմի առաջին իսկ օրը, ավագ քաղղեկ Սարգիս Միքայելի Հայրապետովը թռավ՝ ռմբակոծելու հակառակորդի զորքերը: Երեկոյան կողմ նա հավաքեց օդաչուներին, շտուրմաններին ու հրաձիգներին և ընդարձակ ճառով հանդես եկավ նրանց առաջ, թե ինչպես պետք է կռվել գերմանական օդաչուների հետ մարտի բռնվելիս կամ ինչպես ռմբակոծել թշնամու մոտոմեքենայացված ու կենդանի ուժերը:

Վաղ առավոտյան գնդի կոմիսար Սարգիս Հայրապետովը դուրս եկավ երկրորդ թռիչքի: Տակավին երիտասարդ էր, տաքարյուն լեռնային ու արևաշող Հայաստանի արիասիրտ որդին: Զորամասում բոլորը սիրում, հարգում էին նրան: Գերազանց օդաչու էր նա, հիանալի գիտեր օդաչուի և շտուրմանի պարտականությունը, իսկ որպես կոմիսար այնպիսին էր, որից արժեր սովորել, թե ինչպես պետք է զուգակցել կուսակցական ու մարտական գործը:

Պատերազմի երրորդ օրվա արշալույսին կոմիսարը վերադարձավ իր չորրորդ թռիչքից: Նրա ինքնաթիռը խփվել էր, և մի կերպ նա կարողացել էր մեքենան հասցնել օդանավակայան: Սանիտարական մեքենայով նրան մոտեցավ ավիացիոն գնդի բժիշկ Մոիսեյ Ստուչինսկին:

— Ո՞ղջ ես, Սարգի՛ս,— հարցրեց բժիշկը:

— Ողջ եմ, Մի՛շա, ի՞նչ կարող է պատահել ինձ:

Հայրապետովը դուրս եկավ օդաչուի խցիկից, զննեց ինքնաթիռը և նրա ֆյուզելյաժից հանելով մի բեկոր, պարզեց այն բժշկին.

— Մի՛շա, սա քեզ՝ ինձնից հիշատակ:

Մի քանի ժամ անց կոմիսար Հայրապետովը երկրորդ ավիաէսկադրիլիան անձամբ առաջնորդեց հերթական ռմբակոծման: Ֆաշիստական տանկային շարասյունը ջախջախվեց և ցրվեց, բայց ֆաշիստական զենիթային հրետանու արկերը լրջորեն վնասեցին կոմիսարի ռմբակոծչի շարժիչը, ապա թշնամու գիշանգղը գնդացրային կրակով հրդեհեց նրա ինքնաթիռը:

Գնդի շտուրման Սերգեյ Տյուրիկովի աչքի առաջ կոմիսարի բոցավառված ինքնաթիռը խոյընթաց վար սլացավ և մխրճվեց ֆաշիստական տանկերի ու զրահամեքենաների մեջ:

Այսպես զոհվեց հերոս կոմիսար Սարգիս Հայրապետովը...»:

Ակնարկի հեղինակն է այն ժամանակվա ճակատային թերթի թղթակից, այժմ «Звезда» ամսագրի խմբագիր Գեորգի Կոնստանտինովիչ Խոլոպովը: Ես նամակով դիմեցի հարգարժան գրողին, իմանալու, թե ի՞նչ կարող է ավելացնել այդ ակնարկին. շուտով ստացա Գ. Խոլոպովի պատասխանը.

«Այն ժամանակ ես տասն օր անցկացրի գվարդիական օդաչուների մոտ: Նրանց հետ թռչում էի ռմբակոծման ու հետախուզության, մասնակցում թռիչքների արդյունքների քննարկմանը, երկար զրուցում մարտերի մասին: Եվ, պետք է ասեմ՝ ամենավառ տպավորությունը, որ բերեցի ինձ հետ զինվորական թերթի խմբագրություն, գվարդիական ռմբակոծիչ օդաչուների վերաբերմունքն էր իրենց սիրելի կոմիսար Սարգիս Հայրապետովի հանդեպ: Երբ ես գնացել էի ավիացիոն գունդ, Հայրապետովը վաղուց կենդանի չէր... օդաչուները թախանձագին խնդրում էին, որ մի գիրք գրեմ հերոսաբար զոհված նրանց կոմիսարի մասին: Անչափ ուրախ եմ, որ այն ժամանակվա ճակատային թերթում տպագրված ակնարկով ինձ հաջողվեց անմահացնել Հայրապետովի պայծառ հիշատակը:

Սարգիս Հայրապետովը քաջաբար կռվեց մեր հայրենիքի թշնամիների դեմ, կատարեց իր նվիրական պարտքը մեր երկրի նկատմամբ և հերոսաբար էլ զոհվեց»:

ՍՍՀՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ Պոդոլսկի արխիվում բազմաթիվ վավերագրերից ինձ հետաքրքրեց մի փաստաթուղթ, որը վերաբերում է Պատրիկ Գազազյանի՝ 1941 թվականի հերոսական թռիչքներից մեկին:

Վավերագրում ասված է.

«1941 թվականի հուլիսի 5-ին ռազմանավակայանային օդանավակայանից

օդ բարձրացան ինը ռմբակոծիչներ, որոնց հրամանատարն էր կապիտան Վ. Կոշելեցը: Երկինքը մաքուր էր: Պայթյունների առաջին ամպերն ինքնաթիռների շուրջը երևացին Բուգ գետի վրա: Այդ գոտին անցան բարեհաջող: Առջևում երևացող խճուղիներով շարժվում էին թշնամու տանկերի, ավտոմեքենաների խիտ շարասյունը, հետևակը: Հրամանատարը պայմանական նշան արեց: Ինքնաթիռներն արագ շարվեցին իրար հետևից: Իննյակը մարտական ուղղություն վերցրեց խճուղու երկայնքով: Ռմբակոծիչները շարժվում էին տանկերին, ավտոմեքենաներին ընդառաջ: Առաջին անգամ մոտենալիս նրանք նետեցին դրսից կախված ռումբերը, երկրորդի ժամանակ՝ մնացածը: Ներքևում հրդեհներ բռնկվեցին. այրվում էին տները, ավտոմեքենաները: Իսկ սովետական օդաչուներն իջան մինչև 100 մետր բարձրության և գնդացրային կրակ տեղացին հետևակի վրա: Կարմրաթև արագընթաց ռմբակոծիչները բազում հրե հետքեր թողեցին երկրի վրա:

Հրամանատարը կարգադրեց ուղղություն վերցնել դեպի սեփական օդանավակայան: Բայց այստեղ երևացին թշնամու կործանիչները: Դրանք տասնյոթն էին: Տասնյոթ կործանիչ՝ ինը ռմբակոծչի դեմ: Սկսվեց կատաղի օդային մարտը: Քանի որ մեր ինքնաթիռները ցածր էին թռչում, ֆաշիստական կործանիչ օդաչուները չէին կարողանում ներքևից գնդակոծել, իսկ վերևից մեր ինքնաթիռները պաշտպանում էին հրաձիգ ռադիստները: Բայց ահա ֆաշիստական «Մեսսերի» հրանոթային համազարկը ծակեց Պատրիկ Գազազյանի ռմբակոծչի աջ թևը: Շարժիչից ծուխ ելավ: Մեքենան անմիջապես սկսեց բոցավառվել: Գազազյանի մարտական ընկերները տեսան, թե ինչպես այրվող ինքնաթիռը նա թեքեց և մխրճեց ֆաշիստական տանկերի շարասյան մեջ: Լսվեց սարսափելի պայթյուն»:

... Երեք տարեկան էր Պատրիկը, երբ պայթեց առաջին համաշխարհային պատերազմը: Գաղթելով իր ծննդավայր Էրզրումից, տարիներ հետո, 1925 թ., մոր հետ նա հաստատվում է Երևան քաղաքում: 1934 թվականին Պ. Գազազյանը զորակոչվում է սովետական բանակ, մեկնում սովորելու Բորիսոգլեբսկի օդաչուական դպրոցում: Երեք տարի անց նա ստանում է ռմբակոծիչ ավիացիայի օդաչու-լեյտենանտի կոչում. 1938 թ. ընդունվում է ՍՄԿԿ շարքերը: Մեծ հայրենականի առաջին իսկ օրվանից Պ. Գազազյանը օդային մարտերում աչքի է ընկնում խիզախությամբ: Ցուցաբերած քաջագործությունների համար օդաչուն պարգևատրվում է Կարմիր դրոշի երկու շքանշաններով:

**Գաստելոյականները** հոդվածում («История СССР», 1960 թ., № 3) ջերմ խոսքեր են գրված սովետական անվեհեր օդաչուներից մեկի՝ Ա. Օհանջանյանի մասին:

«...1942 թվականի հուլիսի 8-ին սովետական զորքերը Վորոնեժ քաղաքի մոտ ընկան ծանր վիճակի մեջ: Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանը հաշվի առնելով Հարավ-արևմտյան ռազմաճակատի ձախ թևին և Հարավային ռազմաճակատի աջ թևին սպառնացող վըտանգը, նրանց հրամայեց նահանջել դեպի նոր բնագծեր: Նահանջն ըսկսվեց 1942 թ. հուլիսի 7-ի գիշերը: Ռազմաճակատի հրամանատարությունը հրամայեց անխնա ռմբակոծել հակառակորդի կենդանի ուժի և տեխնիկայի կուտակումները, որպեսզի պայմաններ ստեղծվեն մեր զորամասերի կազմակերպված նահանջի համար:

«ՊԵ—2» խոյընթաց ռմբակոծիչների գնդին առաջադրանք էր տրված ռմբակոծել դեպի Վորոնեժ շարժվող հակառակորդի տանկային շարասյուները: Մեր ինքնաթիռների թիվն այնքան էլ մեծ չէր, ուստի, օդաչուները ստիպված էին օրական կատարել 3—4, նույնիսկ 5 թռիչք: Արտյուշա Օհանջանյանն այդ օրն իր ընկերների հետ օդ բարձրացավ երրորդ անգամ:

Ահա և Վորոնեժը: 3500 մետր բարձրությունից լավ երևում էր, թե թշնամու տանկերը և մոտոմեքենայացված ուժերն ինչպես են շարժվում դեպի քաղաք: Ինքնաթիռներն սկսեցին գրոհել տանկերի վրա: Առաջին գրոհից հետո ֆաշիստական մեքենաներից մի քանիսը կորան ծխի մեջ:

Բայց երբ գրոհն ավարտվեց, զենիթային արկի մի մեծ բեկոր ջարդուփշուր արեց Օհանջանյանի ինքնաթիռի թևի ծայրամասը: Մեքենան սկսեց



վառվել 500 մետր բարձրության վրա: Ահա ուր որ է՝ պետք է պայթեն դեռ չնետված ֆուգասային ռումբերը: Վայրկյաններ էին մնում վերջնական որոշում ընդունելու համար: Հրամանատարն, անշուշտ, կարող էր անձնակազմին կարգադրել փրկվել պարաշյուտով: Բայց չէ՛ որ ցածում գերմանացիներն էին: Ինքնաթիռն արագ իջնում էր: Կրակի լեզուներն այրում էին օդաչուների ձեռքերն ու դեմքը: Օհանջանյանը վայրկենապես որոշեց հետևել իր խիզախ ընկերների օրինակին:

«ՊԵ—2» խոյընթաց ռմբակոծիչը վերջին անգամ ցած սլացավ:

Բոցավառված ռմբակոծիչը երկնաքարի նման դղրդյունով մխրճվեց ֆաշիստական տանկերի և մոտոմեքենայացված զորքերի մեջ: Ինքնաթիռի հրամանատար, կոմունիստ Արտյուշա Օհանջանյանի հետ զոհվեց ինքնաթիռի կոմերիտական ողջ անձնակազմը: Պատանիները, հավատարիմ մնալով սովետական հայրենիքին, իրենց կյանքը չխնայելով՝ վերջին հուժկու հարվածը հասցրին թշնամուն»:

Խոյընթաց ռմբակոծչի անձնակազմը հետմահու պարգևատրվեց մարտական շքանշաններով, իսկ հրամանատար Օհանջանյանը՝ Կարմիր դրոշի երկրորդ շքանշանով:

... Արտյուշա Օհանջանյանը ծնվել է 1917 թվականի դեկտեմբերի 24-ին, Կարս քաղաքում, արհեստավորի ընտանիքում:

1918 թվականին, թուրքական յաթաղանից մազապուրծ, Օհանջանյանների ընտանիքը հրաշքով փրկվում է բնաջնջումից և բնակություն հաստատում Երևանում:

1935 թ. Օհանջանյանը հաջողությամբ ավարտում է Երևանի Խ. Աբովյանի անվան միջնակարգ դպրոցը: Երևանի պետական համալսարանի քիմիական ֆակուլտետի երկրորդ կուրսի ուսանող, 19-ամյա Արտյուշան, առանց ուսումից կտրվելու, գերազանց գնահատականներով սովորում էր Երևանի աերոակումբում: Այնուհետև, թողնելով համալսարանը, ընդունվեց Լուգանսկի օդաչուների ռազմաավիացիոն դպրոցը:

Օհանջանյանն այստեղ լավագույն ունկնդիրներից էր: ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության Պոդոլսկի արխիվում գտնվող նրա անձնական գործում (№ 406740) պահպանվում է հետևյալ բնութագիրը. «Թռչել սիրում է, օդում իրեն ազատ, թեթև ու վստահ է զգում, թռչում է բանիմաց, արագ կողմնորոշվում է բարդ իրադրության մեջ... ընդունում է ճիշտ որոշումներ: Անսահման նվիրված է մեր սոցիալիստական հայրենիքին»:

ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՀ ԴԱՇՔԵՍԱՆԻ ՇՐՋԱՆԻ ԲԱՆԱՆՑ գյուղի դուստըր Ասյա Թագուհի Վանյանը 1939 թ. ավարտել էր Բաքվի ավիաակումբը. Մեծ Հայրենականի առաջին իսկ օրից նա մասնակցում էր օդային կատաղի մարտերին, մեր երկրում հայտնի Թամանյան 46-րդ գվարդիական գիշերային թեթև ռմբակոծիչ ավիացիոն գնդի կազմում: Կարմրադրոշ այդ գնդի հրամանատարը և ողջ անձնակազմը կանայք էին:

Ադրբեջանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի օրգան «Կոմունիստ» (հայերեն) օրաթերթի 1943 թ. հունիսի 30-ի համարում ՀԱՅՐԵՆԻՔԻ ԴՈՒՍՏՐԸ ակնարկում կարդում ենք.

«Ավիաէսկադրիլիայի հրամանատար ընկ. Տատյանա Վասիլենկոն մարտական առաջադրանք տվեց օդաչուներին՝ ռմբակոծել թշնամու դիրքերը և խափանել նրա առաջխաղացումը:

Մեր ինքնաթիռները երկինք բարձրացան: Օդաչուների մեջ էր նաև Թագուհի (Ասյա) Վանյանը: Նա արդեն հինգերորդ մարտական առաջադրանքն էր կատարում:

Այդ թռիչքների ժամանակ նա ոչնչացրել էր թշնամու երեք ինքնաթիռ, զինամթերքների մեկ պահեստ, ֆաշիստական շատ զինվորներ և սպաներ:

Թռիչքներից մեկի ժամանակ ֆաշիստներն ուժեղ կրակ բացեցին խիզախ օդաչուի վրա: Ինքնաթիռի շարժիչը լրջորեն վնասվեց:

— Իջնել պարաշյուտով և ընկնել թշնամու ձե՞ռքը, ո՛չ: Կմեռնեմ մարտական մեքենայիս վրա, բայց թշնամու ձեռքը չեմ ընկնի»:

Եվ խիզախ օդաչուն իր վնասված ինքնաթիռն ուղղեց թշնամու կուտակումների վրա... Սովետական կառավարությունը Թագուհի Վանյանին պարգևատրեց Լենինի շքանշանով:

Այս հոդվածում ամեն ինչ ճիշտ է, բացի, բարեբախտաբար, Թագուհու մահից: Հոդվածագիրը հենվել է Թագուհու հետ մարտական այդ թռիչքին մասնակցած ընկերների պատմածի վրա: Իրոք, նրանք տեսել են, որ Թագուհու վարած ինքնաթիռը զենիթային կրակից վառվել և ցած է ընկել, զարնվել գետնին ու բոցավառվել: Սակայն ուժեղ ցնցումից նա մեքենայից դուրս էր նետվել ու շպրտվել մի քանի մետր հեռու: Մեր զորքերի հետ Թագուհին ևս պատերազմն ավարտում է Գերմանիայում: Հաղթանակից հետո Թագուհին գերազանց ավարտեց Լենինգրադի մարզային կուսակցական բարձրագույն դպրոցը և երկար տարիներ աշխատում էր Լենինգրադի կուսակցական ու սովետական օրգաններում: Այժմ նա անցել է վաստակած հանգստի, ապրում է Լենինգրադում և ակտիվ մասնակցում երիտասարդների ռազմահայրենասիրական դաստիարակության գործին:

Թագուհի Վանյանը հայազգի միակ կին ավիատորը չէ, որ իր անունը փառքով պսակեց մեծ Հայրենականի ահեղ օրերին:

46-րդ գվարդիական կարմրադրոշ գիշերային թեթև ռմբակոծիչ ավիա-
ցիոն գնդի կազմում իր հերոսագործություններով աչքի է ընկել նաև ա-
վիացիոն ծառայության տեխնիկ Ալեքսանդրա Գրիգորևնա Օսմանցևան
(Օսմանյանը): Նրա պարգևատրման թերթիկում կարդում ենք. «Օսմանցևա
Ա. Գ., 1921 թ. ծնված, հայուհի, ՀամԿ(բ)Կ անդամ 1942 թ., ավարտել է
Ուլյանովսկի ավիադպրոցը, սովետական բանակի շարքերում է 1941 թ.
օգոստոսից: Գերմանական զավթիչների դեմ մղված Հայրենական մեծ պա-
տերազմի տարիներին ռազմաճակատում նա սպասարկել է 579 մարտա-
կան թռիչք: Արագ և վարպետորեն վերացնում էր ինքնաթիռի բոլոր թերու-
թյունները, վերանորոգման աշխատանքները կատարում որակով և սահ-
մանված ժամկետից շուտ: Առաջին պարգևատրումից հետո սպասարկել է
270 մարտական թռիչք, կատարել 4727 ժամ տեխնիկական աշխատանք-
ներ: Բանիմաց, հմուտ, բարձրորակ մասնագետ է: Ընկ. Օսմանցևայի սպա-
սարկած ինքնաթիռը միշտ կազմ ու պատրաստ, օրինակելի վիճակում է:
Նրա մեղքով երբեք չեն խափանվել ինքնաթիռի սարքավորումներն ու մա-
սերը, չի ձախողվել մարտական առաջադրանքը: Արժանի է կառավարա-
կան երկրորդ պարգևի՝ Հայրենական պատերազմի երկրորդ աստիճանի
շքանշանի», փաստաթուղթը կրում է 1943 թ. մայիսի 11-ի ամսաթիվը:
Այն ստորագրել է 46-րդ գվարդիական ավիագնդի հրամանատար, գվար-
դիայի փոխգնդապետ Եվդոկիա Դավիդովնա Բերշանսկայան: Օսմանցևան
մասնակցել է Հյուսիսային Կովկասի, Բելոռուսիայի ազատագրման մարտե-
րին ու Արևելյան Պրուսիայում տեղի ունեցած կռիվներին, Բեռլինի գրոհին:
Հայրենիքը կառավարական 12 պարգևներով է զարդարել նրա կուրծքը:

Պատերազմից հետո Օսմանցևան գերազանցիկի դիպլոմով ավարտեց Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտը, երկար տարիներ աշխատեց հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում որպես անասնաբույժ, ապա ընդունվեց Մոսկվայի Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիայի ասպիրանտուրան, պաշտպանեց թեկնածուական դիսերտացիան և այժմ աշխատում է աշխատավորների դեպուտատների Ստավրոպոլի երկրամասի գործադիր կոմիտեի գյուղատնտեսության վարչությունում, միաժամանակ դասախոսում քաղաքի բարձրագույն ուսումնական հաստատություններում:

Իրոք, մեծ և անմոռաց են հայրենական ավիացիայի զարգացման գործին սովետական մարդկանց, նրանց հետ և հայ ժողովրդի զավակների մատուցած ծառայությունները: Նրանց կյանքը, հայրենանվեր գործունեությունը գալիք սերունդների դաստիարակման լավագույն օրինակ են:

---

# ԱՐՎԵՍՏԱՍԵՐԻ ԱՄԲԻՈՆ

## ԿԻՆՈՆ ԵՎ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԸ

ՍՈՒՍԱՆՆԱ ԴԱՎԹՅԱՆ

«Մինսկ—22» էլեկտրոնային հաշվիչ մեքենայի թվաժապավենի հետևում մարդիկ են: Մարդիկ, որ հրաժեշտ են տվել ուսանողական նստարանին և այժմ աշխատում են գիտահետազոտական ինստիտուտում, բարձրագույն ուսումնական հաստատություններում, որպես ավագ կամ կրտսեր գիտաշխատողներ, դասախոսներ... փորձադրում են իրենց գիտելիքներն ու ունակությունները, որ ձեռք են բերել ուսանողական տարիներին: Այս թղթաժապավենների վրա արտացոլված են նրանց հոգեկան պահանջմունքները, ճաշակը, ակնկալիքները, հետաքրքրասիրությունը կինոարվեստի նկատմամբ:

Մեր խնդիրն է՝ թվերի «ժլատ ու չոր» լեզվով վեր հանել ժամանակակից գիտական աշխատողի էսթետիկական հայացքների, զգացմունքների ու ապրումների հակասական աշխարհը: Ըստ Լ. Ն. Կոգանի, սոցիոլոգի ուղին անցնում է «իր ուսումնասիրած մարդկանցից դեպի թվերը, իսկ թվերից՝ կրկին դեպի մարդիկ»:

Մեր նպատակն է բացահայտել Հայկական ՍՍՀ-ի ինտելիգենցիայի տարբեր խմբերի (ըստ տարիքի, սեռի, մասնագիտության, գիտական աստիճանի)՝ կինոարվեստի հանդեպ դրսևորած վերաբերմունքի տարբերությունները: Մասնավորապես անդրադարձել ենք հետևյալ հարցերին. ինչպիսի՞ տեղ է գրավում կինոարվեստը ժամանակակից գիտական աշխատողի կյանքում. հատկապես, ո՞ր ժանրերն են դուր գալիս նրան. որքանո՞վ են բավարարվում նրա պահանջները. ի՞նչն է գրավում նրան կինոյում. ի՞նչ կցանկանար դիտել. հաճա՞խ է նա լինում կինոյում և այլն:

Սոցիոլոգ արվեստաբանը գիտակցում է, որ քանակական-վիճակագրական տվյալների վրա հիմնված ուսումնասիրությունը դեռևս չի բացահայտում կինոնկարների՝ բնակչության հանդեպ ունեցած ֆունկցիաները: Այլ խոսքով, ինչպես քանակական տվյալների, նույնպես և կինոարվեստի ընկալման վրա ծախսված ժամանակի վերլուծությունը բավարար գաղափար չի կարող տալ արվեստի ընկալման բովանդակային կողմի, ուսումնասիրվող անձանց էսթետիկական պահանջմունքների, հետաքրքրասիրությունների և ճաշակի մասին: Սակայն քանակական այս ցուցանիշները ևս անհրաժեշտ են նրանց պահանջների, ճաշակի, հակումների, ընդհանրապես արվեստի և դրա առանձին տեսակների նկատմամբ ունեցած վերաբերմունքի հանգամանալի ուսումնասիրության համար:

Հակումը կինոարվեստի նկատմամբ, հավանաբար, պայմանավորված է կինոդիտման հաճախականությամբ:

**Կինոսրահի տարբերակումը՝ ըստ կինոդիտումների հաճախականության—** ինչպես ցույց են տալիս վիճակագրական տվյալները, Հայաստանում խիստ ավելացել է կինոհաճախումը: Համեմատաբար կարճ ժամանակահատվածում՝

տար կրթություն ունեցողներ և բնական գիտությունների մասնագետներ: Եթե զննենք մեր տվյալներն ըստ կինոհաճախման կայունության, կստացվի հետևյալ պատկերը.

| Մասնագիտական խմբերը | Չհաղորդակցվողները | 1 անգամ | շաբաթը 1 անգամ, ամիսը՝ 4 | շաբաթը 2 անգամ, ամիսը՝ 8 | ակտիվության աստիճանը |
|---|---|---|---|---|---|
| Տեխնիկական գիտությունների | 12,4 | 10,0 | 13,1 | 0,7 | 152,4 |
| Ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների | 14,5 | 12,7 | 12,7 | 0,8 | 153,9 |
| Հումանիտար գիտությունների | 8,7 | 11,6 | 16,7 | 1,4 | 156,0 |
| Բնական գիտությունների | 24,4 | 11,0 | 13,3 | 0,7 | 156,4 |

Ինչպես տեսնում ենք, կինոհաղորդակցման աստիճանն զգալի չափով պայմանավորված է դիտողի մասնագիտությամբ: Ակտիվության աստիճանը բարձր է բնական գիտություններով զբաղվողների մոտ: Նրանց հաջորդում են հումանիտար գիտությունների մասնագետները: Հատկապես բազմամարդ է գիտական աստիճան ունեցող «չհետաքրքրվողների» խումբը (22,2 տոկոս):

Կինոարվեստի ռեալ հանրամատչելիությանը խոչընդոտում են հոգեբանական մի շարք հանգամանքներ ևս, որոնք, առաջին հայացքից, հակասում են կինոդիտողների համար կինեմատոգրաֆիական լեզվի պարզության ու հասկանալիության վերաբերյալ հանրահայտ պատկերացումներին: Այսպես, հարցումների ժամանակ բազմիցս համոզվել ենք, որ եթե երիտասարդ տարիքում չի մշակվել ֆիլմը լրջորեն դիտելու և հասկանալու սովորույթը, ապա տարեց մարդու համար դժվար է զարգացնել իր կինոըմբռնումը, հասկանալու համար նույնիսկ կինոլեզվի ոչ բարդ, կառուցվածքային հասարակ տարրերը:

**Կինոհաճախումները՝ ըստ ընտանեկան վիճակի**— Այս օբյեկտիվ գործոնի նշանակությունն ուսումնասիրելիս մենք դարձյալ կինոդիտողներին բաժանել ենք 4 խմբի— ամուսնացածներ, չամուսնացածներ, բաժանվածներ և ամուրի-այրիներ:

Ամուսնացածների ընտանեկան հոգսերն զգալի ավելանում են՝ կապված ընտանիքի բարօրությունն ապահովելու պատասխանատվության բարձրացման, երեխաների դաստիարակության, ինչպես և տարիքի հարուցած առողջական վիճակի փոփոխությունների հետ: Ամենից շատ կինո են գնում չամուսնացածները, չնայած հատկապես այս խումբն ամենից ավելի է գանգատվում ազատ ժամանակի պակասությունից: Խիստ ավելանում են բաժանվածների գանգատները տնային հոգսերից, մանավանդ եթե երեխա ևս ունեն, քանի որ վերջինս ավելի շատ ժամանակ և ուշադրություն է պահանջում:

Կինոհաճախումները մեկ ամսում (հարցվողների տոկոսային հարաբերությամբ)

| | ոչ մի անգամ | 1 անգամ | 2 անգամ | 3 անգամ | 4 անգամ | 8 անգամ | 9 անգամ | ակտիվության աստիճանը |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ամուսնացածներ | 20,5 | 11,9 | 23,5 | 21,3 | 11,1 | 0,8 | 1,7 | 110 |
| Չամուսնացածներ | 9,1 | 8,6 | 17,8 | 24,8 | 18,3 | 1,6 | 4,8 | 178,2 |
| Բաժանվածներ | 5,5 | 22,2 | 22,2 | 5,5 | 11,1 | 0,0 | 16,6 | 277,0 |
| Այրի-ամուրիներ | 7,6 | 15,3 | 0,0 | 30,7 | 23,0 | 0,0 | 7,6 | 183,3 |

Այսպիսով, ընտանեկան հանգամանքները կինոդիտումների հաճախականության վրա ազդող էական գործոններ են: Չորս խմբից միայն չամուսնացածներն են շաբաթը երկու անգամ կինո գնում: Հավանաբար, միայն ընտանիք ունենալու-չունենալու փաստն ինքնին անբավարար է՝ բացատրելու կի-



նո գնալու սակավհաճախականությունը: Բնակչության՝ արվեստին չհաղորդակցվելու և քիչ հաղորդակցվելու հանգամանքը փորձնական ու տեսական առավել մանրակրկիտ ուսումնասիրության նյութ է: Մասամբ այն կարելի է բացատրել օբյեկտիվ գործոններով— սոցիալ-կենցաղային հաստատությունների անբավարարությամբ և այլն: Սոցիալ-կենցաղային և մանկական հաստատությունների ցանցի ընդլայնումը, բնակչության սպասարկման բարելավումը, էական դեր կխաղան այդ գործոնի դերի նվազեցման մարզում:

«Կինոն և հանդիսատեսը» խնդրի ուսումնասիրությունների հիման վրա բոլոր կինոդիտողներին ըստ ընտրականության աստիճանի բաժանել ենք չորս խմբի: Առաջին՝ ավելի բծախնդրությամբ ընտրող խումբը կինո է հաճախում այն ժամանակ, երբ համոզված է, որ ֆիլմն արժե դիտել:

Երկրորդ խումբը կինո է գնում, երբ ժամանակ և ցանկություն ունի. բայց գնալուց առաջ հանգամանորեն ուսումնասիրում է ռեկլամը, ցուցադրվող ֆիլմերից ընտրում այն, որը կբավարարի իր գեղագիտական պահանջներին:

Երրորդ խմբին են պատկանում ամեն տեսակ ֆիլմեր դիտողները: Չորրորդ խումբը համարյա կինո չի գնում:

Կինոարվեստին հաղորդակցվելու իրենց ակտիվությամբ աչքի են ընկնում, հատկապես, երիտասարդները և միջին տարիքի անձինք: Քանակական ցուցանիշների հիման վրա բնակչության տարբաժանումը հետաքրքրվողների և չհետաքրքրվողների, պայմանական է, քանի որ չափանիշն այստեղ հարաբերական է: Տեղեկությունները սոցիալ-դեմոգրաֆիական, հատկապես տարիքի, կրթության և սոցիալ-մասնագիտական գործոնների վերաբերյալ կարելի է օգտագործել կինոցանցի պլանավորման, ռեկլամի, հանդիսատեսների անընդհատ հոսանքի կազմակերպման, նրանց սպասարկման ընթացքում:

Ուսումնասիրելով իրենց միկրոշրջանի բնակչության կառուցվածքը, հաշվի առնելով սոցիալ-դեմոգրաֆիական տվյալ խմբի կինոդիտման ակտիվությունը, կինոթատրոնները կարող են մեծ ուշադրությամբ վերաբերվել հատկապես այն մարդկանց, ովքեր բնավ կինո չեն հաճախում կամ շատ քիչ են լինում կինոյում: Այդպիսիների համար կարելի է կազմակերպել հատկապես ընտրված ֆիլմերի ցուցադրում:

Կինոհանդիսատեսների վրա կարող է ներգործել նաև ռեկլամը: Տարիքը, մասնագիտությունն ու կրթությունը նկատի առնող ռեկլամը կինոհաճախումներն ավելացնող միջոցներից է: Անհրաժեշտ է ռեկլամում արտացոլել ֆիլմի այն առանձնահատկությունները, որոնք կարող են հարուցել թույլ ակտիվություն ունեցողների հետաքրքրությունը: Կինոպլանատորները պետք է պատշաճ ուշադրություն նվիրեն ռեկլամի ձևավորմանն ու բովանդակությանը:

Նպատակային սեանսների պարբերական կազմակերպումը կբարձրացնի սոցիալ-դեմոգրաֆիական այդ խմբերի կինոդիտումների հաճախականությունը: Օրինակ, եթե մանկավարժների համար կազմակերպվի այնպիսի ֆիլմերի ցուցադրում, ուր լուսաբանվում, լուծվում են երիտասարդության դաստիարակության հարցերը, ապա, անշուշտ, կսերտանան կինոթատրոնի և այդ մասնագիտական խմբի կապերը: Չէ՞ որ հատկապես լավ են ընդունվում այն ֆիլմերը, որոնք համապատասխանում են կինոդիտողի ո՛չ միայն էսթետիկական պահանջմունքներին, այլև մասնագիտական հետաքրքրասիրություններին:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇

## ԳԻՐՔ՝ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏ-ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ԼԵԳԵՆԴԱՐ ՀԱՄԱՍՏԵՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇◇

1970 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-ԻՆ, Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն իր ճառում ասաց. «Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջին իսկ քայլերից հայ ժողովրդի լավագույն զավակներն ամենայն ակտիվությամբ մասնակցեցին դրան: Երևան եկավ ինտերնացիոնալիստ-հեղափոխականների մի հոյակապ համաստեղություն, որն ըմբռնում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների շահերի հետ Հայաստանի աշխատավոր ժողովրդի շահերի անքակտելի կապը: Իրենց ժողովրդի բախտը կապելով Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի պատմական միսիայի, Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ, նրանք առանց տատանվելու բռնեցին Լենինի նշած ուղին, դարձան նրա աշակերտները, բարեկամներն ու զինակիցները...

Նրանք արժանավայել ավանդ ներդրեցին համառուսաստանյան հեղափոխական շարժման զարգացման, նոր տիպի մարքսիստական կուսակցության ստեղծման մեջ, մեր ամբողջ երկրի կոմունիստների հետ միասին ակտիվորեն մասնակցեցին հին աշխարհի վրա կատարվող գրոհին, նոր աշխարհի՝ սոցիալիստական աշխարհի կառուցմանը» (ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ, հ. 3, էջ 224):

Այդ լեգենդար սերնդի հերոսականության դրվատմանն է նվիրված պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Ա. Ն. Մնացականյանի ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ գիրքը: Այն ընդգրկում է Հոկտեմբերյան հեղափոխության կարևորագույն իրադարձությունները, արտացոլում դրանց նշանակությունն ու ազդեցությունը նաև հայ ժողովրդի պատմական ճակատագրի համար, նրա կյանքում տեղի ունեցած շրջադարձը, նրա պատմության նոր էջի սկիզբը:

Գրքի հերոսների համար բնորոշ ու կարևոր են անձնվիրությունը սոցիալիստական հեղափոխության վեհ գաղափարներին և համակվածությունը պրոլետարական-սոցիալիստական ինտերնացիոնալիզմով: Եվ հեղինակն այդ ներկայացրել է պատկերավոր լեզվով, միաժամանակ վարպետորեն ցույց տալով նրանցից յուրաքանչյուրի ինքնատիպությունը:

ԱՅՍՏԵՂ ՎԱՌՎԵՑ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՋԱՀԸ, ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ և ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՄՈՍԿՎԱՅԻ ՄԱՐՏԵՐՈՒՄ խորագրերը կրող բաժինների 25 ենթագլուխներում ընթերցողի առջև հառնում են Հոկտեմբերյան լեգենդար օրերի հերոսները՝ իրենց կոնկրետ գործերով: Իրադարձությունների կենտրոնում Լենինն է, որը համախմբել, կոփել է աշխարհը վերափոխողների համաստեղությունը: Հեղինակը ոչ թե պատմում է ըստ գրքերի ու փաստաթղթերի, այլ ընթերցողին ասես տանում է հեղափոխության արահետներով, տանում հարյուր մեկ կրակների վրա գտնվող քաղաքը, ֆինլանդական կայարանը, Տավրիկյան պալատը, Սմոլնի..., ներկայացնում է հեղափոխության հետ կապված վայրերն ու դեպքերը, հեղափոխության մասնակիցների սխրանքները:

Անկեղծ ներշնչանքով, վառ ու կենդանի օրինակներով են պատկերված 1917 թվականի Հոկտեմբերյան օրերի պետերբուրգյան ու մոսկովյան իրադարձությունները: Գլխավորը մարդիկ են, որ պատրաստ են «երկինքը գրոհելու» հանուն աշխատավոր ժողովրդի: Պուտիլովյան գործարանի բանվորներն էին նրանք, Կրասնայա Պրեսնյայի հերոսները, ռուս պրոլետարիատի առաջավոր ջոկատը, հեղափոխության առաջամարտիկները: Լենինը համախմբել էր բազմազգ ժողովուրդների լավագույն զավակներին: Գրքում զետեղված են նրանցից շատերի լուսանկարները. Լենինի կողքին են Ստ. Շահումյանը, Մ. Ցխակայան, Ն. Պոդվոյսկին, Գ. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Վ. Կնորինը, Ն. Նարիմանովը, Վ. Կույբիշևը և ականավոր այլ հեղափոխականներ: Նրանց հետ մեկտեղ ընթերցողին ներկայացվել են հեղափոխության մեծ գործին իրենց կյանքը նվիրաբերած շարքային շատ մարտիկներ:

Հայտնի է, որ պատմագիտական աշխատություններում դեռևս ողջ խորությամբ բացահայտված չեն հին բանակի գլխավոր զորակայանում տեղի ունեցած հեղափոխական հեղաշրջման կարևոր իրադարձությունները: ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ գրքի՝ ԶՈՐԱԿԱՅԱՆԻ ՀԵՂԱՇՐՋՈՒՄԸ ՂԵԿԱՎԱՐՈՂՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐԻ ՄԵՋ բաժնում, հատկապես ՌՈՒՍԱԿԱՆ ՎԵՐՍԱԼԸ, ԴՈՒԽՈՆԻՆԻ ԶՈՐԱԿԱՅԱՆԻ ՈՉՆՉԱՑՈՒՄԸ, ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՒՄԸ, ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼԸ գլուխներում հրապարակված են նորահայտ փաստաթղթեր, որոնք նոր լույս են սփռում ռուսական հին բանակում տեղի ունեցած արմատական վերափոխումների պատմության շատ կարևոր կողմերի վրա: Գրքում զետեղված վավերագրերից և լուսանկարներից ընթերցողի առաջ հառնում են սովետների երկրի առաջին զորահրամանատարներ Նիկոլայ Կռիլենկոյի, Իոսիֆ Վացետիսի, Սերգեյ Կամենևի, Ալ. Մյասնիկյանի, Միխայիլ Ֆրունզեի, Վլադիմիր Անտոնով-Օվսեենկոյի կերպարները: Ռուս, ուկրաինացի, հայ, լատիշ հեղափոխական զորավարները գործում էին միասնաբար: Գրքում ցույց են տրվում նրանց համատեղ, անդուլ ջանքերը՝ հիմնովին հեղաշրջելու հին զինվորական կազմակերպությունը, ջախջախելու բուրժուական ռազմական ուժերը և դրանց փոխարեն ստեղծելու սոցիալիստական հեղափոխության զինված ուժեր:

Հեղինակը պրպտումներ է կատարել, նյութեր հավաքել Լենինգրադի, Մոսկվայի, Կիևի, Մինսկի, Մոգիլյովի, Պոդոլսկի, Սամարայի, Աստրախանի, Դոնի-Ռոստովի, Օդեսայի, Տաշքենդի և Ալմա-Աթայի արխիվներում ու թանգարաններում և դրանք մատուցել վարպետությամբ ու հուզիչ ջերմությամբ:

Աշխատության մեջ տրված է քաղաքացիական կռիվների համապատկերը: Այդ շրջանին նվիրված ակնարկները վերակենդանացնում են սովետական առաջին զինվորների ու կարմիր սպաների, գվարդիականների ու աշխարհազորայինների, առաջին կոմիսարների ու քաղմարտիկների անմոռանալի կերպարները: Բազմազգ են նրանք: Տարբեր լեզուներով խոսող մարդիկ պատմության մեջ առաջին անգամ միատեղ երդվում են. «Ես՝ Սովետական երկրի քաղաքացիս...»: Հեղափոխությանը, սովետական իշխանությանը և սոցիալիստական Հայրենիքին անսահման նվիրված, անկաշառ մարդիկ են նրանք, որոնք ժողովրդին, նրա ազատագրությանը ծառայելու մեջ են տեսնում իրենց կյանքի նպատակը:

ՀԱԿԱՀԵՏԱԽՈՒԶՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ «ՌՈՒՍԱԿԱՆ ՎԱՆԴԵԱՅԻ» ԴԵՄ ՄՂՎԱԾ ՄԱՐՏԵՐՈՒՄ վերնագրի տակ զետեղված նյութերն արտացոլում են հեղափոխության ասպետ Ֆելիքս Ձերժինսկու, նրա մարտական ընկերների ու աշակերտների՝ Էդվարդ Բերզինի, Գևորգ Աթարբեկյանի, լեգենդար Կամոյի, Պետրոս Դանիելյանի, Սահակ Տեր-Գաբրիելյանի և այլոց սխրագործությունները: Մյուս գլուխներում ներկայացվել են ականավոր զորավար Միխայիլ Ֆրունզեն, նրա զինակիցներ Գայը, Գասպար Ոսկանյանը, կուսակցության ու ժողովրդի հավատարիմ դուստրեր Ելենա Ստասովան, Նինա Աղաջանյանը, Վարդանուշ Բահաթրյանը, լենինյան գաղափարների պրոպագանդիստներ Իվան Սկվորցով-Ստեպանովը, Նիկոլայ Սկրիպնիկը, Ռուբեն Քաթանյանը, Հովհաննես Ալիբեկյանցը և շատ ուրիշներ:

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ գրքի կարևոր արժանիքը նրա գիտականությունն է, սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական և ազգային կյանքի բարդ պրոբլեմների լուսաբանումը մարքս-լենինյան մեթոդոլոգիայի դիրքերից: Ծանոթանալով գրքի «հայկական նյութին», հայազգի գործիչների կյանքին ու պայքարին նվիրված էջերին, տեսնում ենք, որ հեղինակն այդ ամենն օգտագործում է՝ ցույց տալու համար հեղափոխության ժողովրդական բնույթն ու ինտերնացիոնալ բովանդակությունը:

Աշխատության մեջ բացահայտված են նաև հայ ժողովրդի հեղափոխական-ազատագրական պայքարի յուրահատկությունները, որոնք հաճախ վրիպում են մեր պատմաբանների ուշա-

* А. Н. Мнацаканян. «На баррикадах Октября», изд. «Айастан», Ереван, 1973. 350 стр.

դրությունից: Դրանցից մեկն այն է, որ մեր ժողովրդի հեղափոխական-ազատագրական պայքարը ծավալվում էր երկու հիմնական ասպարեզներում՝ բնաշխարհում և դրա սահմաններից դուրս: Հայտնի է, որ պատմական հանգամանքների բերումով հայ ժողովրդի մի զգալի հատվածը դեռ վաղ ժամանակներից ապաստանել էր Ռուսաստանում: Այսպես՝ 1918—1920 թթ. դաշնակների ստեղծած Հայաստանի «անկախ», «ազատ» հանրապետության սահմաններում ապրում էր մոտ 770 հազար մարդ, դրա կրկնակին՝ մոտ մեկուկես միլիոն հայեր, ցրված էին Սովետական Ռուսաստանում, Ադրբեջանում, Վրաստանում, Միջին Ասիայում, Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում: ՌԿ(բ)Կ VIII համագումարի արձանագրությունների նյութերում (1919 թ. մարտ) նշված է, որ Ռուսաստանի կոմունիստական կուսակցության շարքերում կար 10.000 հայ կոմունիստ: Նրանցից միայն հազարն էին աշխատում Հայաստանում. մյուսները գործում էին Ռուսաստանում, Ադրբեջանում, Վրաստանում, Միջին Ասիայում և այլուր, որտեղ դասակարգային այլազգի եղբայրների հետ ակտիվ մասնակցում էին հեղափոխական պայքարին: ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ գիրքը շարադրված է հենց այս առանձնահատկության ըմբռնմամբ: Սովետական իշխանությունը հռչակեց Հայաստանի ինքնորոշման իրավունքը, հայ ժողովրդին ընձեռեց իր ազգային պետականության ստեղծման, ազատ կյանք կերտելու հնարավորություն:

Սովետական իշխանության հռչակած սկզբունքները, կոմունիստական կուսակցության վեհ իդեալները ոգեշնչում էին հայ աշխատավորներին, մղում նրանց դեպի հեղափոխության բարիկադները՝ Սենատի հրապարակը, Զամոսկվորեցկի շրջանը, Վոլգայի և Դոնի ափերը, Ղրիմի անտառները, ամեն տեղ, ուր վճռվում էր հեղափոխության բախտը: Հայ զինվորը, հրամանատարը գիտակցում էին, որ այնտեղ՝ Ռուսաստանի տափաստաններում նվաճված հաղթանակով կլուծվի նաև տառապած Հայաստանի ազատագրման հարցը: Այս գաղափարն է արտահայտված Ադրբեջանում և Վրաստանում սովետական կարգերի հաղթանակին նվիրված բաժիններում:

Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի բուրժուական կառավարությունները, դավաճանելով այդ երկրների աշխատավորների դասակարգային շահերին և ողջ ժողովրդի ազգային շահերին, մերժեցին համագործակցությունը Սովետական Ռուսաստանի հետ և նրանից սպասվող օգնությունը, իրենց հույսերը կապեցին Անտանտի և գերմանա-թուրքական հակասովետական բլոկների հետ, դարձան իմպերիալիստական կառավարությունների դաշնակիցը՝ ընդդեմ հեղափոխության, ընդդեմ Սովետական Ռուսաստանի: Հարուստ փաստական նյութերի վերլուծությամբ, հեղինակը ցույց է տալիս, որ Անդրկովկասի բուրժուական հանրապետությունների կառավարությունների ներքին և արտաքին քաղաքականությունը բխում էր շահագործող դասակարգերի շահերից, որ այդ կառավարությունների գործելակերպն ուներ հակաժողովրդական բնույթ և, բնականաբար, չէր վայելում աշխատավորների համակրանքը, բանվորները, գյուղացիները, աշխատավորական բոլոր տարրերը համառորեն պայքարում էին իրենց երկրների բուրժուազիայի տիրապետության դեմ: Այդ պայքարն իր գագաթնակետին հասավ Բաքվում, 1918 թ. մարտին, երբ հեղափոխական ջոկատները պարտության մատնեցին հակահեղափոխության ուժերին, և իշխանությունը գրավեց Բաքվի պրոլետարիատը, ստեղծվեց Բաքվի կոմունան: Մեծ մասամբ նորահայտ փաստական նյութերի միջոցով հեղինակը ներկայացնում է Բաքվի կոմունայի հաղթանակի, նրա պաշտպանության համար կենաց ու մահու կռվի ելած հարյուր-հազարավոր մարդկանց, կարմիրգվարդիականների, հրամանատարների, կոմունիստների, անկուսակցական հեղափոխական մարտիկների: Այստեղ ընդգծված է նաև մի այլ պատմական իրողություն. հայ ազգային-ազատագրական պայքարի տասնյակ, հարյուրավոր գործիչներ, որ շատ տարիներ մասնակցում էին միայն ազգային-ազատագրական պայքարին, դուրս եկան այդ շրջանակներից, միավորվեցին սոցիալիստական հեղափոխության մարտակարգերում, դարձան ինտերնացիոնալիստական հեղափոխական պայքարի զինվորներ: ԲԱՔՎԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ գլխում ներկայացված են անձնվեր զինվորներ, կոմունայի մղած դժվարին մարտերի հերոսներ Գրիգոր Կորգանովը, Բորիս Շեբոլդաևը, Համիդ Սուլթանովը, Գեորգի Ստուրուան, Իլյա Տամարկինը, Սուրեն Հովսեփյանը, Իվան Պետրովը, Արսեն Ամիրյանը և շատ ուրիշներ: Բաքվի կոմունայի պաշտպանները գրքում ներկայացված են իրենց հերոսականությամբ, անձնվիրությամբ, ինտերնացիոնալ բարեկամությամբ:

Չի կարելի առանց հուզմունքի կարդալ ՀԱՄԱՌՈՏԱԿԻ՝ ՄԵՏԵԽԻ ԲԱՆՏԻ ՏԱՌԱՊՅԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ գլուխը: Մետեխում՝ կովկասյան այդ Շլիսելբուրգի խցիկներում, տառապում էին հայն ու վրացին, ռուսն ու ադրբեջանցին: Նրանք, ինչպես ցույց է տվել հեղինակը, իսկական հերոսներ էին և իրենց արժանավոր տեղն ունեն ժողովրդի ազատագրության պայքարի պատմության մեջ:

Հետաքրքրական է ՄԻՋԻՆ-ԱՍԻԱԿԱՆ ԼԵԳԵՆԴՆԵՐ խորագիրը կրող բաժինը: Տաշքենդի, Աշխաբադի, Սամարղանդի, Ալմա-Աթայի, Ֆրունզեի և այլ քաղաքների արխիվներում, գրադարաններում աշխատելով, հեղինակը հավաքել է նյութեր, որոնք արտացոլում են միջինասիական ազգերի աշխատավորների կյանքըն ու պայքարը, ռուս բանվորների դերը Թուրքեստանյան երկրամասում, բասմաչական ավազակախմբերի դեմ մղված մարտերը, այդ մարտերում ռուսների, ուզբեկների, ղազախների և մյուս ժողովուրդների զավակների հետ հայ զինվորների մարտական միասնությունը: ՈՂԲԵՐԳՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԿԱՅՈՒՄ ԵՎ ԲՈՒԽԱՐԱ ՄԵԿՆԱԾ ԲԱՆԱԳՆԱՑՆԵՐԻ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ գլխում հրապարակված փաստաթղթերն ու նյութերը վկայում են Բուխարայի էմիրի մոտ խաղաղության առաջարկով գնացած կարմիրգվարդիականների և կարմիրբանակայինների ողբերգական ճակատագրի մասին: Էմիրի դահճապետները գազանաբար խեղդամահ արին 22 մարտիկների՝ ուզբեկների, տաջիկների, հայերի և այլ ազգերի ներկայացուցիչների: Այդ պատվիրակների մեջ էին Աբդուռահիմանովը, Թելյանցը, Ալիևը, Ալահվերդյանը, Հալիմխանովը, Կարաբաղցյանը և ուրիշներ:

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ գրքի հետաքրքրական բաժիններից է ՌՈՒՍԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՅ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՆ ակնարկը, որի սեղմ տողերում ցույց է տրված Հոկտեմբերի բարերար ազդեցությունը հայ մամուլի հրապարակախոսական մտքի վրա, խոսվում է գրականության դերի մասին, բնութագրվել է արվեստի, սովետական գիտության, ժողովրդական կրթության մշակների գործունեությունը: Ահա նրանցից Բաքվի կոմունայի լուսբաժնի վարիչ, բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանը, ժողովրդական նկարիչ Գաբրիել Գյուրջյանը, արվեստագիտության, պատմագիտության և գրականագիտության պրոֆեսոր Ալեքսանդր Ջիվելեգովը և ուրիշներ, որոնք սրտանց, ողջ հոգով ընդունեցին Հոկտեմբերը, կանգնեցին սովետական դրոշի ներքո, զինվորագրվելով նորաստեղծ աշխատավորական պետության գաղափարներին:

Պրոֆեսոր Ա. Ն. Մնացականյանի գրախոսվող աշխատությունը, իհարկե, զերծ չէ նաև մասնակի թերություններից: Այսպես, խոսելով առանձին մարզերում ու քաղաքներում աշխատող գործիչների մասին, հեղինակը երբեմն պատշաճ խորությամբ չի ներկայացրել կուսակցական տեղական կոմիտեների ջանքերը այդ հեղափոխականների համախմբման ու դաստիարակման գործում: Այսպիսին են, օրինակ, Թուրքեստանյան (էջ 103—106), Ուրալյան (էջ 110—129) երկրամասերին նվիրված բաժինները: Դրա հետևանքով այնպիսի տպավորություն է ստեղծվում, թե կարծեք այդ կադրերը միանգամից պատրաստի վիճակում են հրապարակ իջել ու նետվել հեղափոխական պայքարի հորձանուտը: Աշխատության բոլոր գլուխներում չէ, որ անհրաժեշտ խորությամբ են լուսաբանված իրադարձությունները: Առանձին դեպքերում թվարկվում են հեղափոխական շատ գործիչների անուններ՝ առանց փաստերով հագեցնելու նրանց գործունեությունը (էջ 232, 296—299, 315—316): Նկատենք նաև, որ սպրդել են սրբագրական սխալներ, որոնք տեղ-տեղ հանգեցրել են անունների, ազգանունների աղավաղման (էջ 144-ում Արշակ Աթաբեկյանը դարձել է Աթարբեկյան, 216 էջում Վորոնսկին՝ Վորովսկի, Լեժնևը Լեժիև), պատմական իրադարձությունների ժամանակի շփոթության (էջ 341) և այլն:

Պրոֆեսոր Ա. Ն. Մնացականյանի աշխատությունն իր արժանի տեղը կգրավի պատմահեղափոխական գրականության ոսկե ֆոնդում, ճանաչողական, դաստիարակչական նշանակություն կունենա մեր երիտասարդության, գալիք սերունդների համար:

Հ. Ն, ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԱԶԱՏԱՐԱՐՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՐԱԳԼՈՒԽՆԵՐԻ վարած հակաժողովրդական քաղաքականությունը 1918—1920 թվականներին հայ ժողովրդին կանգնեցրեց անդունդի եզրին:

Թուրք ենիչերիները, զավթելով Հայաստանի մեծ մասը, անհամար աղետներ պատճառեցին հայ ժողովրդին, նրան հասցրին ֆիզիկական բնաջնջման եզրին: Ողբերգական այդ օրերին Հայաստանի աշխատավորներին եղբայրական օգնության ձեռք մեկնեց Վ. Ի. Լենինի գլխավորած ՌՍՖՍՀ կառավարությունը: Հայ ժողովրդի համար ճակատագրական այդ ժամանակաշրջանում սովետական կառավարության ցույց տված օգնությանը, XI կարմիր բանակի ազատագրական առաքելությանն է նվիրված Ի. Թայիրյանի մենագրությունը*: Հեղինակը կուսակցական փաստաթղթերի, արխիվային հարուստ նյութերի ու հին բոլշևիկների հուշերի հիման վրա ընթերցողին է ներկայացնում սովետական երիտասարդ զինված ուժերի զորամիավորումներից մեկի անցած մարտական ուղին:

Տասնմեկերորդ բանակը կռվել ու արիացել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության թշնամիների դեմ մղված գոտեմարտերում: Պաշտպանական մարտեր մղելով Ցարիցինի, Աստրախանի մատույցներում, այդ բանակն այնուհետև ամենաակտիվ կերպով մասնակցում է Հյուսիսային Կովկասում հակահեղափոխական ուժերի դեմ մղված կռիվներին, իսկ 1920 թվականի ապրիլին օգնության ձեռք է մեկնում Ադրբեջանի աշխատավորներին, որոնք ապստամբել էին բուրժուա-նացիոնալիստական մուսավաթական իշխանության դեմ:

Ադրբեջանում սովետական իշխանության հաստատումը, կարմիր բանակի մուտքը ոգեվորում են Հայաստանի աշխատավորներին. ավելի է ծավալվում հեղափոխական շարժումը: Վերլուծելով այդ ժամանակաշրջանի իրավիճակը, մենագրության հեղինակն ընդգծում է այն մեծ դերը, որ կատարել են Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները աշխատավորական լայն զանգվածներին լենինյան դրոշի շուրջը համախմբելու գործում: Բռնկվում է 1920 թվականի մայիսյան ապստամբությունը: Արմենկոմը և տեղի բոլշևիկները, անցնելով ապստամբության գլուխ, նպատակ ունեին ստեղծելու խորհրդային իշխանություն: Բազմաթիվ նոր փաստաթղթերի և տվյալների հիման վրա հեղինակը հանգամանորեն է լուսաբանում Միխայլովկայի (Կրասնոսելսկի) բոլշևիկների գործունեությունն այդ փոթորկալի օրերին:

Ապստամբներին ճնշելու նպատակով դաշնակցական կառավարությունը նրանց դեմ է նետում զինված ուժերը: Հայաստանի բոլշևիկները դիմում են կարմիր բանակի օգնությանը: Եվ երբ XI բանակի զորամասերը շարժվում են դեպի Հայաստան, Գանձակում (Կիրովաբադ) սկսվում է մուսավաթա-բեկական հակահեղափոխական խռովությունը: Դեպի Հայաստան շարժվող կարմիր բանակի զորամասերն ստիպված վերադառնում են՝ ճնշելու հակահեղափոխական խռովությունը:

Ապստամբության դրոշ պարզած Հայաստանի աշխատավորության դեմ դաշնակցականները դուրս են բերում խմբապետական սեհարյուրակային ջոկատներ և արյունալի դատաստան տեսնում բոլշևիկների, նրանց ղեկավարած բանվորների ու գյուղացիների հետ: Դաժան տեռորի ենթարկվելուց հետո Մայիսյան ապստամբության մասնակիցների մի մասն անցնում է Սովետական Ադրբեջանի սահմանը: Կազմավորվում է հայկական զորամաս, որը մտնում է XI բանակի կազմի մեջ:

Մայիսյան ապստամբությունը ճնշելուց հետո, նշում է հեղինակը, Հայաստանի աշխատավորների վիճակն օրեցօր վատանում է: Այն ավելի ողբերգական է դառնում 1920 թվականի սեպտեմբերից, երբ թուրքական բանակի հարձակման հետևանքով, դաշնակցական բանակը, առանց դիմադրության, նահանջում է կռվի դաշտից: Թուրք զավթիչների նվաճած վայրերից հարյուր հազարավոր հայ փախստականներ հավաքվում են մի բուռ հողակտորի վրա: Սովն ու համաճարակն անխնա հնձում են թշվառ, տառապող ժողովրդին:

Աշխատավոր ժողովրդի համար ստեղծված այդ ծանր օրերին կոմունիստական կուսակցությունը կոչ է անում բանվորներին ու գյուղացիներին՝ ապստամբել դաշնակցականների տիրապետության դեմ: Ընդառաջելով Հայաստանի աշխատավորների խնդրանքին՝ Սովետական Ադրբեջանի սահմաններից դեպի Հայաստան են շարժվում XI կարմիր բանակի զորամասերը, նրանց հետ և՝ հայկական առանձին գունդը: 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանը հայտարարվում է Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն:

Ցիտելով Վ. Ի. Լենինի հեռագիրը, որով մեծ առաջնորդը ջերմորեն ողջունում է սովետական իշխանության հաստատումը Հայաստանում, Ի. Թայիրյանը նշում է, որ Հայաստանի աշխատավորներն իրենց ազգային և սոցիալական ազատագրումը ձեռք բերեցին կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության, ռուս ժողովրդի անշահախնդիր օգնության շնորհիվ:

Վկայակոչելով բազմաթիվ փաստաթղթեր, մենագրության հեղինակը ցույց է տալիս այն իրավիճակը, որում գտնվում էր նորաստեղծ Սովետական Հայաստանը: Դաշնակցությունից ժառանգություն էր մնացել լրիվ քայքայված մի տնտեսություն: Թուրքական զավթիչներն իրենց ձեռքում էին պահում Ալեքսանդրապոլի երկաթուղային հանգույցը. Զանգեզուրում ծվարած դաշնակցականները Անտանտայի գործակալների թելադրանքով ավազակային հարձակում էին նախապատրաստում Սովետական Հայաստանի դեմ:

Հայաստանի կոմկուսը, հեղկոմը ամեն ինչ անում են Սովետական Ռուսաստանի օգնությամբ թուրք օկուպանտներին Ալեքսանդրապոլից դուրս քշելու, որքան հնարավոր է ժողովրդի վիճակը բարելավելու համար: Օգտվելով այն բանից, որ հայկական կարմիր բանակի և XI բանակի հիմնական ուժերը գտնվում էին Վրաստանում (մենշևիկյան կառավարության դեմ ապստամբած աշխատավորներին օգնելու նպատակով), դաշնակցության պարագլուխներն ու մաուզերիստ խմբապետները, պրովոկացիոն լուրերով մոլորության մեջ գցելով բնակչության հետամնաց տարրերին, սկսում են փետրվարյան ավանտյուրան (1921 թ.):

Հեղինակը հենց իրենց՝ դաշնակցականների ու մենշևիկների պարագլուխների գրագրություններով ցույց է տալիս, թե ինչպես, սերտ կապերի մեջ մտնելով միմյանց և թուրքական բանակի հրամանատարության հետ, նրանք ձգտում են միացյալ ուժերով խորտակել սովետական իշխանությունը Հայաստանում (էջ 231):

Հայաստանում սկսվում են քաղաքացիական կռիվները: Այդ շրջանին է նվիրված Ի. Թայիրյանի գրքի չորրորդ գլուխը:

Հայկական կարմիր բանակի, ինչպես և Երևանի շրջակայքում գտնվող XI բանակի զորամասերը, թողնելով Երևանը՝ պաշտպանական դիրքեր են գրավում Ղամարլուի (այժմ՝ Արտաշատ) շրջանում: Տեղի են ունենում կատաղի կռիվներ: Մեր զորամասերին ակտիվ աջակցում են կարմիր պարտիզանները: Ավանտյուրիստների դեմ հերոսաբար մարտնչում են Երևանի կոմունիստները, որոնց շարքերում էր և բոցաշունչ բանաստեղծ Եղիշե Չարենցը:

Քառասունհինգ օր դաժան ու անհավասար մարտեր են մղվում: Դաշնակ մաուզերիստները, հույսը դնելով իրենց գերակշռող ուժերի և Անտանտայի օգնության վրա, ձգտում են ճնշել կարմիր զորամասերի դիմադրությունը, զավթել Ղամարլուն: Ռազմապաշարի, սննդամթերքի, հանդերձանքի պակասը չի ընկճում կարմիր բանակայիններին, որոնք արիաբար կռվում են թշնամու դեմ:

Վրաստանում խորհրդային իշխանություն հաստատվելուց հետո XI բանակի զորամասերը կրկին շտապում են օգնության հասնել Հայաստանի աշխատավորությանը: Ապրիլի 2-ին Երևանի վրա վերջնականապես ծածանվում է ազատարար Հոկտեմբերի դրոշը:

Անդրադառնալով 1920—1921 թթ. թուրքական բանակի հրամանատարության վարքագծին, մենագրության հեղինակը շեշտում է, որ զավթիչներն ավերում էին գյուղերը, սպանում բնակիչներին: ՀՍԽՀ ժողկոմխորհն այդ մասին հաղորդելով ՌՍՖՍՀ կառավարությանը, խնդրում է Լենինին՝ օգնել թուրք զավթիչներից ազատագրելու Ալեքսանդրապոլը: Ընդառաջելով Հայաստանի աշխատավորների ցանկությանը՝ Սովետական Ռուսաստանի կառավարությունը կտրականապես պահանջում է թուրքական բանակի զորամասերը հեռացնել Ալեքսանդրապոլից: Այս առթիվ միանգամայն տեղին է մեջբերված Ս. Օրջոնիկիձեի վերջնագիրը թուրքերին. «... եթե 24 ժամվա ընթացքում չթողնեք Ալեքսանդրապոլը, ապա զենքի ուժով դուրս կվռնդվեք...» (էջ 288): XI բանակի զորամասերի ճնշման ներքո թուրք զավթիչները հեռանում են Ալեքսանդրապոլի գավառից:

Երևանի և Նոր Բայազետի գավառներն ազատագրելուց, Ալեքսանդրապոլը թուրքական զավթիչներից մաքրելուց հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍԽՀ ժողկոմխորհը Ալ. Մյասնիկյանի գլխավորությամբ ձեռնամուխ են

* И. А. Таирян, XI Красная Армия в борбье за установления и упрочение Советской власти в Армении, изд. «Айастан», Ер., 1971.

լինում սովետական իշխանության հաստատումը՝ Զանգեզուրում։ Զանգեզուրի հարցը խաղաղ հանապարհով լուծելու Սովետական Հայաստանի կառավարության բոլոր քայլերը հանդիպում են դաշնակցական պարագլուխների դիմադրությանը։ Բորբոքվում են պատերազմական գործողությունները Դարալագյազի և Զանգեզուրի սահմանագլխին։ Հայկական կարմիր բանակի և XI բանակի զորամասերը, կոտրելով դաշնակցական բանդաների դիմադրությունը, անցնում են հարձակման։ Ղարաբաղից Գորիսի ուղղությամբ առաջ են շարժվում Ա. Ի. Տոդորսկու, իսկ Դարալագյազից՝ Մ. Դ. Վելիկանովի զորախմբերը, որոնք սերտորեն համագործակցելով հայկական կարմիր բանակի հետ՝ ստիպում են դաշնակցական խմբերին թողնել Գորիսը, ապա՝ Ղարաքիլիսան (Սիսիանը), Արծվանիկը, Տաթևը, Ղափանը և Մեղրիի վրայով ճողոպրել Արաքսի աջ ափը։

Հայ ժողովրդի ազատագրման համար մղված մարտերում աչքի ընկնող դեր են կատարել XI բանակի և նրա զորամասերի հրամանատարներ Մ. Կ. Լևանդովսկին, Ա. Ի. Գեկկերը, Մ. Ի. Վասիլենկոն, ինչպես և հայկական կարմիր բանակի զորամասերի հրամանատարներ ու քաղաշխատողներ Մ. Մալխաշյանովը, Լ. Միսչյանը, Հ. Լազյանը, Ա. Բաղդասարյանը և շատ ուրիշներ։ Մարտերում աչքի ընկնելու համար շատերի հետ ՀՍԽՀ կարմիր դրոշի շքանշանով պարգևատրվում են Դիմիտրի Մորոզովը, Կոնստանտին Օգնիենկոն, Պանտելեյ Սիտնիկովը։ Այդ կռիվներում զոհվել են Ցիլշևիշը, Բելովը և շատ այլ ռազմիկներ։ Հայ ժողովրդի պատմության էջերից չեն ջնջվի իրենց կյանքը մեր երկրի ազատագրությանը նվիրաբերած հերոս ռուս զինվորների անունները։

Գրքի հեղինակն ըստ արժանվույն նշում է այն մեծ դերը, որ կատարել են Ս. Օրջոնիկիձեն և Ս. Կիրովը Անդրկովկասի աշխատավորության ազատագրման պայքարում։ Այդ նպատակով նա բազմիցս վկայակոչում է պատմական ուշագրավ փաստաթղթեր։

Ի. Թայիրյանն իր մենագրությունում նկատելի տեղ է հատկացնում զորամասերում տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքին։ Հեղինակը բացահայտել է այն վճռական դերը, որ կատարել են ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն (Երկրային բյուրոն) և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները։

Տասնմեկերորդ բանակի մարտական ուղու մասին մինչև այժմ գրված աշխատությունների համեմատությամբ Ի. Թայիրյանի մենագրության առավելություններից մեկն այն է, որ դրանում հրապարակված են ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ կենտրոնական կուսակցական, ՄԼԻ հայկական մասնաճյուղի, կարմիր բանակի կենտրոնական, ՀՍՍՀ պետական արխիվներում պահպանվող բազմաթիվ փաստաթղթեր, որոնք առաջին անգամ են դրվում գիտական շրջանառության մեջ։ Հեղինակը օգտագործել է և XI բանակի և հայկական կարմիր բանակի շտաբների, զորամասերի մարտական ամփոփագրերն ու քաղաքական տեղեկագրերը, տվել դրանց պատշաճ վերլուծությունը։

Մենագրությունը զերծ չէ թերություններից։ Մեր կարծիքով ձգձգված է 1920 թվականի ամռանը Զանգեզուրում մի կողմից դաշնակցական զորախմբերի, մյուս կողմից XI բանակի գնդերի ու պարտիզանների միջև տեղի ունեցած մարտական գործողությունների նկարագրությունը (էջ 104—138)։ Հեղինակն անդրադարձել է գրեթե բոլոր դեպքերին, նույնիսկ աննշան ընդհարումներին, թվարկել բոլոր զորամասերն ու ստորաբաժանումները, ներկայացրել դրանց գործողությունները։ Դրա հետևանքով երբեմն նկատվում են կրկնություններ։ Կան մարդկանց անունազգանունների, ինչպես և բնակավայրերի անվանման անճշտություններ։

Սակայն այս ամենը ստվեր չի գցում Ի. Թայիրյանի մենագրության վրա։ Այն գրված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սովետական հայրենասիրության ոգով։

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ




Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի ու էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 06010 Պատվեր 125 Տիրաժ 15.000 Գինը՝ 20 կ.։
Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 21/II—1975 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու, հ. 1, «Հայաստան» հրատ., 1974.

Վ. Ի. ԼԵՆԻՆ— ՍՄԿԿ-ն պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին։ Փաստաթղթերի ու նյութերի ժողովածու, հ. 1, 1984—1924. Մ., «Политиздат», 1974։

Մ. ԳՈՐԿԻ— Վ. Ի. Լենին. Մ., «Политиздат», 1974։

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ— Կոմունիստական գիտակցականության դաստիարակության մասին. Մ., «Политиздат», 1974։

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին. «Հայաստան» հրատ., 1974։

Վ. Գ. ԿԼՅՈՒԵՎ— Կուսակցական աշխատանքը կենցաղսպասարկման ոլորտում. Մ., «Политиздат», 1974։

Վ. ՊԵՏՐՈՎ, Վ. ԲԵԼՈՎ, Ա. ԿԱՐԵՆԻՆ— ՍՍՀՄ լենինյան արտաքին քաղաքականությունը. Մ., «Политиздат», 1974։

Կ. Վ. ԿԻՍԵԼՅՈՎ— Սովետական դիվանագետի գրառումները. Մ., «Политиздат», 1974։

Ի. Ա. ԲՈՐՈԴԿԻՆ, Ն. Պ. ՏԻՏՈՎ, Մ. Ի. ԳԱՐԲԱՐ— ՏՓԽ երկրների քիմիական արդյունաբերության ինտեգրացիայի զարգացումը. Մ., «Экономика» հրատ., 1974։

Կ. Ս. ՊԵՏԿԵՎԻՉ— Ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվների բացահայտումն ու օգտագործումը. Մ., «Экономика» հրատ., 1974։

Բ. Ֆ. ՍԻԴՈՐՈՎ, Վ. Ա. ԽՐՈՒՍՏԱԼԵՎ— Մոսկվացիների հանդիպական պլանները. Մ., «Экономика» հրատ., 1974։

Ա. Կ. ՈՍԿԵՐՉՅԱՆ— Ալ. Մյասնիկյանը և գրական հարցերը. «Հայաստան» հրատ., 1974։

Հիշյալ մենագրությունը բաղկացած է երկու մասից. առաջինը նվիրված է Ալ. Մյասնիկյանին. երկրորդում շարադրված է «Վ. Ի. Լենինը և արվեստի հարցերը» ակնարկը և տարբեր հոդվածներ՝ կուլտուրական կապերի, արվեստի ու քննադատության որոշ հարցերի մասին, որոնք սերտորեն առնչվում են Ալ. Մյասնիկյանի հայացքների հետ։

Ա. Գ. ԴԱՎԹՅԱՆ— Սոցիալիզմի քաղաքական սիստեմը և նրա բուրժուական «քննադատների» քննադատությունը. Ե., «Գիտելիք» ընկ. հրատ., 1974։

Մաոիզմը— մարքսիզմ լենինիզմի գաղափարական և քաղաքական հակառակորդ. Մ., «Правда» հրատ., 1974։

Ա. Ս. ՊԼՈՏՆԻԿՈՎ— Ռեֆորմիզմ և գաղութականություն։ Գաղտնի համաձայնություն. Մ., «Наука» հրատ., 1974։

Հեղինակն այս մենագրության մեջ մերկացրել է աջ արհմիությունների աջ ղեկավարների դավաճանական գործունեությունն ասիական ու աֆրիկյան երկրներում, 50-ական թվականներին։

Հոկտեմբերի և քաղաքացիական կռիվների հերոսները (1917—1922)։ Հանձնարարական գրացուցակ. Մ., «Книга» հրատ., 1974։

Գրքույկում զետեղված են հերոսների անունները, կենսագրություններն ու գրականությունը նրանց մասին։

Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ— Մարքսիզմի ծրագրային առաջին փաստաթուղթը. Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» հայերեն առաջին հրատարակության 70-ամյակի առթիվ. «Գիտելիք» ընկ. հրատ., 1974։

Հ. Ռ. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Ներկուսակցական դեմոկրատիան և կարգապահությունը. «Հայաստան» հրատ., 1974։



Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### Մետրոյի պարահրապարակների համար

*Մոսկվայի մետրոպոլիտենի, պարահրապարակների, վարչական շենքերի միջանցքների հատակների ծածկի համար օգտագործվում է պրեվինիլ նոր նյութը, որը բացի դիմացկունությունից աչքի է ընկնում նաև ջրադիմացկունությամբ և ձայնամեկուսիչ հատկությամբ: Պրեվինիլի սալիկները պատրաստում են պոլիվինիլքլորիդային ձյութից: Մամլման ժամանակ թափոնները թափանցում են սալիկի զանգվածի մեջ, ստեղծելով յուրահատուկ գծանկար:*

*Նոր նյութն արժանացել է պետական որակի նշանի:*

### Մաքրում է կեղտաջրերը

*Կաշեգործարանների արդյունաբերական կեղտաջրերի մշակումը վաղուց ի վեր մտահոգել է գիտնականներին, քանի որ դրանք պարունակում են կալցիումի, նատրիումի, քրոմի աղեր, ինչպես և սուլֆիդներ, ֆենոլ, դուրիլային և սպիտակուցային նյութեր:*

*Չեխոսլովակիայի Գոտվալդովո քաղաքում շահագործման է հանձնված կոմպլեքսային հոսքային սարք, որը հաջորդաբար կատարում է մեխանիկական, քիմիական և բիոլոգիական մաքրում: Ջուրն սկզբում անցնում է մանր մաղի միջով, այնուհետև տոքսիկ միացություններն անջատելու նպատակով այն մշակում են քիմիկատներով, որից հետո օդահագեցմամբ մղում տղմուտ դաշտերը: Սարքի հզորությունը օրական 18 հազար խմ է, մաքրության աստիճանը՝ 99 տոկոս:*

### Ե՛վ պաստառ, և՛ ժուռնալ

*Ֆրանսիական քիմիկոս-ինժեներները առաջարկել են էմուլսիայի բաղադրակազմ, որը չափազանց արագ փոխարկվում է պլաստմասսայե պաստառների: Բավական է պուլվերիզատորի օգնությամբ պիգմենտի մոնոմերի և ֆոտոինիցիատորի խառնուրդը ցողել պատին, շերտը լուսավորել ուլտրամանուշակագույն լամպով և մեկ վայրկյան չանցած, առաջանում է ամուր, հարթ թաղանթ: Այն շատ դիմացկուն է, չի խունանում, ալկալիներից ու թթուներից չի փչանում: Այդպիսի պաստառներն ունիվերսալ են. գործածվում են բնակարաններում, լաբորատորիաներում, բաղնիքներում. դրանով ներկվում են ավտոբուսները, էլեկտրատեխնիկական սարքերն ու հուշանվերները: Այն օգտագործվում է նաև պոլիգրաֆիայում: Իլյուստրացիաները ստացվում են բարձրորակ, չեն կեղտոտում ձեռքերը, չեն ունենում տպարանին բնորոշ հոտ:*

### Ֆիլտր-ջերմափոխանակիչ

*Ամերիկյան «Գրանկո» ֆիրման փորձարկում է կերամիկական ֆիլտր այն վառարանների համար, որոնցում վառում են քաղաքային աղբ: Ֆիլտրը ծակոտկեն կերամիկայից պատրաստված զանգվածային սկավառակ է: Տաք գազերը անցնելով այդ պտտվող բլոկի միջով, մաքրվում են ցնդող նյութերից, միաժամանակ ֆիլտրը տաքանում է: Ջերմությունը վերականգնվում է, այսինքն՝ օգտագործվում այրիչին մատակարարվող օդի տաքացման համար:*

*Ամերիկայում 1980 թ. ամբողջ էլեկտրաէներգիայի $^1/_{20}$-ը կստացվի թափոնների այրման հաշվին:*

### Դասագրքերը թեթևացել են

*Դրեզդենում թողարկվող յուրաքանչյուր դասագրքի քաշը թեթևացել է մոտ 70 գրամով, էջերի քանակը չի նվազել: Այդ արդյունք է այն բանի, որ թուղթը փոխարինվել է բարակ պոլիմերային ֆոլգայով: Մյուս առավելությունն այն է, որ նոր էջերը ավելի շատ դիմացկուն են: Եթե դրանց վրա թանաք է թափվել, կամ խզմզվել, ապա դա հեշտությամբ կարելի է մաքրել սոդայաջրով թրջած սպունգով: Կվերականգնվի և էջերի սպիտակությունը:*

*Այժմ թողարկվել է ավելի քան 6 մլն այդպիսի դասագրքեր:*